## ՄԵՐ ՀԵՂԻՆԱԿՆԵՐԻՆ

«Լենինյան ուղիով» ամսագրի խմբագրությունը խնդրում է հոդվածներ ուղարկելիս ճշտորեն պահպանել հետևյալ կանոնները. տեսական բնույթի հոդվածները՝ 18 մեքենագրական էջից ոչ ավելի, պրակտիկ աշխատանքը և առաջավոր փորձը լուսաբանող հոդվածները՝ 8—10, նամակներն ու թղթակցությունները՝ 4—6, գրախոսականները և մամուլի տեսությունները՝ 6—8 էջ:

Անդրկովկասի ու Հայաստանի հեղափոխական շարժման թեմաներով գրված և Հայաստանում մարքսիզմ-լենինիզմի տարածմանը նվիրված հոդվածները պետք է ունենան ռուսերեն ամփոփում՝ 8 տողի չափով:

Հոդվածները պետք է մեքենագրված լինեն երկու ինտերվալով, երկու օրինակից, հեղինակի կողմից ստորագրված, նշելով հեղինակի լրիվ անունը, հայրանունը և ազգանունը, հասցեն, աշխատանքի վայրն ու հեռախոսի համարը: Խմբագրությանը հանձնված հոդվածներից մեկը պետք է լինի մեքենագրվածի առաջին օրինակը: Հոդվածում անհրաժեշտ է ցույց տալ մեջբերումների և թվական տվյալների աղբյուրները:

Սույն կանոնները խախտողների հոդվածները չեն տպագրվի: Ներկայացված հոդվածը անհետևանք կմնա, եթե այն ամբողջովին կամ հապավումներով հրապարակված լինի մամուլի և ինֆորմացիայի որևէ օրգանում:

Խմբագրությանն ուղարկված հոդվածները չեն վերադարձվում:


# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

10

ՀՈԿՏԵՄԲԵՐ 1972

ԼՈՒՅՍ Է ՏԵՍՆՈՒՄ 1922 ԹՎԱԿԱՆԻՑ

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԿ-Ի ՏԵՍԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

«Ленинян угиов» — теоретический и политический журнал ЦК КП Армении


## Բովանդակություն

# Содержание





Վ. ՅԱ. ՊՈՒՇԿԱՐՅՈՎ

«Սովետսկայա Ռոսիա» թերթի գլխավոր խմբագրի առաջին տեղակալ

# ՌՈՒՍԱՍՏԱՆԻ ՄԵԾ ԵՐԹԸ

Մեր երկիրն ընդառաջ է գնում ՍՍՀ Միության կազմավորման 50-ամյակին։ Այդ հոբելյանի նախապատրաստությունն անցնում է ՍՄԿԿ XXIV համագումարի գաղափարների և որոշումների լույսի տակ։ Աշխատավորները հըսկայական աշխատանքային և քաղաքական վերելքով են կատարում համագումարի նախատեսած պլանները, նոր ուժով ցուցադրում մեր հասարակության բարոյա-քաղաքական միասնությունը, կուսակցության և ժողովրդի միաձույլ համախմբվածությունը, Սովետական Միության բոլոր ժողովուրդների անխախտ բարեկամությունն ու եղբայրական համագործակցությունը։

Իրավահավասար հանրապետությունների եղբայրական ընտանիքում Ռուսաստանի Ֆեդերացիան ամենաբազմազգն է և ամենամեծը։ Երբ Մոսկվայում արևը դեպի մայրամուտ է գլորվում, Հեռավոր Արևելքում արդեն բացվում է նոր օրը։ Տասը ժամանոց գոտիներ են անջատում միմյանցից մայրաքաղաքը և Չուկոտկան, Ռուսաստանի տարածքը հազարավոր կիլոմետրերով փռվում է հեռավոր Դեժնևի հրվանդանից մինչև Բալթիկա, բևեռային կղզիներից մինչև արևավառ Սոչի։ Սովետական Միության տերիտորիայի երեք քառորդը՝ ավելի քան հարյուր երեսուն միլիոն բնակչությամբ, տասնվեց ինքնավար հանրապետություն, հինգ ինքնավար մարզ, տասը ազգային օկրուգ, քառասունինը մարզ և վեց երկրամաս, գրեթե հազար և շուրջ երկու հազար բանավան, և այդ ամենը Ռուսաստանն է՝ դյուցազնական ու հիանալի երկիրը։

Նրա հարստություններն անթիվ-անհամար են։ Ռուսաստանին է բաժին ընկնում բնական գազի և քարածխի համամիութենական պաշարների ավելի քան 70 տոկոսը, բոլոր անտառային պաշարների 94 տոկոսը։ Ռուսաստանը երկրին տալիս է ամբողջ նավթի 81 տոկոսը, էլեկտրաէներգիայի 64 տոկոսը, ամենաբազմազան շատ այլ արտադրանքներ։

Սովետական իշխանության արշալույսին Վլադիմիր Իլյիչն ասում էր՝

«Մենք ունենք թե՛ բնական հարստություններ, թե՛ մարդկային ուժի պաշար, թե՛ հիանալի թափ, որ մեծ հեղափոխությունը հաղորդել է ժողովրդական նախաձեռնությանը, ստեղծելու համար հիրավի հզոր և լիառատ Ռուսիա»։

Կուսակցությունը, ժողովուրդը կատարեցին առաջնորդի պատգամները։
Ամբողջ աշխարհի առաջ մեր երկիրն այժմ ծառանում է իր հիասքանչ մեծու-
թյամբ։ Պատմական կարճ ժամկետում նա դժվարին հաղթական ուղի անցավ
զրկանքի, անհույս կարիքի ու աղքատության մեջ թաղված խղճուկ ու հետա-
մնաց Ռուսիայից դեպի ինդուստրիալ, հզոր, բարգավաճող երկիրը։ Սովե-
տական Միությունը դարձել է մեծ սոցիալիստական տերություն, որի տնտե-
սական և պաշտպանական անխորտակելի հզորությունը հուսալիորեն ապահո-
վում է սովետական ժողովուրդների ազատությունն ու անկախությունը, նրանց
խաղաղ ստեղծագործական աշխատանքը։

Ռուսաստանի Սովետական Ֆեդերատիվ Սոցիալիստական Հանրապետու-
թյան ժողովուրդների խանդավառ աշխատանքը դարձավ լենինյան պատգամ-
ների ակներև մարմնավորումը կյանքում։ Այդ աշխատանքը բարձր է գնա-
հատված կոմունիստական կուսակցության և սովետական կառավարության
կողմից. Ռուսաստանի դրոշակի վրա են Լենինի երկու շքանշանները և Հոկ-
տեմբերյան հեղափոխության շքանշանը։ Այսօր Սովետական Ռուսաստանը
հինգ օրվա ընթացքում այնքան արդյունաբերական արտադրանք է տալիս,
որքան ցարական Ռուսաստանում ստացվում էր ամբողջ տարվա ընթացքում։

Յուրաքանչյուր հնգամյակ, յուրաքանչյուր նոր տարի նորանոր փոփոխու-
թյուններ է բերում։ Ժամանակին գերբնական համարձակություն էր թվում
ԳՈԷԼՌՕ-ի պլանը։ Իսկ ներկայումս Վոլգայի՝ Ռուսաստանի գլխավոր փողոցի
վրա հոսանք են տալիս յոթ հիդրոհանգույցներ՝ Իվանկովի, Ուգլիչի, Ռիբին-
սկի, Գորկու, Վոլգայի՝ Լենինի անվան, Սարատովի, Վոլգայի՝ կուսակցու-
թյան XXIV համագումարի անվան հիդրոհանգույցները։ Այժմ կառուցվում է
ութերորդ՝ Չեբոքսարիի հանգույցը։

Երկրի ամենախոշոր հիդրոէլեկտրակայաններից մեկի՝ Բրատսկի ճա-
կատին վիմագրված է լենինյան հուշակավոր բանաձևը՝ «Կոմունիզմը սովե-
տական իշխանությունն է գումարած ամբողջ երկրի էլեկտրիֆիկացիան»։
Անգլիական լրագրողը, Սիբիրից իր հայրենիքը վերադառնալով, գրել է՝ «Ես
թախծում եմ. ես ապագայից վերադարձա անցյալը, ես եկել եմ Բրատսկից»։
Բայց չէ՛ որ Սիբիրի քարտեզում և Հեռավոր Արևելքում միայն Բրատսկը չէ։
Նրա հետ միասին հառնել են Զեյսկի և Սայանո-Շուշինսկայայի, Կրասնո-
յարսկի և Պրիմորիեի, Ուստ-Իլիմսկի և Իրկուտսկի՝ կառուցվող և արդեն շարք
մտած, հսկաները։ Էլեկտրահաղորդիչ հզոր գծերը էժան էներգիան հասցնում
են երկրի ամենահեռավոր անկյունները։

Հարկավոր է ընդգծել, որ մեր շատ էլեկտրակայաններ հավկադյուտ կա-
ռույցներ են։ Կրասնոյարսկի ԳԷՍ-ի մասին կարծիքների գրքում ակադեմիկոս
Սոբոլևը գրել է. «Հիացնում ու շշմեցնում է հոյակապ կայանի տեսարանը։
Հրաշալի, ապշեցուցիչ ստեղծագործություն»։ Դիմենք թվերին։ Կրասնոյար-
սկի ԳԷՍ-ի հզորությունը սոսկ կիսով չափ է զիջում պատերազմի նախօրյակի
ՍՍՀՄ բոլոր կայանների հզորությանը։ Նրանում տեղակայված են 12 ագրե-
գատներ, որոնցից յուրաքանչյուրը տալիս է 500 հազարական կիլովատ։ Իսկ
բոլորը միասին՝ վեց միլիոն կիլովատ։ Ամբողջ աշխարհում այդպիսի կայան-
ներ չեն եղել և չկան։ Ջրամբարի ջրի պաշարները հավասար են Արալյան և



Ազովյան ծովերի, Կույբիշևի և Վոլգոգրադի ջրամբարների ջրերին՝ միասին
վերցրած։ Վիթխարի կառույց, հսկաների հսկա. ընդամին ամբողջ շինարարու-
թյան վրա կատարված ծախսերը պետությանը կվերադարձվեն արդեն 1974
թվականին։

Եթե շարունակենք համեմատությունները, ապա կուզենայի ցույց տալ մի
քանի թվեր ևս։ Նախապատերազմյան մեկ տարում ամբողջ երկիրը թողար-
կում էր 145 հազար ավտոմոբիլ։ Մինչդեռ հենց միայն Վոլգայի գործարանը
տարեկան թողարկելու է 600 հազար ավտոմեքենա։ 1940 թ. նավթի հանույթը
երկրում հավասար էր 31,1 միլիոն տոննայի, գազինը՝ 3,2 միլիարդ խորա-
նարդ մետրի։ Իսկ 1975 թ. միմիայն Արևմտյան Սիբիրը տալու է 127,3 մի-
լիոն տոննա նավթ, 44 միլիարդ խորանարդ մետր գազ։

Ռուսաստանը մեծ է և անծայրածիր։ Վիթխարի է նրա տնտեսական կա-
րողությունը։ Եվ այնուամենայնիվ Ռուսաստանի ֆեդերացիան մեկուսացված
չէ։ Նրա ժողովրդական տնտեսությունը շատ թելերով սերտորեն շաղկապված
է միութենական մյուս հանրապետությունների զարգացման հետ։ ՍՍՀՄ էկո-
նոմիկան այսօր՝ դա փոխադարձաբար կապված ժողովրդատնտեսական մի
համալիր է, որ ըստ միասնական պետական պլանի զարգանում է հանուն ամ-
բողջ երկրի և յուրաքանչյուր հանրապետության՝ առանձին վերցրած։ Մեր
սոցիալիստական հայրենիքի ուժն ու հզորությունը գոյանում են սովետական
յուրաքանչյուր քաղաքացու աշխատանքային հաջողություններից, յուրաքան-
չյուր աշխատանքային կոլեկտիվի, սովետական բոլոր ժողովուրդների հաջո-
ղություններից։

ՍՄԿԿ XXIV համագումարի դիրեկտիվներով նախատեսված են Ռուսաս-
տանի էկոնոմիկայի և կուլտուրայի նոր հզոր վերելք, ժողովրդական բարեկե-
ցության հետագա աճ։ Հնգամյակի ընթացքում 1,4 անգամ կավելանա ՌՍՖՍՀ
ազգային եկամուտը, գրեթե 40 տոկոսով կաճի էլեկտրաէներգիայի արտա-
դրությունը, 41,3 տոկոսով՝ նավթի հանույթը։ 1975 թ. Ռուսաստանը կարդյու-
նահանի 374 միլիոն տոննա քարածուխ, կձուլի 52,7 միլիոն տոննա չուգուն և
80,3 միլիոն տոննա պողպատ, ավելի քան կրկնակի չափով կավելացնի ավ-
տոմոբիլների արտադրությունը։ Ավելի բերք-
առատ կդառնան ռուսական անծայրածիր դաշտերը. հացահատիկի տարեկան
բերքը պլանավորվում է 116 միլիոն տոննայի չափով, զգալիորեն կաճի գյու-
ղատնտեսական բոլոր մթերքների գնումների ծավալը։

Ռուսաստանի հնգամյակը լավ է սկսված։ Առաջին տարվա արդյունքները
չեն կարող չուրախացնել։ Ազգային եկամտի աճը տարվա ընթացքում կազ-
մել է մոտ վեց տոկոս։ Արդյունաբերական արտադրության ծավալն աճել է
ութ տոկոսով։ Գյուղատնտեսության համար եղանակը, ցավոք, անբարենպաստ
էր։ Այնուամենայնիվ գյուղատնտեսական մթերքների արտադրությունը
վեց տոկոսով գերազանցեց անցյալ հնգամյակի միջին տարեկան ծավալը։

Լավ է սկսված երկրորդ տարին։ Առաջին կիսամյակում կատարվել և գե-
րակատարվել են առաջադրանքները կարևորագույն տեսակի արտադրանքնե-
րի գծով, ավելի բարձր տեմպերով էին զարգանում ժողովրդական տնտեսու-
թյան տեխնիկական առաջընթացն ապահովող ճյուղերը։

Արագացված տեմպերով են զարգանում մեքենաշինությունը, նավթի,
գազի, քիմիայի և ծանր արդյունաբերության մյուս ճյուղերը։ Զգալիորեն
ավելացել է ժողովրդական սպառման կարևորագույն ապրանքների՝ բոլոր տե-

սակի գործվածքեղենի, կարված ապրանքների, մսի, երշիկեղենի, կենդանա-
կան յուղի, ճենապակյա-հախճապակյա սպասքի, էլեկտրափոշեծծիչների,
սառնարանների, կահույքի արտադրությունը։ Հաջողությամբ է կենսագործ-
վում ժողովրդի նյութական և կուլտուրական կենսամակարդակի բարձրացման
լայն ծրագիրը։

Իններորդ հնգամյակի բնորոշ առանձնահատկությունը աշխատանքի ար-
տադրողականության արագացված աճն է։ ՌՍՖՍՀ Մինիստրների սովետին
ենթակա ձեռնարկություններում ու տնտեսություններում գոյություն ունեցող
այդ կարևորագույն ռեզերվի հաշվին նախատեսվում է ստանալ արդյունաբե-
րական արտադրանքի աճի 93 տոկոսը և գյուղատնտեսական արտադրանքի
աճի 100 տոկոսը։

Ավտոմատացված միջոցների և հաշվիչ տեխնիկայի արմատավորման
հիման վրա կատարելագործվում է ՌՍՖՍՀ ժողովրդական տնտեսության կա-
ռավարումը։ Ստեղծվում են կոմպլեքսայնորեն մեքենայացված նորանոր
ձեռնարկություններ և արտադրություններ, արմատավորվում են ավտոմատ,
հոսքային-մեքենայացման ենթարկված և կոնվեյերային գծեր, բարձր ար-
տադրողական սարքավորում։ Այդ ամենը հնարավորություն է տալիս տնտե-
սել մոտավորապես 18 միլիոն մարդու աշխատանք։ Առանձնապես արագ,
տնտեսական մյուս շրջանների համեմատությամբ գերազանցող, տեմպերով է
զարգանում Սիբիրի և Հեռավոր Արևելքի էկոնոմիկան։ Արևելյան շրջանների
տնտեսական հզորության արագացված զարգացումը նախատեսված է ՍՄԿԿ
XXIV համագումարի դիրեկտիվներով։ Հնգամյակի ընթացքում արդյունաբե-
րական արտադրանքի ծավալը Ռուսաստանի Ֆեդերացիայում կավելանա 47
տոկոսով, իսկ Սիբիրում և Հեռավոր Արևելքում՝ զգալիորեն ավելի՝ 60 տո-
կոսով։

Ռուսաստանի Ֆեդերացիան ոչ միայն ինդուստրիալ, այլև զարգացման
բարձր մակարդակ ունեցող գյուղատնտեսության հանրապետություն է։ Տա-
րեցտարի աճում է հացահատիկի, կարտոֆիլի, բանջարեղենի, անասնապա-
հական մթերքների արտադրությունը։

Հետաքրքրական է քննության առնել հացահատիկի արտադրության աճի
դինամիկան։ 60-ական թվականների առաջին հնգամյակում Ռուսաստանի ֆե-
դերացիան ստացել է տարեկան միջինը 76,6 միլիոն տոննա։ Հաջորդ հնգամ-
յակում հացահատիկի տարեկան միջինը հասել է մինչև 100 միլիոն տոննայի։
Չնայած անբարենպաստ կլիմայական պայմաններին և աշնանացանի մի մա-
սի փչացմանը, անցյալ տարի ստացվեց 104,7 միլիոն տոննա հացահատիկ։
Թվում է, բոլորովին վերջերս, նույնիսկ առաջավոր տնտեսությունները միայն
երազում էին հեկտարից հարյուր փութ ստանալու մասին, իսկ 1970 թ., ռու-
սական հողագործության պատմության մեջ առաջին անգամ, Ռուսաստանի
Ֆեդերացիայում միջին հաշվով հեկտարից հարյուր փութ բերք ստացվեց։

Ռուսաստանի սովխոզներն ու կոլտնտեսությունները Կուբանի երկրագործ-
ների օրինակով լայն մրցություն ծավալեցին հողագործության բարձր կուլ-
տուրայի համար։ Մեծ աշխատանք է կատարվում անասնաբուծության հետա-
գա վերելքի բազայի՝ կերի պաշարների, ավելացման ուղղությամբ։

Երկու տարի շարունակ հանրապետության մի շարք շրջաններում կլիմա-
յական պայմանները ծայրահեղորեն անբարենպաստ էին։ Առանց ձյունի խըս-
տաշունչ ձմեռը քիչ վնաս չհասցրեց աշնանացանին։ Հարկ եղավ դրա մի զգալի



մասը հատկացնել գարնանային մշակույթներին։ Հողագործները, չնայած
դաշտային աշխատանքների աճող ծավալին, գարնանացանը կատարեցին կարճ
ժամկետներում և լավ որակով։ Նույնպիսի կազմակերպվածությամբ է անց-
նում բերքահավաքը։

Ռուսաստանի գյուղատնտեսությունը սոսկ միայն հաց չէ, միս ու կաթ չէ։
Այն տալիս է շաքար, բուսական յուղ, վուշաթել և բրինձ։ Հեռավոր Արևելքում
մշակում են սոյա, որն ապահովում է երկրի ամբողջ հրուշակեղենի արդյու-
նաբերությունը։

Գյուղատնտեսության մեջ ավելի ու ավելի է թափանցում գիտատեխ-
նիկական առաջընթացը։ Ներկայումս գյուղում կատարվող աշխատանքը յու-
րացնում է արդյունաբերականի բոլոր գծերը՝ մեքենայացման բարձր աստի-
ճան, արտադրության կենտրոնացում, մասնագիտացում։ Ստեղծվում են խո-
շոր անասնաբուծական համալիրներ և թռչնաբուծական ֆաբրիկաներ, արմա-
տավորվում են նոր տեխնիկան ու տեխնոլոգիան։

* * *

Այն ամենով, ինչով ուժեղ է ու հարուստ մեր հայրենիքը, իրավամբ
հպարտանում է սովետական քաղաքացին և բնական ցանկություն է առաջա-
նում հետադարձ հայացք գցել անցյալի վրա, ավելի խոր գիտակցելու և ավելի
ակնբախ զգալու այսօրվա սխրագործությունների վեհությունը։ Հայացք գցել
անցյալի վրա, նշանակում է տեսնել այն ուղին, որով անցել է մեր ժողովուր-
դը՝ այսօրվան հասնելու համար։ Այդ ուղին հեշտ չի եղել։

Հետամնաց, ցարական Ռուսաստանում ծայրամասերն առանձնապես աղ-
քատ էին տնտեսապես։ Այսպես կոչված «այլազգիների» հսկայական մե-
ծամասնությունը անգրագետ էր, ապրում էր սոսկալի աղքատության մեջ,
հիվանդությունները հնձում էին մարդկանց։ Ինչպես նշում էր Վ. Ի. Լենինը,
փոքր ազգությունների մեծաքանակ բնակչության կենսապայմանները շատ
ավելի անմարդկային էին, քան ռուս մարդունը։

Ցարիզմի, բուրժուա-կալվածատիրական հասարակարգի դեմ մղվող պայ-
քարում բոլոր ազգությունների բանվորներն ու գյուղացիները հանդես էին
գալիս որպես դասակարգային եղբայրներ՝ համակված մեկ ցանկությամբ, մեկ
նպատակով։ Ազատության ու հեղափոխության համար միևնույն շարքում
մարտնչում էին ռուսներն ու ուկրաինացիները, հայերն ու ուզբեկները, թա-
թարներն ու բաշկիրները։

«Ռուս ժողովուրդը,— ասել է Վ. Ի. Լենինը,— չի կարող ազատություն
նվաճել իր համար, չպայքարելով մյուս ժողովուրդների ազատության հա-
մար...»։

Սովետական իշխանությունը առաջին իսկ քայլերից սկսեց արմատավո-
րել ազգային քաղաքականության լենինյան սկզբունքները՝ ժողովուրդների
հավասարությունն ու սուվերենությունը, ժողովուրդների ազատ ինքնորոշման
իրավունքը, բոլոր և ամեն տեսակ ազգային արտոնությունների ու սահմանա-
փակումների վերացումը, ազգային փոքրամասնությունների և էթնիկական
խմբերի ազատ զարգացումը։ Լենինյան սկզբունքների մարմնավորումը կյան-
քում հնարավորություն տվեց սովետական հանրապետությունների գոյությու-
նը պաշտպանել համաշխարհային իմպերիալիզմի դեմ-հանդիման, վերականգ-
նել քայքայված ժողովրդական տնտեսությունը և ստեղծել միասնական սո-
ցիալիստական տնտեսություն, կյանքի կոչել երկրի վիթխարի տնտեսական

պոտենցիալը, ապահովել աշխատավորների բարեկեցության անշեղ աճը, երկ-
րի բոլոր ազգերի ու ազգությունների բազմակողմանի զարգացումն ու կուլ-
տուրայի բարգավաճումը։ Լենինյան ազգային քաղաքականության մարմնա-
վորման կարևոր գործոնը սովետական պետականության ստեղծումն էր։

Ռուսական հանրապետությունը կրում է ֆեդերատիվ անունը։ Վ. Ի. Լենի-
նը մշակել է Ռուսաստանի ֆեդերացիայի հիմունքները։ Նրա գրած «Աշխա-
տավոր և շահագործվող ժողովրդի իրավունքների դեկլարացիա»-ում հայտա-
րարվում էր. «...Ռուսաստանի Սովետական հանրապետությունը հիմնվում է
ազատ ազգերի ազատ միության հիմունքով, իբրև սովետական ազգային հան-
րապետությունների ֆեդերացիա» (Վ. Ի. Լենին, Երկ., հ. 26, էջ 517)։ Սովետ-
ների համառուսաստանյան III համագումարում լենինյան դեկլարացիան օ-
րենսդրականորեն հաստատվեց։ 1918 թ. վերջից նաև պաշտոնապես ամրա-
պնդվեց նրա անվանումը՝ ՌՍՖՍՀ։

Հարկավոր է նշել, որ սովետական իշխանության պայմաններում արմա-
տապես փոխվեց ֆեդերացիայի բովանդակությունը։ Եթե բուրժուական պե-
տությունում այն հենվում էր ուրիշ ազգերի նկատմամբ մեկ ազգի տիրապե-
տության վրա, ապա սոցիալիստական ֆեդերացիան ապահովեց բոլոր ազգե-
րի և ժողովուրդների իրավահավասարությունն ու ազատությունը։ «Ռուսաս-
տանի Սովետական հանրապետության օրինակով,— գրել է Վ. Ի. Լենինը,—
մեզ առանձին ակնառությամբ ուղղակի պատկերանում է, որ այժմ ֆեդերա-
ցիան, որը մենք իրականացնում ենք և որը մենք պետք է իրականացնենք,
հատկապես ամենաուղիղ քայլը կլինի Ռուսաստանի զանազան ազգություննե-
րին մեկ միասնական դեմոկրատական կենտրոնացված սովետական պետու-
թյան մեջ ամենաամուր կերպով համախմբելու համար» (Երկեր, հ. 27, էջ 243)։

Սովետների համառուսաստանյան հինգերորդ համագումարը, 1918 թ. հու-
լիսի 10-ին, առաջին սովետական սահմանադրության ընդունմամբ, օրենսդրա-
կանորեն ամրապնդեց ՌՍՖՍՀ պետական կառուցվածքի մասին լենինյան
գաղափարը՝ սովետական ազգային հանրապետությունների ֆեդերացիայի ձե-
վով։ 1922 թ. վերջին ՌՍՖՍՀ կազմի մեջ մտնում էին 10 ինքնավար հանրապե-
տություն, 11 ինքնավար մարզ։ Հոկտեմբերի հաղթանակից հետո կազմավոր-
վեցին Ուկրաինական, Բելոռուսական, Ադրբեջանական, Հայկական, Վրացա-
կան անկախ սովետական հանրապետությունները։ Բայց սովետական հանրա-
պետությունները կապիտալիստական աշխարհի դեմ-հանդիման ինչպես քա-
ղաքական, այնպես էլ տնտեսական միասնության կարիք էին զգում։ Սոցիա-
լիզմի շինարարության տնտեսական և քաղաքական գործոնները պահանջում
էին անկախ հանրապետությունների միջև փոխհարաբերությունների զարգա-
ցում՝ դեպի ավելի սերտ ֆեդերատիվ միությունը։

«Բոլոր սովետական հանրապետություններին,— նշվում է ՍՍՀՄ կազմա-
վորման 50-ամյակի առթիվ ՍՄԿԿ Կենտկոմի որոշման մեջ,— որոնք ստեղծ-
վել են նախկին ցարական Ռուսաստանի ժողովուրդների հեղափոխության ըն-
թացքում, հատուկ էր ֆեդերատիվ միավորման բնական ձգտումը։ Թևակոխե-
լով սոցիալիզմի կառուցման ուղին, նրանք ավելի սերտորեն էին համախմբ-
վում Ռուսաստանի Ֆեդերատիվ Սոցալիստական Հանրապետության շուրջը»,
որը ՍՍՀ Միության յուրօրինակ նախատիպն էր։

Հանդես գալով սովետների համառուսաստանյան X համագումարում,
որտեղ վճռվում էր Ռուսաստանի Ֆեդերացիայի՝ ՍՍՀ Միության մեջ մտնելու



հարցը, Մ. Ի. Կալինինն ասաց. «Մեզ սովետների X համագումարի պատգա-
մավորներիս համար... մի՞թե թանկ չէ ՌՍՖՍՀ անունը։ Այն թանկ է մեզ հա-
մար։ Այդ անունը նվաճված է ռազմական ճակատամարտերի բոցերում։ Այդ
ճակատամարտերում քիչ զոհեր չեն կրել մեր երկրի բանվորներն ու գյուղա-
ցիները։ Ես տեսնում եմ, թե ինչպես է մեզնից վեր ծածանվում կարմիր դրո-
շակը հինգ՝ ՌՍՖՍՀ սրբազան տառերով ...Եվ մենք, սովետների X համա-
գումարի պատգամավորներս, ամբողջ սովետական ռուսաստանյան ֆեդերա-
ցիայի լիազոր ներկայացուցիչներս, այդ թանկագին, մարտերով ու հաղթա-
նակներով պսակված, բանվորների ու գյուղացիների զոհերով ամրա-
պնդված դրոշակը խոնարհում ենք Սովետական Հանրապետությունների Միու-
թյան առաջ... Մենք տեսնում ենք, թե ինչպես է արդեն բարձրանում Սովետա-
կան Հանրապետությունների Միության նոր կարմիր դրոշակը։ Այդ դրոշակի
ձողը, ընկերներ, ես տեսնում եմ ընկեր Լենինի ձեռքերում... Եվ այսպես,
ընկերնե՛ր, առա՛ջ, վե՛ր բարձրացրեք այդ դրոշակը, որպեսզի այն կարողանան
տեսնել աշխարհի բոլոր աշխատավորները...»։

ՍՍՀՄ կազմավորումով շարունակվում էր ազգային-պետական շինարա-
րությունը Ռուսաստանի Ֆեդերացիայում։ Նախկինում ստեղծված ինքնավար
հանրապետությունների թվում ավելացան նորերը՝ Կաբարդինո-Բալկարական,
Մարիական, Չեչենո-Ինգուշական, Հյուսիս-Օսեթական, Կոմի ինքնավար հան-
րապետությունները, որոնք մինչև այդ ինքնավար մարզեր էին։ 1925—1937
թթ. կազմակերպվել են 10 ազգային օկրուգներ։

Բոլոր ինքնավար հանրապետություններն ու մարզերը, բոլոր ազգային
օկրուգները այսօր էկոնոմիկայի և կուլտուրայի չտեսնված բարգավաճման են
հասել, սովետական բոլոր մարդիկ ընթանում են կոմունիզմ կառուցողների
միահամուր շարքում։ Ազգային հանրապետությունների նվաճումները լենինյան
ազգային քաղաքականության հաղթանակի ամենավառ վկայությունն է։

Վերցնենք, որպես օրինակ, Բաշկիրական ԻՍՍՀ-ն։ Անճանաչելիորեն փոխ-
վել է նա սովետական իշխանության տարիներին։ Բաշկիրիան դարձել է նավ-
թի և քիմիայի, քարածխի և անտառամշակման, հաստոցաշինության և էլեկ-
տրատեխնիկայի, բարձր զարգացած հողագործության և անասնաբուծության
երկիր։ Բաշկիրիայի գործարանների ու ֆաբրիկաների արտադրանքն ա-
ռաքվում է աշխարհի յոթանասուն երկրներ։ Արդյունաբերական արտադրան-
քի թողարկումը սովետական իշխանության տարիներին ավելացել է գրեթե
հինգ հարյուր անգամ։ Այստեղ վեր են խոյացել այնպիսի խոշորագույն ձեռ-
նարկություններ, ինչպես Նոր Ուֆայի նավթավերամշակման և Ստերլիտա-
մակի սինթետիկ կաուչուկի, Սալավաթի նավթաքիմիական և Ուֆայի մոտո-
շինարարական գործարաններն են։ Բաշկիրիան դարձել է մսի, կաթի, հացա-
հատիկի, շաքարի ճակնդեղի, կարտոֆիլի խոշոր արտադրող։ 30 հազար տրակ-
տոր և 13 հազար կոմբայն են աշխատում հանրապետության դաշտերում։
1910 թ. չկար բարձրագույն կրթություն ունեցող և ոչ մի բաշկիր, իսկ միջնա-
կարգ ուսումնական հաստատություններում սովորում էին ընդամենը... 12
մարդ։ Այժմ հանրապետությունում բնակչության յուրաքանչյուր հազար մար-
դուն ընկնում է տասը ուսանող, ավելի, քան կապիտալիստական այնպիսի
երկրներում, ինչպիսիք են՝ ԳՖՀ-ն, Անգլիան, Ֆրանսիան։ Հանրապետությու-
նում հրատարակվում են տասնյակ թերթեր ու հանդեսներ, յուրաքանչյուր տարի
թողարկվում է ավելի քան երկու միլիոն գիրք։ Չուվաշական ինքնավար մար-

գի ժողտնտխորհի՝ 1920 թ. սեպտեմբերից մինչև 1921 թ. ապրիլն ընկած ժա-
մանակի վերաբերյալ հաշվետվության մեջ ասվում է, թե այդ ժամանակամի-
ջոցում արտադրվել են մոտ մեկ ու կես միլիոն խսիր և պարկ, գրեթե յոթ
հարյուր հազար զույգ տրեխ, 140 հատ խոտի եղան, 240 փոցխ, ցաքանի
համար 2.260 ատամ, 2.093 դույլ։ Ներկայումս Չուվաշական ԻՍՍՀ Սովետա-
կան Միության ինդուստրիալ հրապարակներից մեկն է։ Այստեղ տեղադրված
են խոշորագույն գործարաններ, կոմբինատներ, կոլտնտեսություններ, սով-
խոզներ, բուհեր, գիտական հիմնարկներ։ Այժմ հանրապետության արդյու-
նաբերությունը երկու օրվա ընթացքում ավելի շատ արտադրանք է տալիս,
քան նախահեղափոխական մեկ տարում։

Մորդովիան ցարական ժամանակներում մասնագիտացել էր բանտերին
տրեխներ մատակարարելու մեջ։ Այժմ նա ունի արդյունաբերության արդիա-
կան էլեկտրատեխնիկական, սարքաշինական, լուսատեխնիկական, մեքենա-
շինական, քիմիական և հեռանկարային այլ ճյուղեր։

Տնտեսական թռիչքի, գիտության ու կուլտուրայի զարգացման ասպարե-
զում հսկայական սլացքի գծերը յուրահատուկ են Ռուսաստանի մյուս բոլոր
ինքնավար հանրապետություններին ու մարզերին։ Թաթարիան՝ միայն նավ-
թագործների երկրամաս չէ։ Այդ հանրապետության ձեռնարկություններն ար-
տադրում են ժողովրդական տնտեսության ավելի քան հարյուր ճյուղի ար-
տադրանքներ։ Յակուտիան հայտնի է ադամանդներով, Կարելիան և Կոմին՝
անտառներով ու թղթով։ Իսկ բոլորը միասին՝ արտադրության բարձր մակար-
դակով, մեծ վարպետությամբ, աշխատասիրությամբ։

Մեր օրերում ոչ իրավազուրկ ժողովուրդներ ունենք, ոչ էլ հետա-
մնաց ծայրամասեր։ Ժողովրդական տնտեսության պետական պլանավորման
մեջ ներդաշնակորեն զուգակցվում են սովետական բոլոր ազգերի ու ազգու-
թյունների համապետական, հանրապետական և ինտերնացիոնալ շահերը։

Սոցիալիստական արտադրության բնորոշ առանձնահատկությունը բոլոր
ազգությունների, բոլոր հանրապետությունների աշխատավորների, բոլոր ար-
տադրական կոլեկտիվների ակտիվ մասնակցությունն է նախատեսված պլան-
ների կատարման համար մղվող պայքարին։ Յուրաքանչյուր սովետական
մարդ այժմ տեսնում է, որ այն ամենը, ինչ ստեղծվում է մեր երկրում,
ամբողջ ժողովրդի համար է, յուրաքանչյուր հանրապետության համար։

Այժմ ամենահաղթ մեծ ուժ է դառնում շահերի ու նպատակների, կամքի
ու գործողությունների, հոգեկան հարազատության ու անշահախնդիր փոխա-
դարձ օգնության միասնությունը։ Այդ ուժը հնարավորություն տվեց դիմակա-
յելու և հաղթելու գերմանա-ֆաշիստական զավթիչների դեմ ահեղ գոտեմար-
տում։ Այդ ուժը, որ մեր հասարակության միաձույլ միասնության հիմքն է,
մեզ հնարավորություն է տալիս արագացված տեմպերով առաջ ընթանալու
դեպի նորանոր հաղթանակներ։

Տարբեր ազգությունների մարդիկ կառուցեցին Դնեպրոգէսը և Մագնիտ-
կան, Թուրքսիբը և Կոմսոմոլսկը, յուրացրեցին անապատներն ու Սիբիրի
լայնարձակ տարածությունները։ Աշխատանքային համագործակցության ա-
վանդույթները փոխանցվում են սերնդե-սերունդ։

Կամա գետի վրա խոյանում են ավտոգիգանտի մասնաշենքերը։ Այն ապ-
շեցնում է իր չտեսնված հզորությամբ։ Նրա արտադրությունների համալիրը
կզբաղեցնի հարյուր քառակուսի կիլոմետր տարածություն։ Գործարանը թո-



ղարկելու է տարեկան 150 հազար մեծ տարողության բեռնատար ավտոմե-
քենաներ։ Եվ, թեպետ ավտոգիգանտը կառուցվում է ՌՍՖՍՀ տերիտորիայում,
նրա ստեղծմանը մասնակցում են մեր ամբողջ երկիրը, նրա բոլոր տասնհինգ
միութենական հանրապետությունները, մեր բոլոր խոշոր ինդուստրիալ կենտ-
րոնները։ Այստեղ, կառույցում, հնչում են Միության բոլոր ազգությունների
լեզուները։ Դե, ասենք, ավտոգիգանտը կառուցվում է ո՛չ միայն Չելնայի
Առափնյակում, այլև Ուկրաինայում, Ղազախստանում, Հայաստանում, Ուրա-
լում։ Նրա կառուցման համար գլանվածք են մատակարարում Զապորոժեն
և Մագնիտագորսկը, Կարագանդան և Բելորեցկը։ Խողովակներ նրան ու-
ղարկում են Լենինգրադը և Դնեպրոպետրովսկը, մետաղյա ցանց՝ Ռիգան և
Կաունասը... Չելնայի Առափնյակում իրար հանդիպում, համակենտրոնաց-
վում են մետաղագործների, քիմիկոսների բազմաթիվ կոլեկտիվների և երկրի
բոլոր ծայրերից ամենատարբեր ճյուղերի այլ ներկայացուցիչների աշխա-
տանքի արգասիքը։

Կամայի ավտոգործարանը, ինչպես և երկրի մյուս խոշորագույն կա-
ռույցները, լավ օրինակ է պատկերացնելու համար մեր սոցիալիստական
էկոնոմիկայի առավելություններից մեկը։ Նոր ուղենիշներ կանխատեսելով
ինդուստրիայի զարգացման ասպարեզում, երկիրն ի մի է հավաքում շատ
հանրապետությունների, մարզերի ու երկրամասերի ուժերը և այնպիսի խըն-
դիրներ է վճռում, որոնք վճռել ի վիճակի չէ մեկ հանրապետությունը, մեկ
մինիստրությունը։

Բուռն կերպով զարգացող գիտատեխնիկական առաջընթացի պայմաննե-
րում առանձնապես նպատակահարմար են դառնում արտադրության մասնա-
գիտացումը, աշխատանքի բաժանումը տնտեսական շրջանների ու հանրապե-
տությունների միջև։ Յուրաքանչյուր հանրապետությունում, յուրաքանչյուր
շրջանում ապահովվում է արդյունաբերական արտադրանքի այն ճյուղերի
արագացման աճը, որոնց զարգացման համար այնտեղ առավել բարենպաստ
պայմաններ կան։ ՌՍՖՍՀ-ում, օրինակ, արագացված տեմպերով են զարգանում
մեքենաշինությունը, գազի, նավթի և քիմիական արդյունաբերությունը։ Հայ-
կական ՍՍՀ-ում, որտեղ սեփական հումքը բավարար չէ, առավելությունը
տրվում է մեքենաշինության ու մետաղագործական արտադրություններին, թե-
թև և սննդի արդյունաբերությանը։

Սովետական Միության ընդհանուր տնտեսական հզորության մեջ, հաս-
կանալի է, ամենամեծ բաժինն ընկնում է Ռուսաստանի Ֆեդերացիային։ Եվ,
այնուամենայնիվ, Ռուսաստանում չկա, թերևս, որևէ ճյուղ, որն այս կամ այն
չափով կապված չլինի մյուս հանրապետությունների ձեռնարկությունների
հետ։ Սիբիրի անծայրածիր տարածություններում հոնդում են բելոռուսական
տրակտորները, իսկ Կովկասի ճանապարհներին սլանում են ուրալյան ապ-
րանքատար ավտոմեքենաները, Բուխարայից գազը հասավ ուրալյան գործա-
րանները, իսկ սրանք մետաղ են տալիս Միջին Ասիային։ Իվանովյան մանա-
ծագործները կտավ են գործում ուզբեկական բամբակից, իսկ Սմոլենսկի կտա-
վից զգեստ են կարում ուկրաինական նորաձևարարները։ Սարատովի ծանր
մեքենաշինական գործարանն իր արտադրանքը պատրաստելու համար ան-
հրաժեշտ մասեր է ստանում տասը միութենական հանրապետություններում
տեղակայված 137 ձեռնարկություններից։ Եվ տարեցտարի աճում է այնպիսի

խոշոր ձեռնարկությունների թիվը, որոնք կարող են զարգանալ միայն ընդ-
հանուր-միութենական կոոպերացիայի հիման վրա։

Եվ երբ մենք ասում ենք, թե Ռուսաստանի Ֆեդերացիան քայլում է մյուս
հանրապետությունների հետ ձեռք-ձեռքի տված, ապա դա լոկ խոսք չէ, այլ
մեր սոցիալիստական շինարարության, կոմունիզմի ուղիով մեր հետագա
առաջընթացի էությունը, հիմքը։ Ժողովուրդների բարեկամությունը՝ մեր ամե-
նաթանկարժեք հարստությունը, լենինյան ազգային քաղաքականության ար-
դասիքը, այն վիթխարի շարժիչ ուժն է, որը չգիտեր և չգիտե բուրժուական,
կապիտալիստական և ոչ մի երկիր։

Սովետական իշխանության առաջին տարիներին Վլադիմիր Իլյիչ Լենինը
գրել է՝ «Նայեցե՛ք ՌՍՖՍՀ քարտեզին՝ Վոլոգդայից դեպի հյուսիս, Դոնի Ռոս-
տովից և Սարատովից դեպի հարավ-արևելք, Օրենբուրգից և Օմսկից դեպի հա-
րավ, Տոմսկից դեպի հյուսիս ձգվում են ամենաանընդգրկելի տարածություն-
ներ, որտեղ կտեղավորվեին տասնյակ հսկայական կուլտուրական պետու-
թյուններ։ Եվ այդ բոլոր տարածություններում թագավորում է նահապետա-
կանությունը, կիսավայրենությունը և իսկական վայրենությունը»։

Այդ ժամանակից անցել է կես դարից մի քիչ ավելի։ Պատմության հա-
մար ոչ մեծ մի ժամկետ։ Իսկ Ռուսաստանն այդ տարիներին բոլորովին
անճանաչելի է դարձել։ Միլիոնավոր մարդկանց կամքը, աշխատանքը, խան-
դավառությունը, բոլոր ազգերի ու ազգությունների անխզելի միությունը, որ
կրում են մեկ ընդհանուր անուն՝ սովետական ժողովուրդ, Ռուսաստանը, մեր
ամբողջ սոցիալիստական երկիրը դարձրել են հզոր, բարգավաճող տերություն։

Ռուսաստանը, ինչպես և բոլոր եղբայրական հանրապետությունները,
անցել է փառապանծ ուղի, ձեռք է բերել աչքի ընկնող հաջողություններ։ Իսկ
առջևում առավել գեղեցիկ ապագան է։

Ի. Ն. ՎԵԿՈՒԱ

Վրացական ՍՍՀ գիտությունների ակադեմիայի
պրեզիդենտ, ակադեմիկոս

# ԳԻՏՈՒԹՅՈՒՆԸ ՍՈՎԵՏԱԿԱՆ ՎՐԱՍՏԱՆՈՒՄ

Գիտական-ստեղծագործական մտքի զարգացումը Վրաստանում ունի փա-
ռավոր ավանդույթներ, որոնք իրենց արմատներով գնում են շատ վաղ անց-
յալը։ Դեռ հին ժամանակներում Վրաստանում գոյություն են ունեցել լուսա-
վորության և հոգևոր մշակույթի օջախներ։ Տակավին IV դարում, Կոլխիդայում
(Արևմտյան Վրաստան) գոյություն ուներ փիլիսոփայական-ճարտասանական
դպրոց. Գելատիում (Արևմտյան Վրաստան) և Իկալտոյում (Արևելյան Վրաս-
տան) XI դարում հիմնվել էին ակադեմիաներ, որոնք հանդիսանում էին բարձ-
րագույն կրթության և գիտական մտքի կենտրոններ, կատարելով այն ժամա-
նակի համալսարանների ֆունկցիաներ։

Միջնադարյան Վրաստանում ստեղծագործական մտքի զարգացման խա-
կական գագաթնակետը հանդիսացավ Շոթա Ռուսթավելու «Վագրենավորը»
հանճարեղ պոեմը։

Պատմական հաջորդ ժամանակաշրջանում գիտության զարգացումը կանգ
առավ, ժողովրդի բոլոր ուժերը կլանում էր կատաղի ու համառ պայքարը
օտարերկրյա նվաճողների դեմ, որը շարունակվեց ընդհուպ մինչև Վրաստանի
միացումը Ռուսաստանին՝ XIX դարի հենց սկզբին։

Սակայն, Վրաստանի համար ամենածանր ժամանակներում անգամ, երբ
նա կտրված էր լինում կուլտուրական աշխարհից, վրաց ժողովրդի մտավոր
ակտիվ գործունեությունը երբեք չէր դադարում։ Վրաստանի առաջավոր գոր-
ծիչները, հաղթահարելով հսկայական դժվարություններ, հոգևոր մշակույթի
օջախներ էին ստեղծում երկրի սահմաններից դուրս։ Տարբեր ժամանակա-
շրջաններում գոյություն են ունեցել հոգևոր կյանքի կենտրոններ Պաղեստի-
նում (V դար), Հունաստանում (X—XI դարեր), Բուլղարիայում (XI դարից),
իսկ ավելի ուշ Ռուսաստանում՝ Մոսկվայում և Պետերբուրգում։ Առանձնապես
հարկավոր է նշել Ռուսաստանի հետ Վրաստանի ունեցած հնագույն մշակու-
թային կապերի պատմական կարևոր դերը։

Օտարերկրյա նվաճողների ճնշման տակ Ռուսաստան գաղթած վրացի
առաջավոր մտածողները նախ Մոսկվայում, ապա Պետերբուրգում ստեղ-

ծում էին վրացական մշակույթի կենտրոններ: Դրանցից շատերը իրենց աչքի
ընկնող գործունեությամբ նշանակալի ավանդ էին ներդնում հայրենական գի-
տության զարգացման մեջ:

XIX դարում Թբիլիսիում կազմակերպվել էին համակովկասյան գիտական
կենտրոններ, որոնցից մի քանիսը (Կովկասյան թանգարանը, Թբիլիսիի մագ-
նիսա-օդերևութաբանական դիտանոցը և այլն) աճեցին ու դարձան գիտական
խոշոր կենտրոններ, որոնք մինչև օրս էլ գոյություն ունեն: Դրանից ավելի
շուտ, XVII դարում ստեղծվել էր Թբիլիսիի բուսաբանական այգին:

XIX դարում Վրաստանը ավելի լայն հնարավորություններ ստացավ մշա-
կութային զարգացման համար: Նա հաղորդակից դարձավ ռուսական ու եվրո-
պական մշակույթին: Շատ վրացիներ բարձրագույն կրթություն էին ստանում
ռուսական և արտասահմանյան համալսարաններում, աճում էին ազգային
մտավորականության կադրերը, որոնք անխոնջ պայքարում էին վրացական
մշակույթի ու գիտության զարգացման համար. բայց ցարիզմը, իրականաց-
նելով գաղութատիրական քաղաքականություն, ամեն կերպ խանգարում էր
ազգային համալսարանի կամ գիտական որևէ այլ կենտրոնի կազմակերպմանը:

Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխությունից հետո միայն
հնարավոր եղավ բացել Թբիլիսիի պետական համալսարանը, որի հիմնադիր-
ներն էին մի խումբ գիտնականներ՝ խոշոր պատմաբան Ի. Ա. Ջավախիշվիլու
գլխավորությամբ: Համալսարանը դարձավ մտավորական կադրերի պատ-
րաստման կենտրոն և գիտա-հետազոտական աշխատանքի օջախ: Թբիլի-
սիի պետական համալսարանից ծնունդ առան և հետագայում առանձնանալով,
ինքնուրույն բարձրագույն ուսումնական հաստատություններ դարձան պոլի-
տեխնիկական, գյուղատնտեսական, բժշկական, մանկավարժական ինստի-
տուտները, ինչպես նաև հանրապետության գիտա-հետազոտական շատ այլ
հաստատություններ:

Սովետական իշխանության հաղթանակը Վրաստանում նշանավորվեց այն
բանով, որ վրաց ժողովրդի պատմության մեջ սկսվեց տնտեսական ու մշա-
կութային իսկական վերածննդի ու բարգավաճման նոր դարագլուխ:

Գիտության և մշակույթի զարգացման համար կոմունիստական կուսակ-
ցության և սովետական կառավարության ստեղծած բացառիկ նպաստավոր
պայմանները վիթխարի վերելք առաջացրին վրաց ժողովրդի ստեղծագոր-
ծական, մտավոր կյանքի բոլոր ոլորտներում: ՍՍՀՄ ժողովուրդների միասնա-
կան եղբայրական ընտանիքում, կոմունիստական կուսակցության և սովետա-
կան կառավարության ղեկավարությամբ, վրաց ժողովուրդը հսկայական հա-
ջողությունների է հասել ժողովրդական տնտեսության, գիտության ու մշա-
կույթի զարգացման բնագավառում:

Գիտության զարգացումն ու ծաղկումը Սովետական Վրաստանում լենին-
յան ազգային քաղաքականության հաղթանակի վառ վկայությունն են:

Վրաստանում Սովետական իշխանության գոյության առաջին երկու
տասնամյակներում գիտական հետազոտությունների բուռն զարգացումն ու
լայն թափը նախադրյալներ ստեղծեցին հանրապետության գլխավոր գիտա-
կան կենտրոնը՝ Վրացական ՍՍՀ գիտությունների ակադեմիան, կազմակերպե-
լու համար: Դրա կազմակերպական հիմքը դրվել էր երեսնական թվական-
ներին՝ ՍՍՀՄ գիտությունների ակադեմիայի Անդրկովկասյան ֆիլիալի ստեղծ-
մամբ, որի բազայի վրա շուտով հիմնվեցին Անդրկովկասյան հանրապետու-



թյունների ֆիլիալները: Վրացական ՍՍՀ գիտությունների ակադեմիան ստեղծ-
վեց 1941 թվականի փետրվարին՝ ՍՍՀՄ գիտությունների ակադեմիայի վրա-
ցական ֆիլիալի բազայի վրա: Նրա կազմի մեջ մտան գիտա-հետազոտական
մի շարք հիմնարկներ, որոնք առաջ գոյություն ունեին Թբիլիսիի պետական
համալսարանին կից: Անցած տարիներին ակադեմիան դարձավ Սովետական
Միության գիտական խոշոր կենտրոններից մեկը: Վրաստանի գիտություն-
ների ակադեմիայի հիմնադրման պահից սկսած, ավելի քան 30 տարի նրա
պրեզիդենտն է եղել սովետական խոշորագույն մաթեմատիկոս ու մեխանիկ,
ակադեմիկոս Նիկոլայ Իվանովիչ Մուսխելիշվիլին, որն այժմ նրա պատվավոր
պրեզիդենտն է:

Սովետական Վրաստանի գիտական հետազոտությունների աննախընթաց
թափի մասին է վկայում այն փաստը, որ այժմ հանրապետությունում կան
ավելի քան 200 գիտական հիմնարկներ (դրանցից 135-ը՝ գիտա-հետազոտա-
կան) և 18 բարձրագույն ուսումնական հաստատություններ, որոնցում աշխա-
տում են ավելի քան 19 հազար բարձրորակ մասնագետներ, դրանց թվում
գիտությունների ավելի քան 900 դոկտորներ և մոտ 6000 թեկնածուներ:

Վրաստանի գիտությունների ակադեմիայի հիմնադրման պահին նրա
կազմի մեջ մտնում էին 14 գիտա-հետազոտական հիմնարկներ, որոնցում աշ-
խատում էին գիտությունների 30 դոկտորներ և 111 թեկնածուներ: Ներկայումս
նրա սիստեմի մեջ մտնում է 41 գիտական հիմնարկ, ուր աշխատում են ավելի
քան 4000 գիտական աշխատողներ, որոնցից 287-ը գիտությունների դոկտոր-
ներ են և 1362-ը՝ թեկնածուներ, իսկ աշխատողների ընդհանուր թիվն անցնում
է 8000-ից: Ակադեմիայի կազմի մեջ մտնում են 59 իսկական անդամներ և 44
թղթակից անդամներ, որոնցից 10-ը ՍՍՀՄ գիտությունների ակադեմիայի
ակադեմիկոսներ և թղթակից անդամներ են: 16 վրացի գիտնականներ Սովե-
տական Միության ճյուղային ակադեմիաների անդամներ են: Վրաստանի
ավելի քան 50 գիտնականներ ընտրվել են արտասահմանյան ակադեմիաների
և տարբեր տեսակի միջազգային գիտական կազմակերպությունների ան-
դամներ:

Վրաստանի գիտությունների ակադեմիան իր տրամադրության տակ ունի
ժամանակակից մասնագիտական շենքեր ու կառուցումների նշանակալի
կոմպլեքս, որոնցում կան նորագույն սարքերով, ապարատուրայով և կայանք-
ներով հագեցված լաբորատորիաներ. դրանց մեծ մասն ստեղծվել է ակա-
դեմիայի ինստիտուտներում: Փորձարարական խոշոր բազաներ ունեն հանրա-
պետության մի շարք բարձրագույն ուսումնական հաստատություններ և գի-
տա-հետազոտական հիմնարկներ: Միայն գիտությունների ակադեմիայի
կենտրոնական գիտական գրադարանի և Թբիլիսիի պետական համալսարանի
գիտական գրադարանի գրքային ֆոնդը հասնում է մոտ 5 միլիոն հատորի:
Սեփական հրատարակչություններ ու տպարաններ ունեն Վրացական ՍՍՀ գի-
տությունների ակադեմիան և Թբիլիսիի պետական համալսարանը, որոնք
ամեն տարի լույս են ընծայում ավելի քան 4000 տպագրական մամուլ գի-
տական գրականություն: Հանրապետությունում հրատարակվում են հետևյալ
գիտական հանդեսները. «Վրացական ՍՍՀ գիտությունների ակադեմիայի հա-
ղորդումներ» և «Մացնե»՝ Վրաց. ՍՍՀ ԳԱ հասարակական գիտությունների
բաժանմունքի տեղեկագիրը, Թբիլիսիի համալսարանի «Աշխատությունների»
երկու սերիաները, ինչպես նաև բարձրագույն ուսումնական հաստատություն-

ների և գիտական հիմնարկների «Աշխատությունները», Վրաց. ՍՍՀ ԳԱ օրգան
«Մեցնիերեբա դա տեխնիկա» («Գիտություն և տեխնիկա») գիտա-հանրա-
մատչելի հանդեսը։

Գիտական կադրերի պատրաստման և գիտական հետազոտությունների
զարգացման գործում Վրաստանի գիտնականներին հսկայական օգնություն են
ցույց տվել ՍՍՀՄ գիտությունների ակադեմիայի գիտա-հետազոտական հիմ-
նարկները, Մոսկվայի և Լենինգրադի համալսարանները, ինչպես նաև մեր
երկրի մյուս գիտական կենտրոնները։ Ռուս գիտնականների և եղբայրական
հանրապետությունների գիտական կոլեկտիվների ներկայացուցիչների հետ
համագործակցելով, վրացի գիտնականները խոշոր հաջողությունների են հա-
սել ժամանակակից գիտության մի շարք բնագավառներում։ Այժմ Սովետա-
կան Վրաստանում լայն ճակատով ծավալվել են այնպիսի գիտական հետա-
զոտություններ, որոնք սերտորեն կապված են տնտեսական և կուլտուրական
շինարարության հրատապ խնդիրների լուծման հետ։

Վրաստանի բնական պայմանների բազմազանությունը, ռելիեֆի ու կլի-
մայի առանձնահատկությունները, նրա բնական հարուստ ռեսուրսները նը-
պաստավոր պայմաններ ստեղծեցին բնական գիտությունների բազմաթիվ
բնագավառներում լայն հետազոտություններ կատարելու համար։ Վրաց
ժողովրդի բազմադարյան նյութական ու հոգևոր մշակույթի հարուստ ժառան-
գությունն անսպառ աղբյուր հանդիսացավ պատմա-բանասիրական, լեզվա-
բանական, տնտեսական և իրավաբանական գիտությունների զարգացման հա-
մար։ Այսօր դժվար է նշել գիտության այնպիսի բնագավառ, որտեղ հանրա-
պետության գիտնականները տեսական ու գործնական կարևոր արդյունքներ
ստացած չլինեն։

Վրացական մաթեմատիկական դպրոցի նվաճումները մաթեմատիկայի ու
մեխանիկայի մի շարք բնագավառներում համաշխարհային ճանաչում են
գտել։ Վրացի մաթեմատիկոսների ուսումնասիրությունների առաջատար ուղ-
ղությունը եղել է մաթեմատիկական ֆիզիկայի սահմանային խնդիրների, էլիպ-
տիկ տիպի հավասարումների և սինգուլյար ինտեգրալ հավասարումների տե-
սության լուծման նոր մեթոդների մշակումը (Ն. Ի. Մուսխելիշվիլի, Վ. Դ.
Կուպրաձե, Ա. Վ. Բիցաձե, Ն. Պ. Վեկուա և ուրիշներ)։ Այդ ուսումնասիրու-
թյունների բնորոշ գիծը կոմպլեքսային փոփոխականի ֆունկցիաների տեսու-
թյան մեթոդների լայն կիրառումն է։ Վրացի մաթեմատիկոսներն զգալի ա-
վանդ են ներդրել նաև վարիացիոն հաշվարկման (Ա. Մ. Ռազմաձե), դասա-
կան հանրահաշվական երկրաչափության (Գ. Ն. Նիկոլաձե) պրոբլեմների
մշակման մեջ և բազմանդամների տարբեր հատկությունների ուսումնասիրման
ոլորտում։ Առանձնապես պետք է ընդգծել վրացի մաթեմատիկոսների նվա-
ճումները առաձգականության տեսության բնագավառում։

Վերջին տարիներին Վրաստանում ինտենսիվ կերպով ծավալվել են հե-
տազոտությունները տոպոլոգիայի (Գ. Ս. Չոգոշվիլի և ուրիշն.), ֆունկցիանե-
րի տեսության, հավանականությունների տեսության և մաթեմատիկական վի-
ճակագրության, մաթեմատիկական տրամաբանության և այլ բնագավառնե-
րում։ Նշանակալի զարգացում է ստացել հաշվողական մաթեմատիկան։ Վրացի
գիտնականներն արդյունավետ աշխատանք են կատարել դիֆերենցիալ հա-
վասարումների լուծման թվային մեթոդների ուսումնասիրման ուղղությամբ
(Շ. Ե. Միքելաձե և ուրիշներ)։



Վրացական մաթեմատիկական դպրոցի ղեկավար, ակադեմիկոս Ն. Ի.
Մուսխելիշվիլու «Առաձգականության մաթեմատիկական տեսության մի քանի
հիմնական խնդիրները» և «Սինգուլյար ինտեգրալ հավասարումներ» կապիտալ
աշխատությունները նշվել են ՍՍՀՄ պետական մրցանակներով։ Տուրինի գի-
տությունների ակադեմիայի կողմից նա արժանացել է նաև «Մոդեստո Պա-
նետիի» միջազգային մրցանակին։ Վրաց. ՍՍՀ ԳԱ ակադեմիկոս Ռ. Վ. Գամ-
կրելիձեն (ակադեմիկոս Լ. Ս. Պոնտրյագինի և ուրիշների հետ համատեղ)
օպտիմալ պրոցեսների և վարիացիոն հաշվարկման տեսության բնագավառում
կատարած աշխատանքների համար արժանացել է Լենինյան մրցանակի։ Մա-
թեմատիկական անալիզի մոտավոր մեթոդների բնագավառում ստացած ար-
դյունքների համար Վրաց. ՍՍՀ ԳԱ ակադեմիկոս Շ. Ե. Միքելաձեին շնորհվել
է ՍՍՀՄ պետական մրցանակ։ Վրացական ՍՍՀ պետական մրցանակով է նշ-
ված «Առաձգականության մաթեմատիկական տեսության եռաչափ խնդիրնե-
րը» մենագրությունը (աշխատանքի ղեկավար, Վրաց. ՍՍՀ ԳԱ ակադեմիկոս
Վ. Դ. Կուպրաձե)։ «Ընդհանրացած անալիտիկ ֆունկցիաներ» աշխատության
համար հոդվածիս հեղինակին շնորհված է Լենինյան մրցանակ, իսկ «Էլիպտիկ
հավասարումների նոր լուծումներ» աշխատության համար՝ ՍՍՀՄ պետական
մրցանակ։

Վրացի գիտնականները հետազոտություններ են կատարում տեսական և
էքսպերիմենտալ ֆիզիկայի այնպիսի բնագավառներում, ինչպիսիք են՝ միջու-
կային ֆիզիկան, ցածր ջերմաստիճանների ֆիզիկան, պինդ մարմնի ֆիզի-
կան, բիոֆիզիկան, ֆիզիկական էլեկտրոնիկան և այլն։ Հայտնագործված են
տարրական չորս մասնիկներ, որոնք պատկանում են ծանր բոզոնային ռեզո-
նանսների ընտանիքին։ Աշխատանքը կատարվել է միջուկային հետազոտու-
թյունների եվրոպական կենտրոնում (ԺՆԵ)՝ վրացի ֆիզիկոսների ղեկավար
մասնակցությամբ։ Տրեկի կայծային խցիկի ստեղծման համար գիտություննե-
րի ակադեմիայի աշխատակիցներ, ֆիզիկոս գիտնականներ Գ. Ե. Չիկովանուն
(հետմահու) և Վ. Ն. Ռոյնիշվիլուն (ՍՍՀՄ ԳԱ թղթակից անդամ Ա. Ի. Ալի-
խանյանի, Տ. Լ. Ասատիանու և այլոց հետ համատեղ) շնորհվել է Լենինյան մըր-
ցանակ։ Կարևոր հետազոտություններ են կատարվել ատոմային միջուկի տե-
սության բնագավառում (Վ. Ի. Մամասախլիսով և ուրիշներ)։

Վրաստանի գիտնականները էական ավանդ են ներդրել գերհոսունության
ֆենոմենոլոգիական տեսության մեջ։ Հեղուկ հելիումի գերհոսունության բնա-
գավառում կատարած հետազոտությունների համար Վրաց. ՍՍՀ ԳԱ ակադե-
միկոս Է. Լ. Անդրոնիկաշվիլին արժանացել է ՍՍՀՄ պետական մրցանակի։

Աբասթումանի աստրոֆիզիկական աստղադիտարանը (Ե. Կ. Խարաձեի
ղեկավարությամբ) հաջողությամբ դիտարկումներ ու հետազոտություններ է
կատարում գալակտիկայի կառուցվածքի, միջաստղային միջավայրի, փոփո-
խական և ոչ ստացիոնար աստղերի, Արեգակի ֆիզիկական պայմանների,
Լուսնի մակերևույթի և, վերջապես, Երկրագնդի վերին մթնոլորտի ֆիզիկա-
քիմիական հատկությունների բնագավառում։ Աստղադիտարանին են պատ-
կանում նոր օբյեկտների ու երևույթների, մասնավորապես, նոր և գերնոր
աստղերի, մոլորակային միգամածությունների, գազային միգամածության
մեջ լույսի բեկռացման հայտնագործությունները և այլն։ Նրան են պատկա-
նում նաև նոր մեթոդների ու ապարատուրայի մշակումները, որոնց մեջ կան
նաև ՍՍՀՄ պետական մրցանակով նշված աշխատանքներ։

Վրացի գիտնականները ուսումնասիրում են Երկրի ընդերքում, նրա կե-
ղևում և շրջապատող տարածության մեջ տեղի ունեցող գեոֆիզիկական երե-
վույթների բնույթը: Մշակվում են օդերևութաբանական պրոցեսների վրա
ակտիվ ներգործության մեթոդներ, ստեղծվում են երկրի կեղևի ուսումնասիր-
ման և օգտակար հանածոների հետախուզության գեոֆիզիկական նոր մեթոդ-
ներ և կատարելագործվում են գոյություն ունեցողները: Կարկտահարության
դեմ մղվող պայքարի մեթոդների ու տեխնիկական միջոցների մշակման ու
արմատավորման համար վրացի գեոֆիզիկոսներ Ն. Շ. Բիբիլաշվիլուն, Գ. Կ.
Սուլակվելիձեին և Ա. Ի. Կարցիվաձեին (ուրիշ մասնագետների ու գիտնական-
ների հետ համատեղ) շնորհված է ՍՍՀՄ պետական մրցանակ:

Երկրաբանական հետազոտությունների լայն ճակատն ընդգրկում է հնէա-
բանության և ստրատիգրաֆիայի (Ա. Ի. Ջանելիձե, Ի. Վ. Քաչարավա և ուրիշ-
ներ), ռեգիոնալ երկրաբանության և տեկտոնիկայի (Պ. Դ. Գամկրելիձե, Ա. Լ.
Յագարելի և ուրիշներ), հրաբխագիտության (Գ. Ս. Ձոցենիձե և ուրիշներ), լի-
մագիտության, հիդրոգեոլոգիայի, հանքավայրերի երկրաբանության, գեոքի-
միայի, խզոտոպների երկրաբանության և այլ հարցեր: Հրաբխածին ֆորմա-
ցիաների հանքաբերության բնագավառում կատարած աշխատանքների հա-
մար ակադեմիկոս Գ. Ս. Ձոցենիձեն (ակադեմիկոս Վ. Ի. Սմիրնովի և պրո-
ֆեսոր Վ. Ն. Կոտլյարի հետ համատեղ) արժանացել է Լենինյան մրցանակի,
իսկ «Վրաստանի դոմիոցենային էֆուզիվ հրաբխայնությունը» մենագրության
համար՝ ՍՍՀՄ պետական մրցանակի:

Սովետական Վրաստանի գրեթե ամբողջ տարածքը ենթարկվում է աշ-
խարհագրական կոմպլեքսային ուսումնասիրության: Վրացի գիտնականները
աշխատանքներ են կատարում լեռնային տարածքների ֆիզիկա-աշխարհա-
գրական և տնտեսա-աշխարհագրական ուսումնասիրման, նրանց բնական ռե-
սուրսների յուրացման և վերափոխման գիտական հիմնավորման ուղղու-
թյամբ: Վրացի գիտնականների մի մեծ կոլեկտիվի բազմամյա աշխատանքի
արդյունքը՝ Վրացական ՍՍՀ աշխարհագրական կոմպլեքսային ատլասը, որը
հրատարակվել է Վրաց. ՍՍՀ ԳԱ ակադեմիկոսներ Ֆ. Ֆ. Դավիթայայի և Ա. Ն.
Ջավախիշվիլու ղեկավարությամբ, արժանացել է Վրացական ՍՍՀ պետական
մրցանակի:

Վրացի գիտնականները նշանակալի ավանդ են ներդրել կիրառական մե-
խանիկայի կարևորագույն պրոբլեմների մշակման գործում, մասնավորապես,
շինարարական մեխանիկայի և կառուցումների դինամիկայի (Կ. Ս. Զավրիև,
Օ. Դ. Օնիաշվիլի և ուրիշներ), լեռնային մեխանիկայի (Գ. Ա. Ծուլուկիձե,
Ա. Ս. Ձիձգուրի և ուրիշներ), էներգետիկայի (Ա. Ի. Դիդեբուլաձե, Պ. Գ. Շեն-
գելիա և ուրիշներ), մեքենաների մեխանիկայի (Ռ. Ռ. Դվալի, Վ. Վ. Մախալ-
դիանի և ուրիշներ) բնագավառներում: Այդ ուսումնասիրությունների ար-
դյունքները պրակտիկ հետաքրքրություն են ներկայացնում ընդհանրապես
լեռնաշատ երկրների համար:

Վրացի գիտնականները մշակել են լեռնային հանքավայրերի օդաչրերում
աերոդինամիկական բարդ սիստեմների ալիքային պրոցեսների հաշվարկման
մեթոդները: Ստեղծվել են հանքահորերի օդափոխիչ սիստեմների ավտոմատ
կարգավորումը նախագծելու գիտական հիմքերը:

Կառուցվածքների սեյսմակայունության բնագավառում Վրաստանի գիտ-
նականների կատարած հետազոտությունների հիման վրա մշակվել են գրավի-



տացիոն և կամարային ամբարտակների լարված վիճակների, ստորգետնյա
կառուցվածքների, գետերի կանյոնների կողերի, ինչպես նաև «հենապատ-
գրունտ» սիստեմի հաշվարկման եղանակները: Շատ աշխատանքներ արտա-
ցոլում են գտել սեյսմադիմացկուն շինարարության համամիութենական նոր-
մաններում:

Վրացի գիտնականները մշակել են բարձր լեռնային տեղանքներում շա-
հագործելու համար հատկացված տրակտորների, ավտոմոբիլների ու դրանց
շարժիչների հաշվարկման ու նախագծման հիմունքները: Ավտոմոբիլային և
տրակտորների շարժիչների տեսության ու հաշվարկման հարցերի վերաբեր-
յալ աշխատանքների ցիկլի համար Վրաց. ՍՍՀ ԳԱ ակադեմիկոս Վ. Վ. Մա-
խալդիանիին շնորհված է Վրացական ՍՍՀ պետական մրցանակ:

Հանրապետությունում միայն վերջին տասնամյակում են սկսել զարգա-
նալ գիտության այնպիսի նորագույն ուղղություններ, ինչպիսիք են կիբեռնե-
տիկան և ավտոմատ կառավարումը, բայց, չնայած դրան, այդ բնագավառ-
ներում արդեն ստացվել են տեսական ու գործնական նշանակություն ունեցող
կարևոր արդյունքներ: Վրացի գիտնականները ստեղծել են ֆիզիկական, քի-
միական և կենսաբանական շղթայական պրոցեսների ու կառուցվածքների մո-
դելացման ու հաշվարկման հավանականական մեթոդները (էկոլոգիա, պոլի-
մերների աճման պրոցեսի, շղթայական ռեակցիաների կառավարման խնդիր-
ներ և այլն): Հետազոտություններ են կատարվել թվային և անալոգային հաշ-
վիչ մեքենաների մշակման ու ստեղծման ուղղությամբ՝ ՍՍՀՄ-ում առաջին
հիբրիդային հաշվիչ կոմպլեքսի համար, որը զգալիորեն արագացնում է թռչող
ապարատների կառավարման սիստեմների նախագծումը, ստեղծումն ու վերջ-
նական մշակումը:

Հանրապետությունում մեծ զարգացում ստացած գիտության ճյուղերից
մեկը քիմիան է: Այդ ճյուղը այստեղ ներկայացված է իր բոլոր հիմնական
ուղղություններով: Վրացի քիմիկոսներն զգալի ավանդ են ներդրել քիմիական
գիտության մեջ. նրանց աշխատանքների մի շարք արդյունքներ կիրառվել
են արդյունաբերության շատ ճյուղերում: Մշակվել են նոր հեռանկարային
ծակոտկեն մարմինների՝ մոլեկուլյար մաղերի (ցեոլիտների) և նրանց իոնա-
փոխանակման ձևերի սինթեզի մեթոդներ, որոնք ունեն պրակտիկ մեծ կիրա-
ռում (Գ. Վ. Ցիցիշվիլի և ուրիշներ): Ստացվել են հիդրիրացման, իզոմերացման
և այլ ռեակցիաների նոր էֆեկտիվ կատալիզատորներ (Խ. Ի. Արեշիձե և ուրիշ-
ներ): Դրանցից մի քանիսը պատենտավորվում են տեխնիկապես առաջավոր
շատ երկրներում: Ստեղծվել են նոր էֆեկտիվ լյումինոֆորներ՝ մետաղներից և
այլ նյութերից պատրաստված դետալների դեֆեկտոսկոպիայի համար: Կարե-
վոր աշխատանքներ են կատարվել մարգանեցի և նրա միացությունների (կա-
լիումի պերմանգանատի, մարգանեցի էլեկտրալիտիկ երկօքսիդի, մաքուր աղե-
րի և այլն) ստացման ուղղությամբ: Մետաղյա մարգանեցի ստացման էլեկ-
տրաքիմիական եղանակի նոր տեխնոլոգիայի մշակման համար Վրաց. ՍՍՀ ԳԱ
ակադեմիկոս Ռ. Ի. Ագլաձեն (Զեստաֆոնի երկաթամիահալվածքի գործարանի
արտադրության մասնագետների հետ համատեղ) արժանացել է ՍՍՀՄ պետա-
կան մրցանակի:

Մշակվել են պինդ անօրգանական միացությունների այնպիսի կարևոր
թերմոդինամիկական հատկությունների հաշվարկային որոշման մեթոդներ,

ինչպես ստանդարտային էնտրոպիան և բարձր ջերմաստիճանային ջերմատա-
րողությունը։

Կենսաբանական տեսակետից ակտիվ նյութեր ստանալու նպատակով նշա-
նակալի հաջողություններ են ձեռք բերվել Վրաստանի բուսական և հանքային
հումքի հետազոտման, դրանց քիմիա-դեղաբանական հատկությունների ու-
սումնասիրման և նոր դեղամիջոցների ստացման ուղղությամբ (Ի. Գ. Քութա-
թելաձե, Վ. Ս. Ասատիանի և ուրիշներ)։ Աշխատանքներ են կատարվել կիսա-
հաղորդչային տեխնիկայի համար կարևոր զտագույն բորի և գերմանիում-
կրեմնիումի համաձուլվածքների ստացման և ուսումնասիրման ուղղությամբ
(Ֆ. Ն. Թավաձե և ուրիշներ)։

Վրաստանում նշանակալի զարգացում են ստացել կենսաբանության այն-
պիսի բնագավառներ, ինչպիսիք են՝ ֆիզիոլոգիան, բուսաբանությունը, կենդա-
նաբանությունը և այլն։ Դրանց զուգընթաց վերջին տարիներս հաջողությամբ
զարգանում են կենսաբանական գիտության նոր ուղղությունները։

Ֆիզիոլոգների վրացական դպրոցի ֆունդամենտալ ուսումնասիրություն-
ները, որոնք լայն ճանաչում են ստացել, նվիրված են մարդու և կենդանիների
բարձրագույն նյարդային գործունեության և նեյրոֆիզիոլոգիայի հիմնական
օրինաչափությունների, նյարդային համակարգի ֆունկցիոնալ բիոքիմիայի
ուսումնասիրմանը, ճառագայթման ազդեցությանը կենդանիների օրգանիզմի
վրա և մոլեկուլային կենսաբանությանը։ Ներկայումս մեծ ուշադրություն է
նվիրվում հիշողության ֆիզիոլոգիական և բիոքիմիական հիմունքների ուսում-
նասիրմանը։ Այդ աշխատանքները ղեկավարում է ֆիզիոլոգների վրացական
դպրոցի ղեկավար, ակադեմիկոս Ի. Ս. Բերիթաշվիլին, որը «Մկանային և
նյարդային համակարգերի ընդհանուր ֆիզիոլոգիա» մենագրության համար
արժանացել է ՍՍՀՄ պետական մրցանակի։ Մարդու և կենդանիների ֆիզիո-
լոգիայի բնագավառում կատարած հետազոտությունների համար նրան շնորհ-
ված են նաև Ի. Պ. Պավլովի և Ի. Մ. Սեչենովի անվան մրցանակներ։

Լայն զարգացում են ստացել ուսումնասիրությունները բույսերի դասա-
կարգման և աշխարհագրության, գեոբոտանիկայի բնագավառում (Ն. Ն. Կեց-
խովելի և ուրիշներ), բույսերի ֆիզիոլոգիայի (Լ. Ի. Ջափարիձե և ուրիշներ),
գենետիկայի (Վ. Լ. Մենաբդե և ուրիշներ), մանրէաբանության և այլ բնա-
գավառներում։

Հանրապետության բնական բուսական ռեսուրսների ուսումնասիրման գոր-
ծում նշանակալի ներդրում են «Վրաստանի բույսերի որոշիչը» երկհատորյա-
կը և «Վրաստանի ֆլորան» ու «Բույսերի սեռը» կապիտալ աշխատություննե-
րը, որոնց մեջ ամփոփված են վրացի բուսաբանների բազմամյա հետազոտու-
թյունների արդյունքները։

Վերջին տարիներին մեծ հաջողություններ են ձեռք բերվել բույսերի բիո-
քիմիայի բնագավառում (Ս. Վ. Դուրմիշիձե)։ Մշակվել են Aspergillus խոր-
քային կուլտուրաների ֆիլտրատներից լամիլազայի, գլյուկոամիլազայի,
տրանսգլյուկոզիլազի ստացման կոմպլեքսային մեթոդներ։ Դրանք պատեն-
տավորվել են ԱՄՆ-ում, Ճապոնիայում, Շվեյցարիայում, Հունգարիայում և
այլ երկրներում։

Վրաստանի բուսաբանական այգիներում մշակվում են մեծ քանա-
կությամբ մերձարևադարձային բույսեր, որոնք կարևոր նշանակություն ունեն
ժողովրդական տնտեսության համար։



Վրացի կենդանաբանները ուսումնասիրել են գյուղատնտեսական և որսի
կենդանիների պարազիտներն ու հելմինտները։ Հետաքրքրական աշխատանք-
ներ են կատարվել Վրաստանի ներքին ջրավազանների հիդրոբիոլոգիական և
ձկնաբանական հետազոտության բնագավառում։

Վրացի պալեոբիոլոգները մշակել են էվոլյուցիոն ուսմունքի տեսական
այնպիսի հարցեր, ինչպիսիք են՝ օրգանական ձևերի փոփոխականությունը,
բնական ընտրության և էվոլյուցիոն պրոգրեսի տեսությունը, օրգանիզմների
մահացումը, օնտոգենեզի և ֆիլոգենեզի փոխադարձ կապը և այլն։ «Էվոլյու-
ցիոն պալեոնտոլոգիայի պատմություն» ֆունդամենտալ մենագրության հա-
մար Վրաց. ՍՍՀ ԳԱ ակադեմիկոս Լ. Շ. Դավիթաշվիլին արժանացել է ՍՍՀՄ
պետական մրցանակի։ Կարևոր աշխատանքներ են կատարվել ողնաշարավոր-
ների պալեոբիոլոգիայի ուղղությամբ (Լ. Կ. Գաբունիա և ուրիշներ)։

Մարդու և կենդանիների մորֆոլոգիայի բնագավառում կատարված հե-
տազոտությունների արդյունքները հնարավորություն տվեցին բացահայտել և
սահմանել մի շարք օրինաչափություններ, որոնք բնորոշ են արյունատար
մազանոթների ցանցերի կազմության համար։

Մեծ զարգացում են ստացել հետազոտությունները հողագիտության (Մ. Ն.
Սաբաշվիլի և ուրիշներ), բույսերի պաշտպանության (Լ. Ա. Ղանչավելի և
ուրիշներ), անտառագիտության (Վ. Զ. Գուլիսաշվիլի և ուրիշներ), խաղողա-
գործության ու գինեգործության, անասնապահության, գյուղատնտեսության
մեքենայացման ու էլեկտրիֆիկացման, էկոնոմիկայի ու կազմակերպման
և այլ բնագավառներում։

Հանրապետության գիտնականները ստացել են վրացական թեյի սելեկ-
ցիոն տեսակներ, որոնք լայնորեն արմատավորվել են Արևմտյան Վրաստանի
թեյի շատ շրջաններում։ Թեյի բույսի կենսաբանության, սելեկցիայի և սերմ-
նաբուծության բնագավառում կատարված գիտական հետազոտությունների և
թեյի հայրենական առաջին «Վրացական № 1» և «Վրացական № 2» տեսակ-
ների ստացման համար Վրաց. ՍՍՀ ԳԱ ակադեմիկոս Կ. Ե. Բախտաձեն ար-
ժանացել է ՍՍՀՄ պետական մրցանակի։ Մի խումբ վրացի գիտնականներ ու
կոնստրուկտորներ (ղեկավար՝ Շ. Յա. Կերեսելիձե) աշխարհում առաջին «Սա-
քարթվելո» թեյահավաք մեքենայի համար արժանացել են Լենինյան մրցա-
նակի։

«Վրաստանի կարմրահողերը և մոխրահողերը և դրանց օգտագործումը
մերձարևադարձային կուլտուրաների համար» մենագրության համար Վրաց.
ՍՍՀ ԳԱ թղթակից անդամ Մ. Կ. Դարասելիան արժանացել է ՍՍՀՄ պետական
մրցանակի։ «Վրացական ՍՍՀ ոռոգման սիստեմների շինարարության ինդուս-
տրացումը» աշխատության համար (ղեկավար՝ Գ. Ս. Քոբուլիա) մի խումբ
վրացի մասնագետների շնորհված է Վրացական ՍՍՀ պետական մրցանակ։

Հանրապետության բժիշկ գիտնականները նշանակալի հաջողությունների
են հասել բժշկագիտության այնպիսի բնագավառներում, ինչպիսիք են՝ վիրա-
հատությունը (Գ. Մ. Մուխաձե, Ա. Պ. Ծուլուկիձե, Կ. Դ. Էրիսթավի, Ի. Կ. Պի-
պիա և ուրիշներ), թերապիան (Մ. Դ. Ցինամձղվրիշվիլի, Ն. Ա. Ղիփշիձե և
ուրիշներ), պաթոլոգիական անատոմիան (Վ. Կ. Ժղենտի, Ի. Յա. Թաթիշվիլի
և ուրիշներ), մորֆոլոգիան (Ա. Ն. Նաթիշվիլի և ուրիշներ), մանկաբուժությու-
նը, հոգեբուժությունը (Ա. Դ. Զուրաբաշվիլի և ուրիշներ), ներոլոգիան և այլն։

Երկրի մի շարք առաջատար գիտնականների հետ Լենինյան մրցանակներ են շնորհվել ՍՍՀՄ բժշկական գիտությունների ակադեմիայի ակադեմիկոս Ն. Վ. Անթելավային և նույն ակադեմիայի թղթակից անդամ Ս. Ն. Խեչինաշվիլուն։ ՍՍՀՄ ԲԳԱ-ի թղթակից անդամ Կ. Վ. Չաչավան, պրոֆեսորներ Մ. Գ. Ախալայան և Պ. . Ջափարիձեն, երկրի բժիշկ գիտնականների հետ արժանացել են ՍՍՀՄ պետական մրցանակի։ ՍՍՀՄ պետական մրցանակ է շնորհվել ՍՍՀՄ ԲԳԱ-ի ակադեմիկոս Յու. Յու. Ջանելիձեին, Վ. Մ. Բեխտերևի անվան մրցանակի է արժանացել Վրաց. ՍՍՀ ԳԱ ակադեմիկոս Ա. Դ. Զուրաբաշվիլին։

Վրաստանում սովետական իշխանության հաղթանակից հետո գիտա-հետազոտական աշխատանքը լայն թափ ստացավ հասարակական գիտությունների հիմնական ուղղություններով։ Վրացի գիտնականները խոր ուսումնասիրություններ են կատարել պատմության և հնագիտության (Ի. Ա. Ջավախիշվիլի, Ս. Ն. Ջանաշիա, Ն. Ա. Բերձենիշվիլի, Գ. Ա. Մելիքիշվիլի և ուրիշներ), ազգագրության (Գ. Ս. Չիթայա և ուրիշներ), լեզվաբանության (Ա. Գ. Շանիձե, Գ. Ս. Ախվլեդիանի, Ա. Ս. Չիկոբավա, Վ. Տ. Թոփուրիա և ուրիշներ), վրաց գրականության պատմության (Կ. Ս. Կեկելիձե, Ա. Գ. Բարամիձե և ուրիշներ), դասական բանասիրության (Գ. Ֆ. Ծերեթելի, Ս. Գ. Կաուխչիշվիլի և ուրիշներ), արևելագիտության (Գ. Վ. Ծերեթելի, Ս. Ս. Ջիկիա և ուրիշներ), փիլիսոփայության (Շ. Ի. Նուցուբիձե, Կ. Ս. Բաքրաձե և ուրիշներ), հոգեբանության (Դ. Ն. Ուզնաձե, Ա. Տ. Բոճորիշվիլի, Ռ. Գ. Նաթաձե և ուրիշներ), հնագրագիտության, վրացական արվեստի պատմության (Գ. Ն. Չուբինաշվիլի, Շ. Յա. Ամիրանաշվիլի և ուրիշներ), գրականագիտության (Գ. Ն. Ջիբլաձե և ուրիշներ), էկոնոմիկայի (Ի. Ս. Միքելաձե և ուրիշներ), իրավունքի (Ի. Ս. Դոլիձե և ուրիշներ) ու բազմաթիվ այլ բնագավառներում։

Հանրապետության պատմաբանների մի մեծ կոլեկտիվի համատեղ ջանքերով հրատարակության է պատրաստվում «Ակնարկներ Վրաստանի պատմության» ութ հատորանոց կապիտալ աշխատությունը։ Արդեն հրատարակվել են ակնարկների 1-ին և 5-րդ հատորները։

Վրացի գիտնականները հնագիտական փայլուն հայտնագործություններ են կատարել Վրաստանի տարբեր շրջաններում։ Հայտնաբերված են ո՛չ միայն նյութական մշակույթի, այլև էպիգրաֆիկայի բազմաթիվ թանկարժեք հուշարձաններ։ Ակադեմիկոսներ Ի. Ա. Ջավախիշվիլու, Ս. Ն. Ջանաշիայի և Վրաց. ՍՍՀ ԳԱ ակադեմիկոս Ն. Ա. Բերձենիշվիլու «Վրաստանի պատմություն» կապիտալ աշխատությունը նշված է ՍՍՀՄ պետական մրցանակով։ «Նաիրի—Ուրարտու» և «Ուրարտական սեպագիր արձանագրությունները» ֆունդամենտալ աշխատությունների համար Վրաց. ՍՍՀ ԳԱ ակադեմիկոս Գ. Ա. Մելիքիշվիլին արժանացել է Լենինյան մրցանակի։

Սովետական իշխանության պայմաններում միայն հնարավոր դարձավ իրականացնել «Վրացերենի բացատրական բառարանի» առաջին ութ հատորանոց աշխատության հրատարակումը, որի կազմողները (աշխատանքների ղեկավար՝ Վրաց. ՍՍՀ ԳԱ ակադեմիկոս Ա. Ս. Չիկոբավա, հեղինակներ՝ ակադեմիկոս Գ. Վ. Ծերեթելի, Վրաց. ՍՍՀ ԳԱ ակադեմիկոս Վ. Տ. Թոփուրիա, Վրաց. ՍՍՀ ԳԱ թղթակից անդամ Կ. Վ. Լոմթաթիձե և ուրիշներ) արժանացել են Վրացական ՍՍՀ պետական մրցանակի։

Փիլիսոփայության բնագավառում հրատարակվել են աշխատություններ՝



նվիրված իմացության տեսության արմատական հարցերին, մատերիալիստական դիալեկտիկայի առանձին կատեգորիաների էության բացահայտմանը։

Վրացի հոգեբանների ջանքերով ստեղծված կենսանախադրյալի տեսությունը լայն ճանաչում է գտել։ Անգլերեն թարգմանվել և ԱՄՆ-ում հրատարակվել է Դ. Ն. Ուզնաձեի «Կենսանախադրյալի հոգեբանության փորձնական հիմունքները» մենագրությունը։

Նշանակալի աշխատանք է կատարվել վրացական հոգևոր մշակույթի գրավոր հուշարձանների հայտնագործման և ուսումնասիրման ուղղությամբ։ Հրատարակվել են վրացերեն ձեռագրերի նկարագրությունների 16 հատորներ։

Մեծ թափ է ստացել գիտա-հետազոտական աշխատանքը վրացական բազմադարյա գրականության ուսումնասիրման ուղղությամբ։ Առանձնապես անհրաժեշտ է նշել այնպիսի ֆունդամենտալ աշխատանքներ, ինչպիսիք են՝ «Վրաց գրականության պատմությունը» վեց հատորով (արդեն հրատարակվել են առաջին երեք հատորները), «Վրացական սովետական գրականության պատմության ակնարկները» (ռուսերեն) և այլն։

Վրացական սովետական գրականության զարգացման գործում մեծ ավանդ են ներդրել ակադեմիկոս գրողներ Գ. Թաբիձեն, Գ. Լեոնիձեն, Ի. Գրիշաշվիլին, Կ. Գամսախուրդիան, Ի. Աբաշիձեն, Դ. Շենգելայան և ուրիշներ։

Լայն ճանաչում են ստացել վրացական արվեստի պատմության վերաբերյալ հետազոտությունների արդյունքները։ Բազմաթիվ մենագրություններ են հրապարակվել վրացական հին, միջնադարյան, նոր (XIX դար) և սովետական ճարտարապետության, գեղանկարչության, քանդակագործության, դրվագման, կիրառական արվեստի մասին։ Հարկավոր է նշել մոնումենտալ գեղանկարչության, մանրանկարչության և արծնապակեղենի բնագավառում կատարված աշխատանքները։

Տնտեսական գիտությունների բնագավառում առանձնահատուկ ուշադրություն է նվիրվում տեսական այն պրոբլեմների մշակմանը, որոնք սերտորեն կապված են կոմունիստական հասարակարգի կառուցման խնդիրների հետ։

Վրացի իրավագետները հրատարակել են «Ուսմունք հանցանքի մասին» դասընթացը։ Հրատարակվել են աշխատություններ քաղաքացիական իրավունքի, դատավարական իրավունքի և միջազգային իրավունքի հրատապ պրոբլեմների մասին։

Հրատարակության է պատրաստվում բազմահատոր Վրացական սովետական հանրագիտարանը։

Լենինյան ազգային քաղաքականության հաղթանակի վառ վկայությունն է այն փաստը, որ գիտա-հետազոտական աշխատանքը լայն զարգացում է ստացել նաև Վրաստանի ինքնավար հանրապետություններում ու մարզերում (Աբխազական ԻՍՍՀ, Աջարական ԻՍՍՀ, Հարավ-Օսեթական ԻՄ)։ Այստեղ ստեղծված մասնագիտական գիտական հիմնարկներն ու կոլեկտիվները արդյունավետ աշխատանք են կատարում։

Ֆունդամենտալ գիտական խոշոր հետազոտություններից բացի հանրապետության գիտնականները կատարել են մի շարք աշխատանքներ՝ լուծելու համար գիտա-տեխնիկական առաջընթացի տեմպերի արագացման հետ անմիջականորեն կապված կարևորագույն պրոբլեմները։

Իններորդ հնգամյակի առաջին տարում ժողովրդական տնտեսության տարբեր ճյուղերում ներդրվել են մոտ 30 մշակումներ, որոնք կատարել են

միայն հանրապետության գիտությունների ակադեմիայի հաստատություննե-
րը, իսկ ավարտված աշխատանքների իրացումից վերջին տարիներին ստաց-
ված տնտեսական էֆեկտը կազմել է մի քանի տասնյակ միլիոն ռուբլի։ Ռուս-
թավիի մետալուրգիական կոմբինատում «400» ագրեգատի ավտոմատացման
ու մեքենայացման համար մի խումբ վրացի գիտնականների և արտադրության
մեջ աշխատող տեխնոլոգների (ղեկավարներ՝ Ս. Ա. Շարաձենիձե, Ն. Գ. Գո-
մելաուրի) շնորհված է Լենինյան մրցանակ։
Կարելի է բերել բազմաթիվ օրինակներ, որոնք ցույց են տալիս գիտու-
թյան սերտ կապը արտադրության հետ։ Հետագա զարգացում են ստացել ար-
տադրության հետ կապի այնպիսի ձևերը, ինչպես գիտական հիմնարկների
երկարաժամկետ պայմանագրերը հանրապետության առաջատար արդյունա-
բերական ձեռնարկությունների հետ։ Իբրև օրինակ կարելի է բերել ստեղծա-
գործական համագործակցության պայմանագիրը Վրաց. ՍՍՀ ԳԱ ֆիզիկական
և օրգանական քիմիայի ինստիտուտի ու անօրգանական քիմիայի և էլեկտրա-
քիմիայի ինստիտուտի ու Ռուսթավիի քիմկոմբինատի միջև և Վրաց. ՍՍՀ ԳԱ
մետալուրգիայի ինստիտուտի և Ռուսթավիի մետալուրգիական գործարանի
միջև։

Վրացական գիտությունը զարգանում է մեր երկրի, բոլոր միութենական
հանրապետությունների առաջատար գիտական կենտրոնների հետ սերտ հա-
մագործակցած։ Դրա արտահայտությունն են համատեղ գիտա-հետազոտա-
կան աշխատանքները, գիտական կադրերի պատրաստումը, գիտական նստա-
շրջանների, կոնֆերանսների կազմակերպումը և այլն։

Այսպես, օրինակ, վրացի մաթեմատիկոսները շատ օգտակար գիտական
կապեր են հաստատել Ադրբեջանի, Հայաստանի, Ղազախստանի, Ուզբեկստա-
նի, Տաջիկստանի և այլ հանրապետությունների գիտնականների հետ։ Վրա-
ցի, հայ և ադրբեջանցի գեոֆիզիկոս գիտնականների արդյունավետ համա-
գործակցության շնորհիվ կազմվել է Կովկասի ծանրաչափական քարտեզը։
ՍՍՀՄ պետական գեոբոտանիկական քարտեզի Կովկասյան բլոկը կազմելու
վրա արդյունավետ կերպով աշխատել են Անդրկովկասյան հանրապետու-
թյունների բուսաբանները։ Գնալով ընդլայնվում են Վրաստանի գիտական-
ների ստեղծագործական գիտական կապերը եղբայրական հանրապետություն-
ների գիտնականների հետ։ Դրանք նպաստում են գիտական կարևոր պրոբլեմ-
ների արագ լուծմանը, հետազոտությունների արդյունքների պրակտիկ լայն
օգտագործմանը։

Վերջին տարիներին Վրաստանում ստեղծվել են միջազգային համագոր-
ծակցության բոլոր հիմնական ձևերը։ Հանրապետության գիտա-հետազոտա-
կան հիմնարկներն ու բարձրագույն ուսումնական հաստատությունները ար-
դյունավետ ու սերտ համագործակցում են Գերմանական Դեմոկրատական
Հանրապետության, Չեխոսլովակյան Սոցիալիստական Հանրապետության,
Լեհական Ժողովրդական Հանրապետության, Բուլղարիայի Ժողովրդական
Հանրապետության, Հունգարական Ժողովրդական Հանրապետության գիտա-
կան հիմնարկների հետ։

Վրաստանի մայրաքաղաք Թբիլիսին գիտության գործիչների հանդիպում-
ների կենտրոն է։ Ամեն տարի այստեղ անց են կացվում միջազգային կոնգրես-
ներ ու սիմպոզիումներ, նստաշրջաններ ու կոնֆերանսներ։ Վրացի գիտնա-
կանները ակտիվ մասնակցություն են ցուցաբերում արտասահմանում անց-



կացվող միջազգային միջոցառումներին։ Ստաժավորման և որակի բարձրաց-
ման համար հանրապետության գիտնականների մոտ են գալիս արտասահ-
մանյան երկրների բազմաթիվ ներկայացուցիչներ։

ՍՄԿԿ XXIV համագումարի որոշումներին համապատասխան, հանրա-
պետության գիտնականները իններորդ հնգամյակում նախատեսում են գիտա-
կան հիմնարկների աշխատանքի արդյունավետության հետագա բարձրացում,
ուժերի ու միջոցների կենտրոնացում ժամանակակից գիտության այն կարևո-
րագույն պրոբլեմների վրա, որոնց լուծումը կնպաստի գիտա-տեխնիկական
առաջընթացի տեմպերի արագացմանը։

Վրաստանի գիտնականները, Սովետական Միության բոլոր գիտնականնե-
րի հետ, արժանի ավանդ կներդնեն ՍՄԿԿ XXIV համագումարի որոշումների
հաջող կատարման գործում, համագումար, որը նշեց սովետական գիտության
հետագա զարգացման նոր ու սքանչելի հեռանկարները։

Զ. Տ. ԳՐԻԳՈՐՅԱՆ

Պատմական գիտությունների դոկտոր, պրոֆեսոր

# ՀԱՅ ԵՎ ՌՈՒՍ ԺՈՂՈՎՈՒՐԴՆԵՐԻ ԲԱՐԵԿԱՄՈՒԹՅԱՆ ՊԱՏՄԱԿԱՆ ՄԵԾ ՈՒՂԵՆԻՇԸ

*Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության հաղթանակով և նրա ծնունդ ՍՍՀ Միության կազմավորմամբ բոլորովին նոր, մեծ ու փառահեղ դարագլուխ բացվեց հայ, ռուս ու սովետական բոլոր ժողովուրդների բարեկամական հարաբերությունների պատմության մեջ։*

*Նպատակ չունենալով ներկա հոդվածում հատուկ քննության առարկա դարձնել և սպառիչ խոսք ասել հայ և ռուս ժողովուրդների հարաբերությունների պատմության պարբերացման մասին, այնուամենայնիվ, փորձենք համառոտ ու ընդհանուր գծերով բնութագրել նրանց մերձեցման և բարեկամության անցած ուղու գեթ հիմնական ու գլխավոր շրջափուլերը՝ դրանց բնորոշ գծերով։ Դա մեզ կօգնի ցույց տալու, որ թեպետ դարերի խորքից են գալիս հայ և ռուս ժողովուրդների բարեկամական հարաբերությունները և իրենց զարգացման բոլոր փուլերում բարերար խոշոր նշանակություն են ունեցել հայ ժողովրդի համար, սակայն Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության հաղթանակով և ՍՍՀՄ կազմավորումով այդ հարաբերություններն ստացան բոլորովին նոր էություն, նոր որակ և պատմական վիթխարի դեր խաղացին հայ ժողովրդի վերածննդի, նրա հասարակական-քաղաքական, տնտեսական և մշակութային կյանքի առաջընթացի համար։*

* * *

*Հայ և ռուս ժողովուրդների բարեկամական հարաբերությունների պատմության առաջին շրջափուլն ընդգրկում է հին ռուսական՝ Կիևյան պետության ժամանակաշրջանը։ Այդ շրջանում է, որ հայերի և ռուսների միջև սկզբնավորվում են տնտեսական, մշակութային և ռազմական կապեր։*

*XI—XII դարերում Կիևում և իշխանության մի շարք այլ կարևոր կենտրոններում հիմնադրվում են բավականին բազմամարդ հայաբնակ գաղթավայրեր։ Այնտեղ մշտական բնակություն են հաստատում վաճառականներ, զինվորականներ, արհեստավորներ, մտավորականներ և այլ մասնագիտությունների տեր հայեր։ Հայաբնակ այդ գաղթավայրերը հյուրընկալ ապաստան դարձան*



*Հայաստանը ասպատակող նվաճողների ճիրաններից փրկված շատ հայերի համար, նրանք միաժամանակ խոշոր դեր խաղացին հայ-ռուսական կապերի հաստատման ու զարգացման գործում։*

*Այսպիսով, Կիևյան պետության շրջափուլը կարելի է բնութագրել որպես հայ և ռուս ժողովուրդների փոխադարձ ճանաչման և բարեկամական հարաբերությունների սկզբնավորման ժամանակաշրջան։*

*Հայ-ռուսական հարաբերությունների պատմության* երկրորդ գլխավոր *շրջափուլը, մեր կարծիքով, ընդգրկում է ռուսական ազգային պետության ձևավորումից մինչև XVIII դարի վերջը։ Այս շրջափուլը, որ իր հերթին կարելի է բաժանել մի քանի շրջանի, համընկնում է պատմականորեն հայ ժողովրդի համար ստեղծված այն ծանր ժամանակաշրջանի հետ, երբ բռնապետական Թուրքիան և Պարսկաստանը ո՛չ միայն զավթել ու իրար մեջ բաժանել էին հինավուրց Հայաստանը, այլև հայ ժողովրդի նկատմամբ վարած զանգվածային բռնագաղթերի, ձուլման և բնաջնջման անգութ քաղաքականությունը լուրջ վտանգ էր ստեղծել ժողովրդի նույնիսկ ֆիզիկական գոյատևման համար։*

*Հայ ժողովուրդն ազատագրական երկարատև պայքարի հարուստ փորձով համոզվեց, որ Ռուսաստանն է այն միակ իրական ուժը, որի օգնությամբ կարող է թոթափել թուրքական և պարսկական ստրկական լուծը։ Ուստի XVII դարի վերջի և XVIII դարի հայ ազատագրական շարժման առաջադեմ գործիչները՝ Ռուսաստանի հետ մտնելով քաղաքական բանակցությունների մեջ, հայ ժողովրդի ազատագրության հույսը հաստատորեն կապեցին նրա հետ։*

*Ցարիզմը, իր հերթին, նպատակ ունենալով ամրանալ Անդրկովկասում և այն օգտագործել իր ռազմա-քաղաքական շահերի համար, ձգտում էր այնտեղ տապալել թուրքական ու պարսկական տիրապետությունը և տարածել իր ազդեցությունը։*

*Տարբեր նպատակներից բխող, բայց շահերի այսպիսի օբյեկտիվ համընկնումը նպաստեց XVII դարի վերջերին և XVIII դարի սկզբներին հայ ժողովրդի ռուսական օրիենտացիայի ձևավորմանը, որը բարերար նշանակություն ունեցավ հայ ազատագրական շարժման հետագա առաջընթացի համար։*

*Այսպիսով, հայ և ռուսական հարաբերությունների պատմության երկրորդ շրջափուլի ամենաբնորոշ գծեր դարձան հայ ժողովրդի ռուսական օրիենտացիայի ձևավորումը և դրա հիման վրա հայ ազատագրական շարժման բուռն վերընթացը։*

*Արևելյան Հայաստանի Ռուսաստանին միացումով* նոր *շրջափուլ բացվեց հայ և ռուս ժողովուրդների պատմական կապերի ու դարավոր բարեկամության մեջ։ Արևելյան Հայաստանի միացումը Ռուսաստանին, որն իրականացավ 1804—1813, 1826—1828 թթ. ռուս-պարսկական և 1806—1812, 1828—1829 թթ. ռուս-թուրքական պատերազմներում Ռուսաստանի տարած հաղթանակների շնորհիվ, օբյեկտիվորեն առաջադիմական մեծ նշանակություն ունեցավ։ Արևելահայերը փրկվեցին բնաջնջվելու վերահաս վտանգից։ Իսկ սկսած 1828 թվականից, Պարսկաստանից, ապա և Թուրքիայից պարբերաբար մեծ թվով հայեր գաղթեցին Արևելյան Հայաստան և իրենց ուժերը նվիրաբերեցին հայ ժողովրդի տնտեսական, հոգևոր ու քաղաքական կյանքի զարգացմանը։ Միայն Թուրքմենչայի (1828 թ.) և Ադրիանապոլսի (1829 թ.) պայմանագրերի կնքումից հետո ընկած երեք տարիներին (1828—1831 թթ.) Պարսկա-*

տանից և Թուրքիայից Արևելյան Հայաստան և Կովկասի այլ մարզերը գաղթեցին մոտ 140 հազար հայեր։

Այդ զանգվածային գաղթի հետևանքով հիմնովին փոխվեց Արևելյան Հայաստանի բնակչության ազգային կազմը։ Եթե Հայկական մարզի տերիտորիայում, պարսիկ խաների գործադրած բռնությունների ու տեղահանումների պատճառով հայերը նվազել և 1827 թ. կազմում էին բնակչության ընդամենը մեկ քառորդը, ապա 1831 թ. կազմեցին կեսից ավելին, այնուհետև՝ բացարձակ մեծամասնություն։ Արևելյան Հայաստանը դարձավ հայ ժողովրդի համախմբման ու ազգային կոնսոլիդացիայի օջախը։ Այստեղ վերացվեց ֆեոդալական մասնատվածությունը, անիշխանությունը, մաքսային արգելափակումները, դադարեցին հարատև ավերիչ պատերազմները։ Բնակչության համար ապահովվեց անձի ու սեփականության անձեռնմխելիության իրավունք, իսկ երկրամասի, մեծ մասամբ ֆեոդալա-նահապետական հետամնացության մեջ սուզված տնտեսությունը ներգրավվեց հետզհետե զարգացող համառուսաստանյան տնտեսական կյանքի ընդհանուր ոլորտը և նպաստավոր պայմաններ ստեղծվեցին Հայաստանում արտադրաուժերի վերընթացի համար։

Ռուսաստանում զարգացող նոր, դեմոկրատական կուլտուրան-գրականությունը, արվեստը, գիտությունը, հեղափոխական-դեմոկրատական միտքը խոշոր բարերար ներգործություն ունեցան հայ նոր մշակույթի զարգացման համար։

Այսպիսով, Հայաստանի օրինակով լիովին հաստատվում է Ֆ. Էնգելսի 1851 թ. արտահայտած այն միտքը, թե «...Ռուսաստանն իրոք առաջադիմական դեր է կատարում Արևելքի նկատմամբ...» (К. Маркс и Ф. Энгельс, Соч., т. 27, стр. 241)։

Այս ամենը միացման օբյեկտիվ արգասիքներն էին, մինչդեռ, ինչպես ազգային մյուս շրջաններում, այնպես էլ Արևելյան Հայաստանում ցարիզմի հետապնդած նպատակները և վարած քաղաքականությունը բոլորովին այլ էին։ Արևելյան Հայաստանը Ռուսաստանին միացվելուն պես ցարիզմն այնտեղ կիրառեց ազգային-գաղութային քաղաքականություն։ Հակառակ իր տված երբեմնի խոստումներին, ցարիզմը վճռականորեն արգելակում է ո՛չ միայն ինքնուրույն, այլև ներքին ինքնավար իրավունքներով հայկական պետականության անգամ ամենաաննշան տարրերի երևան գալու հնարավորությունները։ Երկրամասը լիովին ենթարկում է իր վարչակարգին՝ մտցնելով գաղութային կառավարման ռազմա-բյուրոկրատական սիստեմ։ Ցարիզմը ձգտում էր Արևելյան Հայաստանը պահել հետամնաց վիճակում և բնական հարստությունների գիշատիչ շահագործմամբ, հարկային-ֆինանսական կեղեքիչ քաղաքականությամբ ենթարկել տնտեսական անխնա հարստահարման։

Ի պատասխան ցարիզմի ազգային-գաղութային բռնությունների, սկսած XIX դարի 30-ական թվականներից, հայ աշխատավոր զանգվածները համառ և հարատև պայքար են ծավալում՝ հասնելու ազգային ու սոցիալական ազատագրության։ 50-ական թվականների վերջերից, 60-ականի սկզբներից այդ պայքարի գլուխ կանգնեցին հայ հեղափոխական դեմոկրատները՝ Մ. Նալբանդյանի գլխավորությամբ։ Նրանք հայ ժողովրդի ազգային ու սոցիալական ազատագրական պայքարը սերտորեն միաձուլեցին Ռուսաստանում ցարիզմի ու ճորտատիրության դեմ մղվող հեղափոխական-դեմոկրատական շարժման



հետ՝ նշանաբան ունենալով «Ռուսիո ազատությունը, ընդհանուր մարդկության ազատության վերաբերությամբ, մեծ խորհուրդ ունի» (Մ. Նալբանդյան, Լժ, հ. 3, 1940, էջ 61)։

Հայ հեղափոխական-դեմոկրատական շարժման և ռուսական հեղափոխական-դեմոկրատական շարժմանը միաձուլմամբ հայ և ռուս ժողովուրդների բարեկամական հարաբերությունները թևակոխեցին իրենց հեղափոխական-դեմոկրատական շրջափուլը։ Այն նշանավորվեց նրանով, որ հայ աշխատավորական զանգվածներն իրենց ուժերը միավորելով ռուսական հեղափոխական-դեմոկրատական շարժման հետ, ձգտում էին թոթափել ցարիզմի ու սուլթանիզմի լուծը, միավորել հայ ժողովրդի բռնի մասնատված երկու հատվածները և հասնել ազգային ու սոցիալական ազատագրության։

Հայ և ռուսական հարաբերությունների պատմությունը XIX դարի 90-ական թվականների երկրորդ կեսից թևակոխեց նոր շրջափուլ, որը զուգադիպեց Ռուսաստանի հեղափոխական ազատագրական շարժումների պրոլետարական էտապին։ Այս շրջափուլում, թեպետ հայ բուրժուազիան ստեղծելով իր քաղաքական կազմակերպություններն ու կուսակցությունները, փորձում էր իրեն հռչակել «ազգի առաջնորդ», սակայն նա իր հասարակական-քաղաքական էությամբ ու հայ իրականության մեջ գրաված տեղով այդպիսի ուժ չդարձավ։ Հայ ժողովրդի առաջնորդի, նրա ազատագրական պայքարի դրոշակակրի դերը ստանձնեց հայ պրոլետարիատը և իր ժողովրդի ազատագրության հաղթական ելքը, բոլշևիկների կուսակցության գլխավորությամբ, սերտորեն միահյուսեց ռուսական բանվոր դասակարգի հեղափոխական պայքարի հետ։ Հայ աշխատավոր ժողովուրդն իր ազգային ու սոցիալական ազատագրական պայքարում՝ հանձին ռուսական բանվոր դասակարգի, գտավ իր հզոր և հուսալի դաշնակցին։

Ռուսաստանի հեղափոխական ազատագրական շարժումների պրոլետարական էտապում հայ և ռուս ժողովուրդների բարեկամական հարաբերությունները խարսխվեցին նրանց պրոլետարիատի դասակարգային համերաշխության, շահերի ու նպատակների ընդհանրության, հեղափոխական գործունեության միասնության հաստատուն հիմքի վրա։

XIX դարի վերջին ու XX դարի սկզբին Ռուսաստանում բորբոքված դասակարգային պայքարի թեժ գոտեմարտերում դրվեց ռուս, հայ և Ռուսաստանի աշխատավոր ժողովուրդների հեղափոխական ուժերի միավորման և ռուսական բանվոր դասակարգի գլխավորությամբ համառուսաստանյան միասնական հեղափոխական ճակատի ստեղծման հիմքը։ Նրա գլխավոր խնդիրը դարձավ ցարիզմի, բուրժուազիայի ու կալվածատերերի տիրապետության տապալումը, Ռուսաստանի ժողովուրդների ազգային և սոցիալական ազատագրությունը, սոցիալիստական հեղափոխության հաղթանակը։

Համառուսաստանյան հեղափոխական շարժման միասնական ճակատի կազմակերպիչն ու ղեկավարը դարձավ բոլշևիկների կուսակցությունը, որի հիմնադիր, ապա և ղեկավար միջուկում կային հայ ականավոր շատ մարքսիստներ։

Ռուսական երեք հեղափոխությունների հերոսամարտերում է՛լ ավելի կոփվեցին ու ամրապնդվեցին հայ, ռուս ու Ռուսաստանի բոլոր ժողովուրդների հեղափոխական, ինտերնացիոնալ կապերը, նրանց դասակարգային համերաշ-

խությունն ու բարեկամական հարաբերությունները։ Այս շրջափուլն ավարտվեց ցարիզմի, բուրժուազիայի ու կալվածատերերի տիրապետության կործանումով։

Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության հաղթանակով սկիզբ դրվեց հայ և ռուս ժողովուրդների կապերի ու բարեկամական հարաբերությունների պատմության **ամենանշանավոր շրջափուլին:**

Հետհոկտեմբերյան շրջափուլը հարուստ է շրջադարձային նշանակություն ունեցող իրադարձություններով, ներքին ու միջազգային հարաբերությունների բարդ ընթացքով, ժողովուրդների հարաբերություններում կատարված որակական փոփոխություններով, ուստի, առավել հստակ ու ճիշտ կլինի, այս շրջափուլն իր հերթին բաժանել երեք շրջանի։ **Առաջին շրջան՝ 1917—1920 թթ.,** երբ Հայաստանի հեղափոխական ուժերը Սովետական Ռուսաստանի օգնությամբ տապալեցին դաշնակների տիրապետությունը և հաստատեցին սովետական կարգեր։

**Երկրորդ շրջան՝ 1920 թ. նոյեմբեր, 1922 թ. դեկտեմբեր:** Այս շրջանում նորաստեղծ Սովետական Հայաստանի և ռուսաստանյան ֆեդերացիայի հարաբերությունները կառուցվում են նրանց միջև կնքված պայմանագրերի ու համաձայնագրերի հիման վրա, որպես միևնույն հասարակական-քաղաքական սիստեմներ ունեցող սուվերեն պետությունների։ Կնքվում են ռազմա-քաղաքական, տնտեսական և դիվանագիտական համաձայնագրեր, որպեսզի համատեղ ջանքերով ջախջախեն ներքին հակահեղափոխությունը և օտարերկրյա ինտերվենտներին, դիվանագիտության մարզում միասնորեն հանդես գան իմպերիալիստական պետությունների ընդհանուր ճակատի դեմ, ինչպես նաև կազմակերպեն փոխադարձ օգնություն՝ վերականգնելու երկրի քայքայված տնտեսությունը։

**Երրորդ շրջան,** երբ Հայկական ՍՍՀ 1922 թ. դեկտեմբերին՝ Անդրֆեդերացիայի կազմում, իսկ 1936 թ. որպես միութենական ինքնուրույն հանրապետություն մտավ ՍՍՀ Միության մեջ, դառնալով մեկ միասնական, բազմազգ մեծ պետության իրավահավասար ու իրավազոր անդամը։

Հետհոկտեմբերյան առաջին շրջանը (1917—1920 թթ.) հագեցած էր այնպիսի բարդ իրադարձություններով, որոնց ելքով կանխորոշվելու էր հայ ժողովրդի ճակատագիրը։ Առաջին համաշխարհային պատերազմի տարիներին հայ ժողովուրդը հասել էր կործանման ու ֆիզիկական բնաջնջման եզրին։ Սուլթանական կառավարության վարած գենոցիդի քաղաքականության զոհ դարձան մոտ մեկ և կես միլիոն արևմտահայեր։

Թուրքական կառավարող շրջաններն իրագործելով արևմտահայերի զանգվածային ջարդը, ձգտում էին նույնը կատարել նաև արևելահայերի նկատմամբ։ Այդ նպատակով թուրքական բանակները 1918 և 1920 թթ. ներխուժեցին Արևելյան Հայաստան։ Նորից կողոպտվեցին և ավերվեցին հայկական գյուղերն ու քաղաքները, կրկին առատորեն հոսեց հայերի արյունը։ Հայ ժողովրդի առջև ծառացավ «լինել, թե՞ չլինել» երկընտրանքը։

Ամենքի կողմից լքված, տառապյալ հայ ժողովրդի ճակատագրի այդ տագնապալից պահին միակը երիտասարդ Սովետական Ռուսաստանի կառավարությունն էր, որ կատարելով իր ինտերնացիոնալ, հեղափոխական պարտքը, փրկության ձեռք մեկնեց և վճռական դեր խաղաց՝ հաղթանակով պսակելու նրա ազատագրական պայքարը։



1917 թ. նոյեմբերի 2(15)-ին «Ռուսաստանի ժողովուրդների իրավունքների դեկլարացիա»-ով և 1918 թ. հունվարի 3(16)-ին «Աշխատավոր ու շահագործվող ժողովուրդների իրավունքների դեկլարացիա»-ով Սովետական Ռուսաստանի կառավարությունը ճանաչեց Ռուսաստանի ժողովուրդների իրավահավասարության, սուվերենության, նրանց ազատ ինքնորոշման, ընդհուպ մինչև անջատման և ինքնուրույն պետության կազմման իրավունքը։ Այս ամենը, անտարակույս, լիովին վերաբերում էր նաև Ռուսաստանին միացված Արևելյան Հայաստանին։

Սովետական Ռուսաստանի կառավարությունը, միաժամանակ ելք ու միջոցներ էր որոնում լուծելու նաև Արևմտյան Հայաստանի հարցը։ Նա 1917 թ. դեկտեմբերի 29-ին ընդունեց «Թուրքահայաստանի մասին» նշանավոր դեկրետը, որով ի լուր ամբողջ աշխարհի, պաշտոնապես ճանաչում է առաջին համաշխարհային պատերազմի ժամանակ ռուսական զորքերի կողմից գրավված Արևմտյան Հայաստանի ինքնորոշման իրավունքը։

Այսպիսով, կարծես թե ի վերջո, պետք է որ դրականորեն լուծվեր ագրեսիվ մեծ տերությունների կողմից շատ անգամ արյունոտ զոհասեղանին դրված արևմտահայության ճակատագիրը։ Սակայն բախտը նորից զլացավ ժպտալ արյունաքամ եղած, հոշոտված ու խոշտանգված հայ ժողովրդին։

Չնայած Սովետական կառավարության գործադրած բոլոր ջանքերին, ստեղծված ներքին ու արտաքին մի շարք աննպաստ պայմանների հետևանքով, դժբախտաբար, անկատար մնաց «Թուրքահայաստանի մասին» դեկրետը։

Հակառակ հայ ժողովրդի նկատմամբ Սովետական Ռուսաստանի վարած այս ազնիվ ու արդարամիտ քաղաքականությանը, Հայաստանում իշխանությունը զավթած դաշնակները նրա նկատմամբ կատաղի թշնամական դիրք բռնեցին։ Նրանք վրաց մենշևիկների և ադրբեջանական մուսավաթականների հետ միացած՝ Անդրկովկասն անջատեցին Սովետական Ռուսաստանից և գինվորագրվեցին ցարական սպիտակգվարդիականներին ու արևմտյան իմպերիալիստներին։

Կայզերական Գերմանիայի դաշնակից սուլթանական Թուրքիան, օգտվելով Սովետական Ռուսաստանի համար ստեղծված միջազգային դժվարին կացությունից և այն բանից, որ անդրկովկասյան հակահեղափոխական իշխանությունները երկրամասն անջատել էին Ռուսաստանից, 1918 թ. գարնանը սկսեց իր բանակները շարժել դեպի Արևելյան Հայաստան։ 1918 թ. ապրիլին թուրքական բանակները գրավեցին Կարսը, մայիսին՝ Ալեքսանդրապոլը և ուղղություն վերցրին դեպի Երևան։

Հայ ժողովրդի համար ստեղծված այդ աղետալի օրերին դարձյալ միայն Սովետական Ռուսաստանի կառավարությունն էր, որ բողոքի վճռական ձայն բարձրացրեց թուրքական բանակների անօրինակ բարբարոսությունների դեմ։ 1918 թ. ապրիլի 1-ին սովետական հանրապետության արտաքին գործերի ժողովրդական կոմիսար Գ. Չիչերինը բողոքի նոտա հղեց Թուրքիայի դաշնակից Գերմանիայի կառավարությանը, որտեղ ասված է. «Թուրքական զորքերը շարժվում են Բաթումի, Կարսի և Արդահանի վրա՝ ավերելով երկիրը և ոչնչացնելով գյուղացի բնակչությանը։ Հայերի ապագա վիճակի պատասխանատվությունն ընկնում է Գերմանիայի վրա, քանի որ նրա պահանջով էր, որ ռուսական զորքերը դուրս բերվեցին հայկական շրջաններից»[1]։

[1] ՍՄԿԿ ԿԿ կից ՄԼԻ հայկական ֆիլիալի արխիվ, ֆ. 33, գ. 718։

Սովետական Ռուսաստանի կառավարության վճռական դիրքի և հայ ժողովրդական զանգվածների նախաձեռնությամբ մայիսին Սարդարապատում, Բաշ Ապարանում և Փամբակի Ղարաքիլիսայում թուրքական բանակների դեմ մղված հերոսամարտերը սանձահարեցին թուրք ջարդարարներին և ձախողեցին Երևանը գրավելու նրանց պլանները, իսկ համաշխարհային պատերազմում գերմանական բլոկի կրած պարտության հետևանքով, 1918 թ. նոյեմբերին թուրքական բանակները հարկադրված եղան ետ քաշվել 1914 թ. սահմանագիծը։

1920 թ. գարնանից թուրքական բանակները նախապատրաստվում էին նորից արշավել Արևելյան Հայաստան։ Արևելահայության գլխին դարձյալ կախվեց թուրքական արյունոտ յաթաղանի սպառնալիքը։ Հայ ժողովրդի համար ստեղծված այս տագնապալի օրերին, երբ դաշնակ դիվանագետների և տարբեր «պատվիրակությունների» երեսին ճռնչյունով գոցվում էին արևմտյան տերությունների մեծ ու փոքր դիվանագետների առանձնասենյակների կաշվեպատ դռները, զգացնել տալով, որ իրենց «տերերը» «ժամանակ չունեն» զբաղվելու «հայկական դատով», Սովետական Ռուսաստանի կառավարությունը պատրաստակամություն հայտնեց հայկական հանրապետության հետ բանակցություններ սկսել՝ հաշտություն կնքելու և դիվանագիտական կապեր հաստատելու համար։ Երկար դիմադրելուց և ձգձգելուց հետո միայն, 1920 թ. ապրիլի վերջին, Մոսկվա ժամանեց դաշնակցական կառավարության պատվիրակությունը (Լ. Շանթ, Հ. Տերտերյան, Լ. Զարաֆյան)՝ առաջարկված բանակցություններն սկսելու նպատակով։ Լ. Շանթի գլխավորած պատվիրակության հետ Սովետական Ռուսաստանի կառավարության անունից բանակցությունները վարում էին հանրապետության արտաքին գործերի ժողովրդական կոմիսար Գ. Չիչերինը և նրա տեղակալ Լ. Կարախանը։ Սովետական պատվիրակությունը բանակցությունները վարում էր անկեղծ բարեկամական մթնոլորտում, արտահայտելով իր կառավարության հոգատարությունը հայ ժողովրդի նկատմամբ։ Հակառակ սովետական կառավարության պատվիրակության բացառիկ բարյացակամության, բանակցությունների ամբողջ ընթացքը ցույց տվեց, որ Շանթի պատվիրակությունը, կատարելով իր կառավարության ցուցումը, ցանկություն չունի երկկողմանի շահավետ հաշտության պայմանագիր կնքել։ Դաշնակները, հանձին Շանթի պատվիրակության վարքագծի, չէին թաքցնում, որ իրենց անհրաժեշտ է Սովետական Ռուսաստանի հետ կնքել այնպիսի հաշտություն, որն օգտագործեն «բոլշևիզմից պաշտպանվելու» համար՝ հավատարիմ մնալով Անտանտի իմպերիալիստներին։ Հակառակ դրան, սովետական պատվիրակությունը, մտահոգված հայ ժողովրդի բախտով, անում էր ամեն ինչ, որպեսզի այնպիսի հաշտություն կնքվի, որ Հայաստանի կառավարությունը սահմանազատվի Անտանտից և դադարի նրա ձեռքին կույր գործիք լինելուց։ Գ. Չիչերինը հիմնավոր փաստերով ցույց է տալիս, որ դաշնակների արևմտյան կողմնորոշումը միշտ էլ հայ ժողովրդի համար եղել է կործանարար, այժմ էլ այն հղի է նոր արհավիրքներով, ուստի, չպետք է հավատալ Անտանտի պետությունների ղեկավարների կեղծ «հայասիրության» ու սին խոստումներին։ Գ. Չիչերինը և Լ. Կարախանը Շանթի պատվիրակությանը հավաստիացնում էին, որ եթե Սովետական Ռուսաստանի հետ անհապաղ կնքեն հաշտության պայմանագիր և հաստատեն դիվանագիտական նոր-



մալ հարաբերություններ, ապա սովետական կառավարությունը իրավական հիմք կունենա ազատ հանդես գալու որպես միջնորդ՝ խաղաղ ճանապարհով լուծելու հայ-թուրքական սրված հարաբերությունները և հայ ժողովրդի համար նպաստավոր պայմաններով լուծելու հայ-թուրքական պետական սահմանագծի հարցը։

Սովետական կառավարության նման դիրքը հակասում էր Անտանտի շահերին, ուստի, արևմտյան իմպերիալիստական պետությունների թելադրանքով Շանթի պատվիրակությունը ձախողում է Մոսկվայի բանակցությունները և վերադառնում Երևան։

Եթե դաշնակները հրաժարվեին սովետների նկատմամբ ունեցած իրենց թշնամական դիրքից և 1920 թ. ամռանը Մոսկվայում Սովետական Ռուսաստանի կառավարության հետ կնքեին հաշտության պայմանագիր ու հաստատեին նորմալ դիվանագիտական հարաբերություններ, ապա, անկասկած, թուրքական բանակները 1920 թ. սեպտեմբերին չէին համարձակվի արշավել Արևելյան Հայաստան։ Հետևապես հայ ժողովուրդը չէր տա այնքան մեծ մարդկային զոհեր, որ տվեց այդ աղետաբեր արշավանքի հետևանքով։ Եվ, վերջապես, այդ դեպքում այլ կերպ կլուծվեր նաև հայ-թուրքական պետական սահմանագծի հարցը։

Սովետական Ռուսաստանի նկատմամբ բոլորովին այլ դիրքորոշում ունեին հայ աշխատավոր զանգվածները։ Նրանք կտրականորեն մերժեցին դաշնակ կառավարիչների՝ հայ ժողովրդի համար կործանարար, հակասովետական, հակառուսական ռեակցիոն քաղաքականությունը և վճռականորեն դուրս եկան Անդրկովկասը Սովետական Ռուսաստանից անջատման դաշնակ-մենշևիկյան-մուսավաթական հակահեղափոխական գործարքի դեմ։ Հայ, վրացի, ադրբեջանցի բանվորները, գյուղացիները, զինվորներն իրենց ժողովներում ու միտինգներում բողոքի ցասկոտ բանաձևեր ընդունեցին անդրկովկասյան իշխանությունների կողմից երկրամասը Ռուսաստանից անջատելու խելացնոր արարքի դեմ։ «Մենք չենք ցանկանում բաժանվել Ռուսաստանից,— ասված է հայ և անդրկովկասյան մյուս ազգություններին պատկանող զինվորների ժողովներից մեկի բանաձևում,— մենք ուզում ենք ապրել ռուսների հետ, ինչպես առաջ ենք ապրել... չենք ճանաչում բուրժուական անդրկովկասյան կոմիսարիատը, որը մեզ բաժանում է ազատ Ռուսաստանից։ Մենք ընդունում ենք միայն ժողովրդական կոմիսարների սովետի իշխանությունը» (տե՛ս «Кавказский рабочий», 21 հունվարի, 1918)։ Նույնպիսի բանաձևեր են ընդունվում նաև Հայաստանի բանվորների, աշխատավոր գյուղացիների և զինվորների բազմաթիվ ժողովներում ու միտինգներում[1]։

Չնայած Հայաստանում մոլեգնում էին դաշնակների վայրագ բռնությունները, աշխատավորական մասսաները՝ բոլշևիկների գլխավորությամբ, իրենց միահամուռ համերաշխությունն էին արտահայտում սոցիալիստական հեղափոխության դրոշակակիր ռուսական պրոլետարիատի նկատմամբ և գնալով ուժեղացնում հեղափոխական գրոհը՝ Հայաստանում սովետական կարգերի հաստատման համար։

1 Տե՛ս ՍՄԿԿ ԿԿ կից ՄԼԻ հայկական ֆիլիալի արխիվ, ֆ. 33, գ. 631, 635, 665։ Նույնը տե՛ս Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ ռևոլյուցիան և սովետական իշխանության հաղթանակը Հայաստանում, փաստաթղթերի և նյութերի ժողովածու, Երևան, 1960, փաստաթղթեր №№ 77, 78, 79, 80, 82, 83, 85, 90, 91, 94, 97, 99, 122։

Հայաստանում աննախընթաց թափով հասունացող հեղափոխական իրադրությունն ավարտվեց 1920 թ. նոյեմբերին, զինված ապստամբության բռնկումով։ 1920 թվականի նոյեմբերի 29-ին Հայաստանի ռազմահեղափոխական կոմիտեն Հայաստանը հռչակեց սովետական։

Հայաստանի ռազմա-հեղափոխական կոմիտեն, Քարվանսարայից շարժվելով դեպի Երևան, նոյեմբերի 30-ին Վ. Ի. Լենինին գրում է. «Մենք կազմելով Հեղկոմ, առաջ ենք շարժվում այն կատարյալ հույսով, որ Արևելքի ճնշված ժողովուրդների ազատարար՝ Սոցիալիստական մեծ Ռուսաստանի հերոսական կարմիր բանակը մեզ իրական օգնություն ցույց կտա այս դժվարին պայքարում։

Հայաստանի բոլոր բանվորների ու գյուղացիների անունից մենք խնդրում ենք ժողկոմսովետին ցույց տալ այդ օգնությունը»[1]։

Սովետական Ռուսաստանի կառավարությունը, Հայաստանի Հեղկոմի խնդրի կատարումը համարելով իր հեղափոխական ինտերնացիոնալ պարտքը, անհապաղ XI կարմիր բանակին օգնության ուղարկեց ապստամբության դրոշ պարզած Հայաստանի աշխատավորությանը։

Այսպիսով, 1917—1920 թթ. հայ-ռուսական հարաբերություններում ամենանշանավոր իրադարձությունն այն էր, որ Հայաստանի հեղափոխական ուժերը ռուսաստանյան ֆեդերացիայի օգնությամբ տապալեցին ժողովրդի համար ատելի դաշնակների տիրապետությունը և հաստատեցին սովետական կարգեր։

Սովետական կարգերի հաստատումից հետո՝ 1920—1922 թթ., երբ հայ և ռուս ժողովուրդների հետհոկտեմբերյան հարաբերություններն ապրում են իրենց զարգացման երկրորդ շրջանը, Հայաստանի դրությունը շարունակվում էր մնալ ճգնաժամային։

Թուրքական բանակը Կարաբեքիր փաշայի հրամանատարությամբ մերժելով Սովետական Հայաստանի կառավարության պահանջը՝ հեռանալ Ալեքսանդրապոլից ու նրա գավառից, շարունակում էր կատարել բազում չարագործություններ և սպասում հարմար առիթի՝ վերսկսելու պատերազմական գործողությունները։ Իսկ դաշնակ պարագլուխները սկսեցին փետրվարյան ավանտյուրան՝ Թուրքական սվինների օգնությամբ արյան մեջ խեղդելու երիտասարդ սովետական իշխանությունը։

Ստեղծված այսպիսի դժվարին ու ծանր պայմաններում էր, որ հայ ժողովրդին դարձյալ օգնության ձեռք մեկնեց Սովետական Ռուսաստանի կառավարությունը։ Նա դիվանագիտական մի շարք միջոցառումներից հետո, 1921 թ. ապրիլի 6-ին, Թուրքական կառավարությունից կտրականորեն պահանջեց իր զորքերը դուրս բերել Ալեքսանդրապոլից, նախազգուշացնելով, որ «...Թուրքիայի և Սովետական Հայաստանի միջև պատերազմը կնշանակի պատերազմ Թուրքիայի և Սովետական Ռուսաստանի միջև» (տե՛ս Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ ռևոլյուցիան և սովետական իշխանության հաղթանակը Հայաստանում, էջ 511)։ Այս վճռական պահանջին հաջորդում է XI Կարմիր բանակի հրամանատարության կտրուկ վերջնագիրը Կարաբեքիր փաշային՝ անհապաղ հեռանալու Ալեքսանդրապոլից, նրան զգացնել տալով, որ հակառակ դեպքում այդ կկատարվի զենքի միջոցով։ Դրանից հետո միայն, 1920 թ ապրիլի 20-ին Թուրքական բանակը հեռացավ Ալեքսանդրապոլից։

---

[1] Տե՛ս ՍՄԿԿ ԿԿ կից ՄԼԻ հայկական ֆիլիալի արխիվ, ֆ. 4033, գ. 985։



XI կարմիր բանակը նաև գործուն օգնություն ցույց տվեց Սովետական Հայաստանի զինված ուժերին՝ ճնշելու դաշնակների փետրվարյան ավանտյուրան և հաղթանակով ավարտելու քաղաքացիական կռիվները։

Այսպիսով, Սովետական Ռուսաստանի ռազմական և դիվանագիտական ջանքերի շնորհիվ էր, որ սանձահարվեցին Թուրք զավթիչները, ճնշվեց դաշնակների փետրվարյան ավանտյուրան, և Հայաստանում ամրապնդվեցին սովետական կարգերը։

Մեծ բանաստեղծ Ավ. Իսահակյանը, արտահայտելով իր ժողովրդի մտքերն ու զգացմունքը Սովետական Ռուսաստանի Կարմիր բանակի կողմից հայ ժողովրդին ցույց տրված օգնության մեծագույն նշանակության մասին, 1924 թ. գրել է. «Հայաստանի սահմանագլխին կանգնած մեկ ռուս կարմիր բանակայինն արժե 1000 վիլսոններ ու ազգերի լիգա, 1000 մակդոնալդներ» («Коммунист», 30 հունվարի, 1963 թ.)։

1926 թ., կրկին անդրադառնալով այդ հարցին, նա գրել է. «...եթե ռուսները 1921 թվականին չհասնեին, հայերը կոչնչանային» (նույն տեղը)։

Ռազմա-քաղաքական և դիվանագիտական օգնության հետ մեկտեղ անգնահատելի էր 1920—1922 թթ. Հայաստանին՝ Սովետական Ռուսաստանի ցույց տված տնտեսական օգնությունը։ Դրա շնորհիվ Հայաստանի բնակչությունը փրկվեց սովի ճիրաններից, և երկիրը դուրս եկավ թշվառությունից։ Այդ մասին Ալ. Մյասնիկյանը 1922 թ. գրել է. «Երկու տարի անցավ այն օրից, երբ լալկան, արյունոտ, պատառոտված, քաղցած ու ցուրտ Հայաստանը քանդեց իրեն կաշկանդող ու թշվառացնող շղթաները»[1]։

Սոցիալիստական հեղափոխության հաղթանակի ու նրա ամրապնդման համար մղված պայքարում այսպես էին կոփվում Սովետական Հայաստանի, ռուսաստանյան ֆեդերացիայի, սովետական բոլոր հանրապետությունների ու նրանց ժողովուրդների բարեկամությունը, փոխադարձ օգնությունը և ինտերնացիոնալ համերաշխությունը։

ՍՍՀ Միության կազմավորումը պատմական բոլորովին նոր ուղենիշ հանդիսացավ հայ, ռուս և սոցիալիստական բոլոր ազգերի ու ազգությունների բարեկամական հարաբերությունների մեջ։

Այդ հարաբերությունները պայմանավորվեցին մի շարք գործոններով։ Առաջին կարևոր գործոնը կոմունիստական կուսակցության լենինյան ազգային քաղաքականությունն էր։ Նրա անշեղ իրագործման շնորհիվ վերջ տրվեց Ռուսաստանի ժողովուրդների նախկին իրավազրկությանը և ստեղծվեցին անհրաժեշտ պայմաններ նրանց քաղաքական-հասարակական, տնտեսական ու հոգևոր կյանքի բուռն զարգացման համար։

Երկրորդ. ռուս սոցիալիստական ազգի ձևավորմամբ հիմնովին փոխվեց նրա հարաբերությունները սովետական մյուս ժողովուրդների հետ։ Այն խարսխվեց հավասարության, բարեկամության ու ինտերնացիոնալիզմի սկզբունքների վրա։

Երրորդ՝ Սովետական Միության ժողովուրդների բարեկամական հարաբերությունների զարգացման գործում կարևոր նշանակություն ունեցավ այն, որ ոչնչացվեցին շահագործող՝ դասակարգերը, հանրայնացվեցին արտադրության հիմնական միջոցները, հանրային արտադրությունը դարձավ բացարձակ

---

[1] Տե՛ս ՍՄԿԿ ԿԿ կից ՄԼԻ հայկական ֆիլիալի արխիվ, ֆ. 4004, գ. 71, թ. 48։

տիրապետող։ Սովետական Միության կոմունիստական կուսակցության և
միութենական կառավարության վարած ազգային ու տնտեսական քաղաքա-
կանության շնորհիվ կարճ ժամանակում վերացվեցին ազգային հանրապե-
տությունների տնտեսական հետամնացությունը, և նրանց զարգացման մակար-
դակը հասցվեց տնտեսապես առաջավոր շրջաններին։ Արտադրության ու
բաշխման պլանաչափ կազմակերպման ու վարման հիմքի վրա ստեղծվեց
համընդհանուր սոցիալիստական էկոնոմիկա, «...որը ներառնում է հանրա-
պետությունների ժողովրդական տնտեսությունը և զարգանում ըստ միասնա-
կան պետական պլանի՝ ի շահ ամբողջ երկրի և առանձին վերցված յուրա-
քանչյուր հանրապետության» (տե՛ս ՍՄԿԿ ԿԿ որոշումը ՍՍՀՄ կազմավորման
50-ամյակի նախապատրաստման մասին»)։

Չորրորդ, ՍՍՀՄ կազմավորումով հայ, ռուս և սովետական բոլոր ժողո-
վուրդների մշակույթներն օրինաչափ զարգանալով, միաժամանակ բոլորը
միասին նպաստեցին միասնական սոցիալիստական կուլտուրայի ստեղծմանը։
Ձևով ազգային, բովանդակությամբ սոցիալիստական բազմազգ կուլտուրանե-
րին զուգընթաց զարգացավ մեկ համընդհանուր սոցիալիստական կուլտուրա։

Ազգային ու համընդհանուր միասնական սոցիալիստական կուլտուրանե-
րը սերտորեն կապված են միմյանց, զարգանում են ներդաշնակ, փոխադար-
ձորեն հարստացնում միմյանց և ծառայում առաջավոր մարդկության իդեալի՝
կոմունիզմի կառուցման վեհ նպատակին։

Մարքս-լենինյան գաղափարախոսությունը, սոցիալիստական ազգերի ձև-
ավորումը, նրանց մեկ միասնական պետության մեջ համախմբումը, ՍՍՀՄ
համընդհանուր սոցիալիստական էկոնոմիկայի ու կուլտուրայի ստեղծումը և
ՍՍՀ Միությունում սոցիալիզմի ու կոմունիզմի կառուցման տարիներին կա-
տարված սոցիալ-քաղաքական արմատական վերափոխումները մարդկանց
պատմական բոլորովին նոր հանրության՝ սովետական ժողովրդի, առաջաց-
ման հիմքը հանդիսացան։

Սոցիալիստական հասարակության առաջընթացի համար այս ընդհանուր
բնորոշ գործոնների վրա են խարսխված հայ, ռուս ու ՍՍՀ մեծ Միության՝ սո-
ցիալիստական ազգերի այդ հզոր համաստեղության, բոլոր անդամների ներ-
դաշնակ, բարեկամական հարաբերությունները։

Եթե Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխությունը հայ ժողո-
վրդին փրկեց կործանումից ու վերածնեց, ապա միայն շնորհիվ այն բանի,
որ Հայկական ՍՍՀ-ն դարձավ ՍՍՀ մեծ Միության իրավազոր ու իրավահավա-
սար անդամը, հնարավորություն ստացավ պատմական կարճ ժամանակամի-
ջոցում դառնալու հզոր արդյունաբերության, առաջավոր սոցիալիստա-
կան գյուղատնտեսության, զարգացած գիտության, ծաղկուն գրականության,
արվեստ, հիասքանչ մշակույթ ունեցող հանրապետություն։

ՍՍՀ Միության հիսուն տարիների անցած փառահեղ ուղին վկայում է, որ
սովետական ազգային հանրապետությունների ու ողջ Միության քաղաքական,
տնտեսական, կուլտուրական բուռն առաջընթացի, ՍՍՀ Միության պաշտպա-
նական հզորության ու միջազգային դիրքերի ամրապնդման վճռական նախա-
դրյալը եղել ու մնում է սովետական ժողովուրդների մեծ բարեկամությու-
նը՝ սովետական հասարակության հզոր շարժիչ ուժը, սովետական ժողովուրդ-
ների ստեղծագործական խոյանքների կենարար աղբյուրը։

---

Հ. Մ. ՀԱԿՈԲՅԱՆ

# ԺՈՂՈՎՈՒՐԴՆԵՐԻ ԲԱՐԵԿԱՄՈՒԹՅԱՆ ԴՐՈՇԻ ՆԵՐՔՈ

Սովետական ժողովուրդների մեծ ընտանիքում յուրաքանչյուր ազգ յու-
րովի է ապրել սոցիալիստական իր վերածնունդը, սակայն յուրաքանչյուրի ու
ամենքի համար ՍՍՀՄ կազմավորման 50-ամյա հոբելյանը նշանավորվում է
որպես կոմունիստական կուսակցության լենինյան ազգային քաղաքականու-
թյան հաղթանակի, ժողովուրդների արգասավոր բարեկամության ու անսասան
միասնության մեծ տոն։ Ինչպես նշված է ՍՍՀՄ կազմավորման 50-ամյակի
նախապատրաստության մասին ՍՄԿԿ Կենտկոմի որոշման մեջ, Սովետական
Միությունը մարմնավորում է ազատ ժողովուրդների միասնության ու բարե-
կամության՝ պատմության մեջ առաջներում չեղած հարաբերություններ։ Այդ
բարեկամությունը սոցիալիզմի մեծագույն նվաճումներից մեկն է, սովետական
հասարակության հզոր շարժիչ ուժը, Սովետական Միության բոլոր ազգու-
թյունների աշխատավորների ստեղծագործական խոյանքների անսպառ աղբյու-
րը՝ հանուն ամենաազնիվ նպատակի՝ կոմունիզմի կառուցման։

* * *

Մարդկության առաջադեմ մտածողները դարեր շարունակ հանդես են
եկել ազգային խտրականության դեմ և քարոզել ժողովուրդների իրավահա-
վասարություն ու բարեկամություն։ Սակայն, այդ քարոզը հնչում էր որպես
«ձայն բարբառո հանապատի», քանի դեռ հրապարակ չէին եկել գիտական
կոմունիզմի տեսությունն ու պրակտիկան։

Ավելի քան հարյուր տարի առաջ գիտական կոմունիզմի հիմնադիրներ
Մարքսը և Էնգելսը Կոմունիստական կուսակցության մանիֆեստում հռչակե-
ցին՝ այնքանով, որքանով կոչնչացվի մի անհատի շահագործումը մյուսի կող-
մից, այդքանով էլ կոչնչացվի մի ազգի շահագործումը մյուսի կողմից։ Ազգի
ներսում դասակարգերի հակամարտության վերացմամբ կվերանան նաև թըշ-
նամական հարաբերություններն ազգերի միջև։ Մարքսիզմի հիմնադիրներն
ազգերի համընդհանուր վերածնության առհավատչյան տեսնում էին կապի-
տալիստական հարաբերությունների տապալման, իսկ այնուհետև՝ կոմունիս-
տական հիմունքներով հասարակության վերափոխման մեջ։ Ազգային կա-
պանքների թոթափումն առնչելով աշխատավորների սոցիալական ազատա-
գրության հետ, մարքսիզմը, բնականաբար, բոլոր ազգերի աշխատավորների

ինտերնացիոնալ միասնությունը համարում էր սոցիալիզմի հաղթության կարևորագույն պայմանը։ «Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք» լոզունգը այսօր էլ հնչում է որպես մարտակոչ սոցիալական ու ազգային ազատագրության առաջամարտիկների համար։

Ստեղծագործորեն զարգացնելով մարքսիզմը, Վ. Ի. Լենինն ամեն կարգի ու երանգի ռեֆորմիստների ու օպորտունիստների դեմ մղվող պայքարում մշակեց մի ամբողջական, կուռ ուսմունք՝ ազգային և ազգային գաղութային հարցի մասին։ Լենինը գտնում էր, որ սոցիալական և ազգային հակամարտությունների վերացման, ժողովուրդների միջև բարեկամության հաստատման համար սոցիալ-քաղաքական հիմք կարող են դառնալ բանվորական հեղափոխական շարժման զարգացումը և մարքսիստական կուսակցության ստեղծումը. իսկ ազգերի վերածնության գաղափարական շաղախը՝ կոմունիստական գաղափարախոսությունը։ Եվ պատահական չէ, որ դեռևս Հոկտեմբերյան հեղափոխությունից շատ առաջ լենինյան կուսակցությունն առաջադրեց հետևյալ պահանջները՝ ազգերի լիակատար իրավահավասարություն, բոլոր ազգերի ու ժողովուրդների ինքնորոշման իրավունք, պրոլետարների, բոլոր ազգերի աշխատավորների միասնություն՝ հասարակության հեղափոխական նորացման համար մղվող պայքարում։ ՍՄԿԿ Կենտկոմի որոշման մեջ նշված է. «Դասակարգային և ազգային ճնշման, ազգային երկպառակության և մեկուսացման հին աշխարհին կոմունիստական կուսակցությունը, բանվոր դասակարգը հակադրեցին աշխատավորների միասնության նոր աշխարհը, ուր տեղ չկա մարդու կողմից մարդու, մի ազգի կողմից մյուսի ամենաչնչին ճնշման, որևէ ազգային առանձնաշնորհման համար»։

Դեռևս 1917 թ. փետրվար-հոկտեմբեր ամիսներին Լենինը մշակեց սովետական իրավահավասար, ազգային հանրապետությունների կամավոր միավորման դրույթները՝ բոլոր ազգերի ու ազգությունների իրավահավասարության, ինքնորոշման ազատության հիման վրա։

Լենինը գտնում էր, որ սովետական ֆեդերացիան Ռուսաստանի բազմազգ ժողովուրդների պետական-քաղաքական միավորման այն կենսական ձևն է, որի առկայության պայմաններում միայն հնարավոր կլինի արժանի հակահարված տալ ներքին ու արտաքին թշնամիներին, և որ կարևորն է՝ իրագործել սովետական հանրապետությունների տնտեսական սերտ համագործակցությունը, առանց որի անկարելի են իմպերիալիզմի կողմից ավերված արտադրաուժերի վերականգնումն ու զարգացումը, աշխատավորների բարեկեցության ապահովումը։

Սովետական Միության կազմավորումը եղավ այն վճռական գործոններից մեկը, որը բարենպաստ պայմաններ ապահովեց հասարակությունը սոցիալիստական հիմունքներով վերակառուցելու, սովետական հանրապետությունների էկոնոմիկայի ու կուլտուրայի վերելքը, աշխատավորների բազմազգ պետության պաշտպանական հզորությունն ու նրա միջազգային դիրքերն ամրապնդելու համար։

Հոկտեմբերյան հեղափոխությունից անմիջապես հետո, կոմունիստական կուսակցության առաջ ծառացավ նախկինում ճնշված ու հետամնաց ժողովուրդների տնտեսական ու կուլտուրական անհավասարության իրական վերացման պատմական խնդիրը։ Թե ինչպիսին էր պատկերը, կարելի է դատել



հետևյալ տվյալներից։ Մինչև հեղափոխությունը Սիբիրում և Միջին Ասիայում (առանց Ղազախստանի) թողարկվում էր Ռուսաստանի արդյունաբերական արտադրանքի ընդամենը 5 տոկոսը, թեպետ այդ ծայրամասերը կազմում էին Ռուսաստանի ամբողջ տարածքի 75 տոկոսը։ Անմխիթար վիճակում էին նաև Անդրկովկասի ժողովուրդները, արդյունաբերական հատ ու կենտ ձեռնարկությունները գտնվում էին օտար կապիտալիստների ձեռքում։ Տնտեսական հետամնացության բնական ուղեկիցներն էին աղքատությունն ու համատարած անգրագիտությունը։

Մեր երկրում սոցիալիզմի կառուցման ուղին ոտք դրած ժողովուրդները հույսները կարող էին դնել միայն իրենց միացյալ ուժերի վրա։ Ահա թե ինչու Լենինը կուսակցությունից պահանջում էր զարգացնել «փոխադարձ օգնության» զգացումը, ինչպես աշխատավորական դասակարգերի ներսում, այնպես էլ տարբեր ազգերի աշխատավորների շրջանում։ Սակայն, ինչպես ասում են՝ մեծից շատ էր պահանջվում, փոքրից՝ քիչ։ «...Ճնշող կամ այսպես կոչված՝ «մեծ» ազգի... կողմից ինտերնացիոնալիզմը,— գրում էր Վ. Ի. Լենինը,— պետք է կայանա ո՛չ միայն ազգերի ձևական հավասարությունը պահպանելու մեջ, այլև այնպիսի անհավասարության մեջ, որը ճնշող ազգի, մեծ ազգի կողմից հատուցեր այն անհավասարությունը, որ փաստորեն առաջանում է կյանքում» (Երկեր, հ. 36, էջ 703)։ Եվ բնական է, որ զարգացման տնտեսապես ավելի բարձր աստիճանի վրա գտնվող ժողովուրդների, առաջին հերթին, ռուս ժողովրդի եղբայրական օգնությունն ազգերի փաստացի անհավասարության հաղթահարման կարևոր ու վճռական գործոնը դարձավ։

Տակավին 1918 թ. Լենինը ստորագրեց դեկրետ՝ Սովետական Թուրքեստանում ոռոգիչ ջրանցքներ կառուցելու համար 50 մլն ռուբլի հատկացնելու մասին։ Նա անձամբ զբաղվում էր Դոնբասի ածխամետալուրգիական բազայի և Բաքվի նավթարդյունաբերության վերականգնման խնդիրներով։ Հայաստանի աշխատավորները որպես մասունք են պահում Իվանովո-Վոզնեսենսկի ջուլհակների նվիրաբերած մանածագործական դազգահներից մեկը, որոնցով հիմք դրվեց նորաստեղծ հանրապետության տեքստիլ արդյունաբերությանը։

Իսկապես անշահախնդիր եղբայրական օգնությունը նոր լիցք, նոր իմաստ հաղորդեց նախկինում ճնշված ազգերի աշխատավորների հեղափոխական եռանդին։ Ընդամենը մեկ սերնդի աչքի առաջ տարեցտարի, տասնամյակ առ տասնամյակ մարմին ու շունչ էր առնում սոցիալիզմի հոյակապ կառույցը։ Սովետական ժողովուրդների նյութական միջոցների ու ջանքերի կենտրոնացումը, փոխադարձ օգնությունը հնարավորություն ընձեռեցին՝ բոլոր հանրապետություններում ստեղծելու բարձր զարգացած արդյունաբերություն և խոշոր մեքենայացված գյուղատնտեսություն։ 1970 թ., 1922 թ. համեմատությամբ, երկրի ազգային եկամուտն ավելացավ 100 անգամ։ Ազգային հանրապետություններում հատկապես արագ տեմպերով զարգացավ արդյունաբերությունը։ Նախահեղափոխական՝ 1913 թ. համեմատությամբ արդյունաբերությունն աճեց՝ Ռուսաստանյան ֆեդերացիայում՝ 92 անգամ, Ուկրաինայում՝ 61, Բելոռուսիայում՝ 101, Ուզբեկստանում՝ 41, Ղազախստանում՝ 146, Վրաստանում՝ 85, Ադրբեջանում՝ 33, Հայաստանում՝ 184, Լիտվայում՝ 80 անգամ և այլն։

ՍՍՀՄ առաջին քայլերից մեկը եղավ սովետական հանրապետությունների տնտեսական համագործակցությունն ու փոխօգնությունը դնել միասնական,

համապետական պլանավորման, աշխատանքի բաժանման ու կոոպերացման, ամեն մի հանրապետության և ամբողջ երկրի մասշտաբով ժողովրդական տնտեսության համամասնական զարգացման հիմքի վրա: Լենինի նախաձեռնությամբ ու ղեկավարությամբ, երկրի էլեկտրիֆիկացման հիմքի վրա ստեղծվեց պատմության մեջ առաջին ժողովրդական տնտեսության զարգացման հեռանկարային պլանը, որում ողջ երկրի զարգացումը գիտականորեն զուգակցվում էր ազգային հանրապետությունների արտադրաուժերի զարգացման հետ:

Սովետական Միության ժողովրդական տնտեսության միասնական պլանավորումն զգալիորեն ընդլայնեց ազգային հանրապետությունների տնտեսավարման շրջանակները, արտադրական գործունեության հնարավորությունները, ապահովեց աշխատանքի ռացիոնալ հասարակական բաժանումը և բնական հարստությունների արդյունավետ օգտագործումը: Այն, միաժամանակ, հնարավորություն ընձեռեց հավասարապես բարձրացնելու ժողովրդի կենսամակարդակը:

Սովետական ազգերի բարգավաճման ճանապարհին նոր, կարևոր ուղենիշ է իններորդ հնգամյակը: Գիտատեխնիկական առաջընթացի արագացումը և միասնական պետական տեխնիկական քաղաքականությունը ավելի կխթանեն ինչպես ողջ Միության, այնպես էլ ամեն մի հանրապետության արտադրության աճի ու արդյունավետության բարձրացման տեմպերը: Ռուսաստանյան Ֆեդերացիայում արդյունաբերական արտադրանքի էական ավելացումը կուղեկցվի մեքենաշինության, գազի, նավթի ու քիմիական արդյունաբերության արագ աճով: Անդրկովկասյան հանրապետություններում իններորդ հնգամյակում հատկապես կզարգանան սարքաշինությունը, հաստոցաշինությունը, էլեկտրատեխնիկական և մեքենաշինության մյուս աշխատատար ճյուղերը, ինչպես նաև թեթև ու քիմիական արդյունաբերության և մետալուրգիայի ոչ էներգատար արտադրությունները, սննդարդյունաբերությունը: Բոլոր հանրապետություններում շարք կմտնեն խոշոր էներգետիկ հզորություններ:

Սովետական երկրի արդի տնտեսական կարողությունները հնարավորություն են ընձեռում միութենական հանրապետություններում ու տնտեսական շրջաններում ձևավորել ու զարգացնել ինչպես հանրապետական, այնպես էլ միութենական նշանակության տերիտորիալ-արտադրական կոմպլեքսներ, որոնք, բացի արտադրության ծախքերը նվազեցնելու միջոց լինելուց, մեծապես նպաստում են միջհանրապետական և միջշրջանային տերիտորիալ տնտեսական կապերի ամրապնդմանն ու կատարելագործմանը: Իրականում սովետական երկիրը վաղուց նման է մի հսկայական շինարարական հրապարակի, որտեղ բոլոր ազգերն արժանի ավանդ են ներդնում կոմունիզմի կառուցման գործում:

Մարքսիզմը գտնում է, որ գոյություն չունի որևէ բիոլոգիական, ռասայական և նման մի այլ պատճառ, որ սոցիալական այս կամ այն խմբին, այս կամ այն ազգին դատապարտեր կուլտուրական հետամնացության: Միայն մարդու կողմից մարդու շահագործումը, աշխատանքի բաժանման հակամարտ բնույթն է, որ առաջացնում են ինչպես առանձին սոցիալական խմբերի, այնպես էլ ազգերի ու ժողովուրդների հոգևոր զարգացման տարբերություններ: Մարքսիստական այս դրույթի լավագույն հաստատումն է մեր երկրի ազգերի ու ազգությունների կուլտուրաների բազմակողմանի զարգացման օրինակը:



Հայտնի է, որ նախկինում իրենց գիրը չունեցող ավելի քան 40 ժողովուրդներ սովետական իշխանության տարիներին ձեռք բերեցին գիտականորեն մշակված գիր և այժմ հաջողությամբ զարգացնում են իրենց արվեստն ու գրականությունը: Պատմության գիրկն անցավ ժողովուրդների առաջընթացը պատնեշող համատարած անգրագիտությունը: Սակայն, անգրագիտության վերացումը երկրի կուլտուրական ծաղկման նախապայմանն էր միայն, ամենից դըժվարը միլիոնավոր աշխատավորներին գիտության ու կուլտուրայի նվաճումներին հաղորդակից դարձնելն էր: Այդ խնդրի լուծումը չէր կարող սահմանափակվել հոգևոր արժեքների բաշխման ու սպառման ոլորտով: Սոցիալիզմը ենթադրում է աշխատավորական մասսաների մտավոր ու հոգևոր այնպիսի զարգացում, որպեսզի նրանք սոսկ սպառողներից դառնան նյութական ու հոգևոր արժեքների ակտիվ ստեղծողներ: Այդ մեծագույն խնդիրը մեր երկրում հաջողությամբ իրագործվեց ընդհանուր և մասնագիտական կրթության սիստեմ ստեղծելու, կուլտուրական արժեքները աշխատավորական լայն շրջաններին մատչելի դարձնելու և ազգային ինտելիգենցիա ձևավորելու միջոցով:

Ազգային կուլտուրաների բարգավաճման կարևորագույն պայմանը և ապացույցը եղել ու մնում է բարձրագույն կրթության մակարդակը այս կամ այն երկրում: Ներկայումս այն հանրապետություններում, որտեղ ցարիզմի օրոք ոչ մի բարձրագույն ուսումնական հաստատություն չկար, տասը հազար բնակչին ընկնում է. Մոլդավիայում՝ 124, Թուրքմենիայում՝ 131, Ուզբեկստանում՝ 189, Ադրբեջանում՝ 192, Հայաստանում՝ 214, իսկ Ֆրանսիայում՝ 96, Անգլիայում՝ 83, Իտալիայում՝ 70, ԳՖՀ-ում՝ 48 ուսանող:

Սոցիալիստական կուլտուրայի հետագա բարգավաճման երաշխիքը եղել ու մնում են նրա նյութական բազայի հետևողական զարգացումն ու ամրապնդումը, հասարակության կուլտուրական ռեսուրսների ռացիոնալ տեղաբաշխումը, կուլտուրայի տարածման միջոցների մշտական կատարելագործումը, կուլտուրայի աշխատողների պատրաստումը: Այս առումով, իններորդ հնգամյակը մի նոր մեծ քայլ կլինի մեր երկրի ազգերի ու ազգությունների կուլտուրաների ծաղկման ու մերձեցման ճանապարհին:

Որքան էլ պերճախոս են սովետական ազգերի տնտեսական ու կուլտուրական բարգավաճումը բնորոշող թվերը, ազգերի փաստական հավասարության բուն էությունը թաքնված է քաղաքական, սոցիալ-տնտեսական այն տեղաշարժերի մեջ, որ իրագործվեցին սոցիալիզմի կառուցման տարիներին: Հատկանշականն այն է, որ ազգային հարցի լուծումն ընթանում էր երկրի սոցիալիստական ինդուստրացմանը և կուլտուրական հեղափոխությանը զուգընթաց: Ըստ էության, ազգերի դարավոր անհավասարության հաղթահարման ու հետագա զարգացման ընթացքը մեր երկրում պատմականորեն նոր տիպի ազգերի՝ սոցիալիստական ազգերի ձևավորման ու զարգացման պրոցես է: Սա մարդկության պատմության մեջ բացառիկ, միայն սոցիալիզմին բնորոշ երևույթ է, որը հնարավորություն ընձեռեց նախկինում կապիտալիստական զարգացման ուղին չանցած ժողովուրդներին միանգամից անցնելու սոցիալիստական կացութաձևին: Սրա արդյունքն այն է, որ այսօր արդեն «Անհրաժեշտ նախադրյալներ են ստեղծված, որպեսզի բոլոր ազգությունների աշխատավորներն ակտիվորեն մասնակցեն գիտության, տեխնիկայի, կուլտուրայի զարգացմանը, հոգևոր կյանքում օրինաչափ են դարձել սոցիալիստական ազգերի և ազ-

ցությունների կուլտուրաների ծաղկումը, մերձեցումը և փոխհարստացումը» (ՍՄԿԿ Կենտկոմի որոշումից)։

Բնորոշելով արտադրության կապիտալիստական եղանակը, Մարքսը և Էնգելսը նշում էին, որ տեղական ու ազգային սահմանափակությանը փոխարինելու են գալիս ազգերի բազմակողմանի փոխադարձ կապերը և կախվածությունը։ Այդ հավասարապես վերաբերում է ինչպես նյութական, այնպես էլ հոգևոր արտադրությանը։ Զննելով այս օրինաչափության դրսևորումները կապիտալիզմի զարգացման բարձրագույն փուլի պայմաններում, Վ. Ի. Լենինը հանգեց այն եզրակացության, որ հասարակական զարգացման մեջ տեղի է ունենում ազգային միջնորմների անհետացման, ազգային տարբերությունների վերացման, ազգերի մերձեցման ու ծաղկման համաշխարհային պատմական պրոցես։

Ի հակադրություն կապիտալիզմի, սոցիալիզմը ստեղծում է մարդկության համակեցության այնպիսի նոր, բարձր ձևեր, երբ ամեն մի ազգության աշխատավորների կենսական պահանջմունքները և առաջադիմական ձգտումները բավարարվում են նրանց ինտերնացիոնալ միասնության մեջ, ազգային միջնորմների աստիճանական վերացման պայմաններում։

Սոցիալիզմի օրոք ազգերի մերձեցումն իրագործվում է սոցիալիստական էկոնոմիկայի ու կուլտուրայի, աշխատավորների բարեկեցության բարձրացման համար մղվող ժողովուրդների համատեղ պայքարում։ Կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծումը հանգեցնում է սովետական ժողովուրդների առավել սերտ միավորման։ Ավելի արդյունավետ է դառնում ազգերի միջև նյութական և հոգևոր հարստությունների փոխանակումը, աճում է ամեն մի հանրապետության ներդրումը կոմունիզմի կառուցման ընդհանուր գործում։

Հանրապետությունների միջև աշխատանքի սոցիալիստական բաժանումը, արտադրության մասնագիտացումն ու կոոպերացումը, միջհանրապետական տնտեսական կապերի ընդլայնումը խթանում են արտադրաուժերի և արտադրահարաբերությունների համազգայնացումը։ Սա, իր հերթին, առաջ է բերում բնակչության տեղաշարժեր ազգային մի հանրապետությունից մի ուրիշը։ Արտադրական խոշոր կառույցներում ձևավորվում են ինտերնացիոնալ կոլեկտիվներ, որտեղ կողք-կողքի ապրում և աշխատում են շատ ազգերի ներկայացուցիչներ։ Նրանց համատեղ գործունեությունը բարերար ազդեցություն է ունենում սովետական ժողովրդի համար ընդհանուր հոգևոր կերտվածքի, բարոյականության, կենցաղի, կուլտուրայի, կոմունիստական հատկանիշներ մշակելու, մարդկանց ինտերնացիոնալ ըմբռնումներն ընդլայնելու գործում։ ՍՄԿԿ Կենտկոմի որոշումն արձանագրում է, որ այժմ յուրաքանչյուր հանրապետության աշխատավորները կազմում են մի բազմազգ կոլեկտիվ, որտեղ ազգային առանձնահատկություններն օրգանապես զուգորդվում են ինտերնացիոնալ սոցիալիստական, համասովետական հատկանիշների ու ավանդույթների հետ։

Սոցիալիզմը ժառանգում, զարգացնում և ժողովուրդների ընդհանուր սեփականությունն է դարձնում այն լավագույնն ու արժեքավորը, որ ստեղծել է մարդկային քաղաքակրթությունը հազարամյակների ընթացքում։

Սեփական ազգի բարգավաճման համար երախտագիտության փոխադարձ զգացումը սովետական ժողովուրդների միջև վերջնականապես դեն է նետում ազգային սնապարծության հնոտիքը, լայն ասպարեզ բացելով սովետական,



համազգային, ինտերնացիոնալիստական հայրենասիրության համար։ Հայաստանում սովետական կարգերի հաստատման 50-ամյակի տոնակատարության օրերին ընկեր Բրեժնևը հայ ժողովրդի բնորոշ առանձնահատկությունը համարեց Հայաստանի նկատմամբ ջերմագին խանդաղատանքով տոգորված հայրենասիրությունը, սակայն սա գործի մի կողմն է միայն։ «Իրենց հանրապետության նկատմամբ հայրենասիրական բարձր ոգին հայերի, ինչպես և սովետական մյուս բոլոր ժողովուրդների մեջ զուգորդվում է առավել լայն առումով հայրենասիրական ոգու հետ։ Նվիրվածությամբ ու սիրով դեպի մեր ընդհանուր սոցիալիստական հայրենիքը՝ Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների Միությունը։

Լինել հայրենասեր և միևնույն ժամանակ տոկուն, համոզված ինտերնացիոնալիստ,— այնուհետև նշեց Լ. Ի. Բրեժնևը,— նշանակում է խորապես ընկալել սոցիալիստական աշխարհայացքը, սոցիալիստական մշակույթը, նշանակում է հավատարիմ լինել լենինյան մեծ ուսմունքին»։

Սովետական ապրելակերպն իր խոր կնիքը դրեց նաև մարդկանց վարվելակերպի ու հոգեկան կերտվածքի վրա։ Դեռևս 1919 թ., դիմելով Կարմիր բանակին, Վ. Ի. Լենինն ասում էր, որ միջակ գյուղացուն, գիտակից բանվորները և իսկական սովետական մարդիկ վերաբերվում են որպես ընկերոջ։ «Իսկական սովետական մարդ» լենինյան ըմբռնումը ենթադրում էր այն մարդկանց, որոնք հանդես էին գալիս որպես որոշակի բարոյական հատկանիշների, քաղաքական գիտակցության սոցիալական կրողներ։ Ինչպես նշվում է ՍՄԿԿ Կենտկոմի որոշման մեջ, մեր երկրում սոցիալիզմի ու կոմունիզմի կառուցման տարիներին գոյացան սովետական մարդու հիանալի գծերը՝ նվիրվածությունը կոմունիզմի գործին, սոցիալիստական հայրենասիրությունն ու ինտերնացիոնալիզմը, աշխատանքային ու հասարակական-քաղաքական բարձր ակտիվությունը, անհաշտությունը շահագործման ու ճնշման, ազգային ու ռասսայական նախապաշարմունքների նկատմամբ, դասակարգային համերաշխությունը բոլոր երկրների աշխատավորության հետ։ Աճեցին իսկական ինտերնացիոնալիստների՝ կոմունիզմի անձնվեր մարտիկների սերունդներ։

Սովետական ժողովուրդների միասնական ինտերնացիոնալ ընտանիքի գոյությունը բերկրանքի ու երջանկության զգացումներ են արթնացնում սովետական ամեն մի մարդու հոգում, որը և հայ բանաստեղծին մղում է իր ժամանակի անունից ասելու.

Ես այնպես եմ ելնում իմ տնից՝
Կարծես թե մտնում եմ... իմ տունը,
Մեր երկրում ամեն ինչ մոտ է ինձ,
Ամեն ինչ սրտաբաց ժպտում է։

---

Ս. Ի. ԺԵԼՏՈՎ

# ԿԱՆԱՉ ԳԼԽԱՐԿՈՎ ՄԱՐԴԻԿ

Փոքրիկ գազ ավտոմեքենան անցնում է շերտավոր ուղեփակոցից ու արագ մտնում ուղեկալի տերիտորիան: Գողտրիկ, գետնահարկ տնակները թաղվել են չինարի թավ կանաչում: Ցածլիկ, փայտյա սանդղամուտքի առաջ գրանիտե սահմանասյունն է՝ ՍՍՀՄ պետական գերբով: Լուռ է չորս կողմը: Միայն թեթև զեփյուռից հազիվ լսելի սոսափում են տերևները: Բայց ահա լսվում է հրամանը, և բակում քարանում է սահմանապահ ջոկատի մարտաշարքը:

Ուղեկալի պետը զննում է շարքը: Լուրջ դեմքեր, խիստ կեցվածք: Սահմանին երկար տարիներ նվիրած մարդը գիտե, թե որքա՜ն հանդիսավոր է լինում դետքի գնալու այդ պահը: Հանդիսավոր, պատասխանատու: Այդ պահին յուրաքանչյուրը, ասես, նորից է կրկնում հայրենիքին հավատարիմ մնալու երդումը:

Հստակ լսվում է հրամանը.

— Հրամայում եմ ձեզ՝ ստանձնել Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների Միության պետական սահմանի պաշտպանությունը:

Վերակարգի ավագ Ալեքսանդր Բեվզան բարձրաձայն պատասխանում է.

— Լսում եմ, պաշտպանել պետական սահմանը:

Գիշերը երկուսով դուրս եկան: Թուխպ ամպերը կախվել էին երկրի վրա: Թանձր խավարը պատել էր գետակը: Անսովոր աչքը նույնիսկ ցերեկը դժվարությամբ կնկատի ոլորապտույտ, գահավեժ զառիթափը: Բայց շարքայիններ Ալեքսանդր Բեվզան և Վլադիմիր Խաչատրյանն առաջին անգամ չեն քայլում դետքային արահետով: Ուղեկալում, երկու տարվա ծառայության ընթացքում, քանի՜, քանի անգամ են չափել նրանք այն՝ գիշեր ու ցերեկ, սառնամանիքին թե շոգին:

Սահմանապահներն աչալուրջ զննում են ամեն թփուտ ու հողաբլուր, անմիջապես որսում յուրաքանչյուր շշուկ, յուրաքանչյուր հընչյուն:

Փորձառու սահմանապահներ են երկուսն էլ՝ Ա. Բեվզան և Վ. Խաչատրյանը: Սահմանը շատ բան է սովորեցրել նրանց: Անհամարձակ էին, անփորձ, երբ ուղեկալ եկան: Երանությամբ էին նայում վետերաններին, հիացած լսում նրանց պատմությունները թշնամու հետ ունեցած մարտերի մասին: Օր-օրի երիտասարդ զինվորները ձեռք էին բերում ռազմական վարպետություն, գիտելիքներ, հմտություն: Հիմա նրանցով հպարտանում են: Նրանց հարգում են, գնահատում:

— Սահմանի ամենապատասխանատու տեղամասերը նրանց ենք հանձնարարում պահպանել,— ասում է ուղեկալի պետը.— Երբ նրանք են վերակարգում, ոչ ոք չի կարող սահմանն անցնել: Զգաստությամբ, կարգապահությամբ, ճշտապահությամբ նրանք օրինակ են ծառայում մյուսներին:

Ծառայությունը սահմանի վրա հարազատացնում է մարդկանց: Հանդիպում են միմյանց տարբեր վայրերից, տարբեր ազգության երիտասարդներ: Անծանոթ են: Հետո միասին գնում են վերակարգի, ճաշարան, նստում միևնույն սեղանի շուրջը: Սկսում են ապրել նույն կյանքով, միևնույն մտքերով ու ձգտումներով: Ալեքսանդր Բեվզան Խերսոնի կողմերից է, Վլադիմիր Խաչատրյանը՝ Կիրովականից: Հազարավոր կիլոմետրեր են բաժանում նրանց հայրենի վայրերը: Բայց սահմանապահի ծառայությունը նրանց դարձրել է մտերիմներ: Նրանց հաճախ կարելի է տեսնել միասին: Մերթ տաղավարում են, ուր տնից ստացած նորություններն են հաղորդում իրար, մերթ՝ գրադարանում կարդացած գիրքն են քննարկում, մերթ սպորտ հրապարակում ոգևորված պարապում են:

Բարեկամությունն օգնում է զինվորներին՝ հաղթահարելու դժվարությունները, լավ տիրապետելու զինվորական վարպետությանը, աճելու: Վերջերս ուղեկալի կուսկազմակերպությունը Բևզային ու Խաչատրյանին ընդունեց կուսակցության շարքերը: Ժողովում ջերմ խոսքեր ասվեցին նրանց համեստության, սկզբունքայնության, աշխատասիրության մասին:

Իրենց գործը սիրող, զինվորական պարտքին ջերմորեն նվիրված այդպիսի մարդիկ ուղեկալում շատ կան:

— Թվարկել լավագույնների՞ն,— կրկին հարցնում է ուղեկալի պետը,— մեզ մոտ բոլորն են բարեխիղճ, ջանադիր կատարում իրենց ծառայությունը:

Իր մասին չի սիրում շատ խոսել եֆրեյտոր Բ. Դրուժինինը: Վերջերս նա մի անծանոթի էր բռնել: Դուրս եկավ, որ նրա փաստաթղթերը կեղծ են:

— Կանչեցի, իհարկե, հերթապահին:

Կարծես ամեն բան շատ պարզ է ու հասարակ: «Տեսա, բռնեցի»: Եվ ոչ մի խոսք դժվարությունների, վտանգների մասին...

Անհանգիստ կյանքով է ապրում ուղեկալը: Մարդիկ այստեղ միշտ զգաստ են, միշտ պատրաստ՝ շարքում, պարապմունքի թե կարճատև դադարի պահերին: Ամեն րոպե կարող է հընչել տագնապի ազդանշանը: Եվ այնժամ պետք է նետվել թշնամու հետքերով, վտանգավոր գոտեմարտի մեջ մտնել սահմանը խախտողի հետ:

Այդպես եղավ և վերջերս: Ուշ երեկոյան լըսվեց «Ի զե՜ն» ազդանշանը: Հրամանատարը հետախուզական խմբին հայտնեց.

— Վտանգավոր հանցագործ է հայտնվել: Առաջադրանքն է՝ բռնել նրան և վնասազերծել:

Օպերատիվ-հետախուզական խումբը, ապա Ա. Սանակոևի գլխավորությամբ, որոնման նետվեց: Սահում էին լեռնալիրճով: Ճանապարհը կտրում էին վիթխարի գլաքարերը, զառիթափ լանջերը: Բայց... ահա և բանդիտը: Թաքնվել է: Սանակոևը մի փոքր բարձրացավ գետնից. «Ձեռքերդ վե՛ր: Հանձնվի՛ր: Դիմադրությունն ավելորդ է»: Պատասխանը՝ ավտոմատային երկար կրակահերթ: Գոտեմարտը տևեց ավելի քան չորս ժամ: Հատկապես համարձակ ու վճռական էին գործում եֆրեյտոր Ա. Ա. Նաբելոխովը և շարքային Վ. Պրոկոպուլան: Հանցագործը վնասազերծվեց:

— Տոկունության և խիզախության, բարեխիղճ ծառայության օրինակ են մեզ համար սահմանի վետերանները,— ասում է շարքային Ա. Լապիկովը:— Նրանցից սովորում ենք զգոնություն ու վճռականություն, հավատարիմ մընալ զինվորական երդմանը:

Ուղեկալում պահպանում են հայրենիքի առաջին դետքերի մարտական ավանդույթները, խնամքով փոխանցում դրանք երիտասարդությանը: Անցնում են տարիներ: Սահմանապահների մի սերնդին փոխարինում է մյուսը: Իսկ վետերանների փառքն ապրում է, ինչպես տասնամյակներ առաջ:

Վերջերս ուղեկալում երեկո էր՝ նվիրված Անդրկովկասի հերոս սահմանապահներին: Հուզմունքով և անկեղծ հիացմունքով էին լսում երիտասարդ զինվորները նրանց սխրանքների մասին, ում բախտ է վիճակվել նախապատերազմյան ծանր տարիներին հսկել սահմանը:

...1931 թվականի աշնանային խավար գիշեր էր: Տասնհինգ զինված բանդիտներ սողում էին լեռնագոգի թփուտների միջով: Այստեղ էլ նըրանց հանդիպեց սահմանապահ Վասիլի Կրասոտինը:

Սահմանապահը վճռեց. թշնամուն անվրեպ հարվածելու համար պետք է առաջանալ, ավելի հարմար դիրք գրավել: Տարածությունը նրա և բանդիտների միջև կրճատվում էր: Հանկարծ Կրասոտինի ոտքերի տակ մի ճյուղ ընկավ: Վասիլին կանգ առավ: Հենց այդ պահին որոտաց կրակոցը: Զինվորի ուսը տաքացավ:

Սահմանապահը հենվեց հրացանին և սկսեց կրակել մի ձեռքով: Նորից երկու անգամ վիրավորվեց: Բայց ոչ մի քայլ չնահանջեց: Նրա առջև թշնամին էր, ու նա, վերքերը մոռացած,

շարունակում էր դիպուկ կրակոցներով ոչնչացնել բանդիտներին: Դիմադրեց այնքան, մինչև ուղեկալից օգնության եկան:

Արիության ու անդրդվելիության համար կոմերիտական Վասիլի Կրասոտինը պարգևատրվեց Կարմիր դրոշի շքանշանով:

Կրասոտինի մարտը թշնամու հետ գրանցվել է Անդրկովկասի սահմանապահային օկրուգի պատմության առաջին էջերում: Որքա՜ն այդպիսի վառ, ոգեշունչ էջեր կարելի է գտնել՝ թերթելով օկրուգի կեսդարյա պատմությունը:

Սահմանապահները մինչև հիմա էլ հիացմունքով են հիշում Ալեքսանդր Կորյակովի անունը: Նա զոհվեց, բայց թույլ չտվեց, որ թշնամին անցնի: Արի սահմանապահի անունը ընդմիշտ գրանցվել է անձնակազմի ցուցակներում, իսկ ուղեկալը, ուր նա ծառայել է, հերոսի անունն է կրում: Սահմանը խախտող յոթ հոգու է բռնել Երվանդ Մայիլյանը, «Ազարտ» շան օգնությամբ: Դաժան 1942 թվականին թշնամու հետ ունեցած թեժ գոտեմարտում եֆրեյտոր Խաչատրյանը վնասազերծել է ֆաշիստական հետախուզության գործակալին:

— Այս տարվա հուլիսին բոլորեց Անդրկովկասի սահմանապահային օկրուգի 50 տարին, — երեկոյի ժամանակ իր ելույթում ասաց շարքային Վ. Պրոդանը:— Բազում խիզախ հերոսներ է այն տվել երկրին: Լինենք նրանց փառքի արժանավոր ժառանգները:

Սահմանապահի խոսքը խոսք է: Հարևան ուղեկալում «Մարտական փառքի ծառուղի» կա: Անցեք այնտեղով, խոսեք մարդկանց հետ և կտեսնեք՝ ինչպիսի հերոսականությամբ է համակված սահմանապահային առօրյան: Ինչպիսի՜ դժվարին, հաճախ վտանգալից պարտականություն են կատարում սահմանապահներն ամեն օր:

...Տագնապի ազդանշան: Եվ հետախուզական խումբը նետվեց դեպի սահմանը: Ահա և հետքերի գոտին: Գետնին հստակ ոտնահետքեր են: Լարափակոցը կտրված է: Շարքային Ռ. Սարգսյանը, մյուսների հետ, գնաց հետքերով: Թփուտում խշշոց լսվեց: Ստվեր երևաց:

— Կա՛նգ առ, ձեռքերդ վե՛ր,— լսվեց սահմանապահի ահարկու ձայնը: Սահմանը խախտողը կանգնեց:

...Տագնապ: Մի պահ անց պահեստի սահմանապահներով լի մեքենան սլանում է՝ փակելու սահմանագիծը: Շուտով, պահեստայինների գալուց հետո, սահմանն անցնողին բռնեցին:

— Հեշտությամբ չենք հասնում մարտական բարձր պատրաստության,— ասում է ուղեկալի կոմերիտմիության քարտուղար Լ. Շաքալինը:— Սահմանապահներից այն պահանջում է համառորեն ուսանել, քրտնաջան աշխատել:



Եվ զինվորները սովորում են: Սովորում են լարված, անընդհատ: Կատարելագործում են իրենց մարտական վարպետությունը, ընդլայնում աշխարհայացքը: Հետաքրքրական շատ գործերով, օգտակար ձեռնարկումներով է հարուստ կոմերիտական կազմակերպության կյանքը: Ահա հիմա էլ կոմերիտմիության կոմիտեն դասախոսություններ է կազմակերպում **Սովետական Հայաստանը սովետական ժողովրդի բարեկամական ընտանիքում** թեմայով: ՍՍՀՄ կազմավորման 50-ամյակին նվիրված դասախոսությունների շարքից է այն, որը կարդում է շարքային Գևորգ Գևորգյանը:

Մեքենավար Գևորգ Գևորգյանին բանակ ճանապարհելիս Հրազդանի լեռնաքիմիական կոմբինատի կոլեկտիվը պատվիրեց. «Ծառայի՛ր ազնիվ, բարեխիղճ. աշխատանքային ընկերներդ գոհ կլինեն»: Գևորգը նրանց անհարմար կացության մեջ չդրեց: Այստեղ, ուղեկալում, նրան ընդունեցին կուսակցության անդամության թեկնածու: Նա ուղեկալի առաջավորներից է. նրա կուրծքը զարդարում է «Սահմանապահ զորքերի գերազանցիկ» նշանը: Իսկ լուսանկարը զետեղված է **Լենինյան հերթափոխի առաջավորների** ստենդում:

Վերջերս ուղեկալ էր եկել Գևորգի հայրը՝ Հրազդանի շրջանի Մեղրաձոր գյուղի կոլտնտեսական Դոլուխան Գևորգյանը՝ Հայրենական մեծ պատերազմի մասնակիցը: Նա ևս գոհ մնաց որդու ծառայությունից: Մեկնելուց առաջ հանդիպում ունեցավ ուղեկալի անձնակազմի հետ, զինվորներին հաջողություն մաղթեց:

Հայաստանին նվիրված իր դասախոսությունում Գ. Գևորգյանը պատմեց սովետական իշխանության տարիներին Հայաստանում կատարված հիանալի փոփոխությունների մասին, խոսեց հանրապետության մարդկանց մասին: Տնտեսության և կուլտուրայի բնագավառում Սովետական Հայաստանի ձեռք բերած հաջողությունները,— ասաց նա,— արդյունք են կոմունիստական կուսակցության լենինյան ազգային քաղաքականության, սովետական բոլոր ժողովուրդների եղբայրական համերաշխության և փոխօգնության: Նրա առաջին դասախոսությունը չէր այս: Կոմերիտականները մեծ հետաքրքրությամբ են լսել նաև նրա մյուս դասախոսությունները՝ **Արևաշող Տաջիկստանը, Սովետական Ադրբեջանի ծաղկումը...**

Ուղեկալում ծառայում են տարբեր ազգերի մարդիկ՝ ռուսներ, ուկրաինացիներ, հայեր, բելոռուսներ, թաթարներ... տարբեր բնավորություններ, տարբեր հետաքրքրասիրություններ ունեն նրանք: Բայց ընդհանուր նպատակը մեկն է՝ անձեռնմխելի պահել սիրելի հայրենիքի սահմանները: Նրանք եկել են երկրի այլևայլ քաղաքներից ու շրջաններից: Տուն, ընտանիք, հայրենի վայրեր... Հաճախ զինվորները մտքով սլանում են այնտեղ՝ հազարավոր կիլոմետրեր հեռու, ուզում իմանալ, իմանալ, թե ի՛նչ նորություն կա հարազատ հանրապետությունում, ինչպե՛ս են գործերը սիրելի կոլտնտեսությունում կամ դպրոցում:

Դասախոսություններից ու զրույցներից զատ սովետական եղբայրական հանրապետությունների մասին են պատմում ցուցահանդեսները, ստենդները: Դրանցից մեկը վերաբերում է սովետական Մերձբալթիկային:

Երկար կհիշվի «Ժողովրդի ստեղծած ամեն բան պաշտպանել հմտորեն, աչալուրջ» թեմային նվիրված երեկոն: Այդ առթիվ զեկուցեց շարքային Վ. Վոլոշինը: **Սովորել զինվորական գործն այնպես, ինչպես Լենինն է ավանդել** զրույցն անցկացրեց Ն. Ժարկովը: Աշխույժ անցավ **Ես սովետական քաղաքացի եմ** թեմատիկ երեկոն, դրա շարունակությունը կլինի **Զինվորների ուսերին ոչ թե ուսադիրներ են, այլ՝ մարդկության բախտը** երեկոն, որին պատրաստվում են ուղեկալի կոմերիտականները:

Իսկ վերջերս սահմանապահներին հյուր էին եկել պաշտոնաթող գնդապետներ Ն. Սունգուրյանը, Լ. Կարապետյանը, փոխ-գնդապետ Գ. Օգանեզովը: Այստեղ, սահմանային այս ուղեկալում նրանք սկսեցին իրենց ծառայությունը: Այստեղ անցան կյանքի մեծ դպրոց, շարքային սահմանապահից հասան ավագ սպայի աստիճանի:

Ուղեկալում ջերմ ընդունեցին սահմանի վետերաններին: Նրանց հոգեհարազատ զրույցը զինվորի պարտքի, ավագ սերնդի ավանդույթների, սահմանապահային ծառայության ռոմանտիկայի ու դժվարությունների մասին էր: Ուշադիր էին լսում երիտասարդ զինվորները տարեց սահմանապահի պատմածները նենգ թշնամու հետ ունեցած դաժան գոտեմարտերի, զրկանքների մասին, որ բաժին էին ընկել սահմանի առաջին ժամապահներին: Չկար հագուստ, տեխնիկա, չկար ջուր, մոլեգնում էին հիվանդությունները: Բայց ոչինչ չընկճեց մեր հայրենիքի պաշտպանների կամքն ու ոգին: Նրանք անբասիր կատարեցին իրենց պարտքը:

— Մի անգամ, ուղեկալի վրա,— պատմեց Գ. Օգանեզովը,— հարձակվեց մի մեծ բանդա: Մարտն ընդունեցին երեք հոգի, որոնցից մեկը կին էր: Բանդիտների վրա կրակում էին հրացաններից ու թնդանոթից: Բայց նրանք նորից ու նորից առաջանում էին: Սահմանապահներից մեկը սպանվեց, մյուսը վիրավորվեց: Բայց թշնամուն այդպես էլ չհաջողվեց կոտրել քաջերի դիմադրությունը, մտնել ուղեկալ: Սահմանապահները տոկացին, հաղթեցին:



Վետերանների հիշողությունները խռովեցին զինվորների հոգին, խորապես հուզեցին նրանց:

— Հաճախակի եկեք մեզ մոտ,— խնդրեցին նրանք,— հանդիպումները ձեզ հետ միշտ ուրախալի են:

Հաջորդ անգամ Ռոստովի մարզից սահմանապահների մոտ եկավ տրակտորային բրիգադայի բրիգադավար Ի. Գիրևոյը: Եկավ ուղեկալի պետի մոտ:

— Ձե՞ք ճանաչում:

— Ո՛չ:

— Ես Գիրևոյն եմ:

— Սպասեցեք... մի՞թե այդ դուք էիք...

Մարտական փառքի ցուցասրահում մի նկար կա՝ «Գոտեմարտ սահմանն անցնողի հետ»: Ստորև տեքստն է. «Կովկասի պաշտպանության ծանր ժամին ռազմաճակատ մեկնեց սահմանապահների սնայպերական անձնակազմը, որը ոչնչացրեց ֆաշիստական հարյուրավոր զինվորներ ու սպաներ: Հիտլերյան զավթիչների դեմ մղվող պայքարում ցուցաբերած արիության ու խիզախության համար լավագույն սնայպերներն արժանացել են կառավարական պարգևների: Արիության համար մեդալով պարգևատրվել է կրտսեր սերժանտ Ի. Ի. Գիրևոյը»:

— Իսկ հիմա ուղեկալում է ծառայում իմ որդին,— ժպտում է Իվան Իվանովիչը:— Եկել եմ նրան տեսնելու:

Գիրևոյն ուղեկալում մնաց մի քանի օր: Ճանաչեց և չճանաչեց այն. տարիներ էին անցել, այնքա՜ն էր փոխվել ուղեկալը: Լսեց զինվորների պատմություններն այսօրվա սահմանային ծառայության մասին: Ինքն էլ հիշեց անցած օրերը: Չէր կարող չհրճվել հին սահմանապահը. հայրերի էստաֆետը հուսալի ձեռքերում է:

Հրաշալի սովորույթ է դարձել սահմանապահների սերտ բարեկամությունը բնակչության հետ: Ե՛վ սրանք, և՛ նրանք թանկ են գնահատում այդ բարեկամությունը, ամեն կերպ ամրապնդում այն: «Սահմանը պահպանում է ողջ ժողովուրդը»: Այդ կարող են վկայել սահմանը խախտողներին բռնելու գործում աշխատավորների մասնակցության շատ դեպքեր: Վերջերս կամավորական դրուժինաների հավաք էր: Այնտեղ տրվեցին կոլտնտեսականներ Ա. Սուքիասյանի, Ա. Սահակյանի, Պ. Հովհաննիսյանի և ուրիշների անունները, որոնք օգնել են սահմանապահներին՝ հետապնդելու և վնասազերծելու կասկածելի ան-

ձանից: Նրանք բոլորն էլ պարգևատրվել են «ՍՍՀՄ պետական սահմանը գերազանց պաշտպանելու համար» մեդալով:

Մի անգամ կոլտնտեսական Ռ. Ալեքսանյանը դաշտում անծանոթի է հանդիպում. հետաքըրքըրվում է.

— Ո՞ւր:

— Հարևան գյուղը,— պատասխանում է վերջինս:

Իսկ ինքն ուղղվում է դեպի հակառակ կողմը: «Օտար է»,— անցնում է մտքով: Հայացքով անծանոթին մինչև ոլորապտույտը ճանապարհելով՝ Ռ. Ալեքսանյանը շտապում է ուղեկալ:

— Սահմանը խախտել են:

Շատ չանցած կասկածելի մարդուն բռնեցին: Իրոք նա սահմանը խախտել էր:

Սահմանապահները հաճախ են հանդիպում շրջակա գյուղերի բնակիչների հետ, նրանց իրենց մոտ հրավիրում: Հետաքրքրական էր հանդիպումը սովխոզի դպրոցականների հետ: Զինվորականները գեղարվեստական ինքնագործունեության համերգ տվեցին, պատմեցին իրենց ծանր ու պատվավոր ծառայության մասին: Հարևան գյուղում գործում է սահմանապահների պատանի բարեկամների ջոկատը: Պարապմունքը նրանց հետ անց է կացնում Ս. Դավիդովը:

Ավանդույթ է դարձել կապը շեֆական կազմակերպությունների հետ: Մարտական փառքի ցուցասրահում խնամքով պահպանվում են հանքափորի սաղավարտը, հանքահատ մուրճի նմուշը, Մոսկվայի մետրոպոլիտենի բոլոր կայարանների պատկերների հավաքածուն: Դա շեֆերի՝ մայրաքաղաքի մետրոշինարարների նվերն է: «Դաժան աղմկում էր Բրյանսկի անտառը...» ճակատային տարիների երգի տողերով հարթաքանդակն ուղարկել են Բրյանսկի բնակիչները: Մյասնիկյանի անվան կոմբինատի արտադրանքի հարուստ հավաքածուն նվիրել են Կիրովականի քիմիագործները: Սահմանապահների հետ մշտական կապ են պահպանում նաև Հոկտեմբերյանի պահածոների գործարանը, Հայաստանի նկարիչների միությունը, Երևանի էլեկտրալամպերի գործարանը:

Ցուցասրահի պատերը զարդարում են սահմանապահներին հյուր եկած դերասանների, կինոյի գործիչների լուսանկարները: Այստեղ են ՍՍՀՄ ժողովրդական արտիստներ Ե. Գոգոլևան և Մ. Ցարևը, կինեմատոգրաֆիստներ՝ Կիևից: Ուղեկալ են եկել տիեզերագնացներ, Սովետական Միության կրկնակի հերոս Ա. Նիկոլաևը և Վ. Շատալովը: Դամանսկ թերակղզու մարտերի հերոս Յու. Բաբանսկին:

...Արագաշարժ փոքրիկ գազ ավտոմեքենան թողնում է ուղեկալը: Առջևում ասֆալտե հարթ ճանապարհն է: Նայում ենք սահմանի կողմը: Այնտեղ, երեկոյան մթնշաղում, քայլում են երկուսը՝ շարքայիններ Ս. Բեվզան և Վ. Խաչատրյանը: Սահմանի մի փոքր մասն են պաշտպանում նրանք, բայց նրանց համար այնտեղ ամփոփված է ողջ հայրենիքը:



# ՍՄԿԿ ՊԱՅՔԱՐԸ ՀԱՄԱՇԽԱՐՀԱՅԻՆ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ՇԱՐԺՄԱՆ ՄԻԱՍՆՈՒԹՅԱՆ ՀԱՄԱՐ

Ռ. Լ. ՄՈՎՍԻՍՅԱՆ

*Համաշխարհային կոմունիստական շարժման միասնության և համախմբվածության պրոբլեմը նոր չէ: Բանվորական և ազգային-ազատագրական շարժման մեջ միշտ եղել են տարբեր հայացքներ ու հակադիր գործողություններ, աջ և «ձախ» օպորտունիստական հոսանքներ, ռևիզիոնիստական և հակամարքսիստական ու հակալենինյան զանազան խմբավորումներ: Դրանք ծնունդ են առել բանվորական և կոմունիստական շարժման ծագման հետ և շարունակում են գոյատևել մինչև այժմ: Կոմունիստական կուսակցություններն իրենց սկզբնավորման օրից զերծ չեն եղել օպորտունիստական, պառակտիչ տարրերից ու հոսանքներից: Ժամանակակից կոմունիստական շարժման մեջ գործող հակամարքսիստական-հակալենինյան հոսանքներն ու խմբավորումներն ինչպես իրենց հայացքներով, ստրատեգիայով ու տակտիկայով, այնպես և սոցիալ-դասակարգային արմատներով կտրված չեն XIX դարի երկրորդ և XX դարի առաջին կեսի օպորտունիզմից: Դրանք իրենց նախորդների անմիջական ժառանգորդներն ու շարունակողներն են, թեև արդի շրջանում առկա են նաև կոմունիստական շարժման մեջ տարաձայնությունների առաջացման սոցիալ-տնտեսական ու քաղաքական բազմաթիվ նոր պատճառներ, իսկ սրանց պայքարի ստրատեգիան ու տակտիկան ենթարկվել ու ենթարկվում են նոր փոփոխությունների, ստանում նոր առանձնահատկություններ:*

*Վերջին տասնամյակում կոմունիստական շարժման միասնության ու համախմբվածության համար օպորտունիստական զանազան պառակտիչ գործողությունների դեմ հետևողական և անզիջում պայքարն ավելի է սրվել և դարձել մարքս-լենինյան հեղափոխական կուսակցությունների ինտերնացիոնալիստական ստրատեգիայի ու տակտիկայի, նրանց պրակտիկ գործունեության առանցքային խնդիրներից մեկը: Եվ դա հասկանալի է. արդի դարաշրջանում ծավալվող համաշխարհային հեղափոխական պայքարի, աշխատավոր դասակարգերի ու ժողովուրդների, սոցիալական ու ազգային-ազատագրական մարտերի դրական ելքը, այդ պայքարում կոմունիստական կուսակցությունների*

ղեկավարության հաջողությունը մեծապես կախված են կոմունիստների համաշ-
խարհային բանակի համախմբվածությունից, նրանց հայացքների ու գործո-
ղությունների միասնությունից։ Ընդհանրացնելով հեղափոխական պայքարի
վերջին տարիների հարուստ փորձը, ՍՄԿԿ XXIV համագումարը հանգեց հենց
այդ եզրակացության, նշելով, որ «Իմպերիալիզմի դեմ մղվող պայքարի հա-
ջողությունը մեծապես կախված է հակաիմպերիալիստական ուժերի և, ամե-
նից առաջ, նրանց ավանգարդի՝ համաշխարհային կոմունիստական շարժման
համախմբվածությունից» (ՍՄԿԿ XXIV համագումարի նյութերը, էջ 25)։

Իսկ որո՞նք են բանվորական շարժման և հեղափոխական կուսակցությու-
նների շարքերում տարաձայնությունների և զանազան օպորտունիստական հո-
սանքների ու խմբավորումների առաջացման սոցիալ-դասակարգային ար-
մատները, օբյեկտիվ և սուբյեկտիվ պատճառները, հաղթահարման ուղիները։

Համաշխարհային բանվորական և կոմունիստական շարժման անցյալի ու
ներկայի ողջ պրակտիկան վկայում է, որ օպորտունիզմը պատահական երև-
ույթ չէ և ոչ էլ կապված է լոկ առանձին գործիչների վարքագծի կամ մտա-
ծելակերպի հետ, թեև անտեսել այդ հանգամանքը բոլորովին չի կարելի։
Բանվորական և կոմունիստական շարժման մեջ տարաձայնությունների, դրանց
հիման վրա զանազան օպորտունիստական հոսանքների առաջացումն ունի
սոցիալական խոր արմատներ։ Բացահայտելով II ինտերնացիոնալի կրախի
օբյեկտիվ պատճառները, Լենինը նշել է. «...օպորտունիզմը պատահականու-
թյուն չէ, առանձին անձերի ո՛չ հանցանքի, ո՛չ թերացման, ո՛չ էլ դավաճա-
նության հետևանք, այլ պատմական ամբողջ մի ժամանակաշրջանի սոցիա-
լական արդյունք է» (Երկեր, հ. 21, էջ 308)։

Օպորտունիզմի զանազան ձևերի առաջացման սոցիալ-դասակարգային
հիմնական աղբյուրներից մեկը բանվոր դասակարգի տարասեռությունն է։
Բանվոր դասակարգը, որպես կանոն, բոլոր երկրներում, բաղկացած է երեք
գլխավոր շերտից՝ կադրային պրոլետարիատից, բանվորական արիստոկրա-
տիայից և մանրբուրժուական տարրերից։ Բանվոր դասակարգի այս վերջին
երկու անկայուն, տատանվող, բուրժուազիայի ազդեցությանը շուտ ենթարկ-
վող կամ ուլտրահեղափոխական հովերով տարվող տարրերի մի մասը, մըտ-
նելով կուսակցության մեջ, անխուսափելիորեն առաջ է բերում տատանումներ
ու տարաձայնություններ, հիմք ստեղծում ֆրակցիոնականության ու օպորտու-
նիզմի համար։ Ընդ որում, եթե բանվորական արիստոկրատիան աջ օպորտու-
նիզմի գլխավոր աղբյուրն ու հենարանն է, ապա մանրբուրժուական տարրերը
«ձախ» օպորտունիզմի, ուլտրահեղափոխականության սոցիալական բազան են։

Կոմունիստական շարժման մեջ օպորտունիստական այդ երկու հոսանք-
ները հավասարապես վտանգավոր են։ Վ. Ի. Լենինը Ռուսաստանի կոմունիստ-
ների համար գլխավոր վտանգը համարում էր «ձախ» օպորտունիզմը։ Եվ դա
այդպես էր, որովհետև բոլշևիկյան կուսակցության ներսում օպորտունիզմի,
տատանումների առաջացման, կուսակցությունը պառակտելու, նրա միասնու-
թյունը խախտելու սոցիալական հիմնական ուժը, ավելին, հեղափոխության
հաղթանակից հետո սոցիալիզմի ամենավտանգավոր թշնամին մանրբուրժուա-
կան տարրերն էր։ «Խոշոր, կենտրոնացված բուրժուազիային հաղթելը հազար
անգամ ավելի հեշտ է,— գրել է Լենինը,— քան միլիոնավոր ու միլիոնավոր
մանր տնտեսատերերին «հաղթելը», իսկ նրանք իրենց ամենօրյա, առօրյա,



անտեսանելի, անորսալի, կազմալուծող գործունեությամբ իրականացնում են
հենց այն արդյունքները, որոնք հարկավոր են բուրժուազիային, որոնք վե-
րականգնում են բուրժուազիային» (Երկեր, հ. 31, էջ 35—36)։

Բանվորական և կոմունիստական շարժման ներսում օպորտունիստական
հայացքների ու գործողությունների առաջացմանը մեծապես նպաստում է
բուրժուական գաղափարախոսությունը։ Համաշխարհային հեղափոխական
պայքարի ողջ պրակտիկան ցույց է տալիս, որ բուրժուազիան անդադրում
ձգտել ու ձգտում է իր քաղաքական և գաղափարական ազդեցության տակ
պահել հասարակական բոլոր շերտերին, այդ թվում և բանվոր դասակարգին։
Նա ուժ ու եռանդ չի խնայել և չի խնայում իր եսասիրական, դասակարգային
նեղ շահը ժողովրդական լայն զանգվածներին որպես համազգային շահ ներ-
կայացնելու, դասակարգային պայքարի գաղափարը դասակարգային համե-
րաշխության գաղափարով նենգափոխելու, պրոլետարական ինտերնացիոնա-
լիզմին հակադրելու բուրժուական նացիոնալիզմը, կապիտալիստական հասա-
րակական-քաղաքական սիստեմը ներկայացնելու որպես եդեմական դրախտ,
որպես ազատ աշխարհ և, ընդհակառակը, ամեն կերպ վարկաբեկելու կոմու-
նիզմի գաղափարը։

Բուրժուական գաղափարախոսությունը բանվոր դասակարգի և աշխատա-
վորական այլ խավերի միջոցով մշտապես ներթափանցել ու ներթափանցում է
նաև հեղափոխական կուսակցությունների մեջ, դառնում օպորտունիստական
զանազան հոսանքների, ռեվիզիոնիզմի առաջացման գլխավոր աղբյուրներից
մեկը։ Ընդսմին, պետք է նշել, որ որքան ավելի է սրվում դասակարգային
պայքարը կապիտալիստական երկրներում, որքան ավելի են խորանում իմ-
պերիալիզմի համաշխարհային սիստեմի կործանարար հակասությունները,
արագանում է գաղութային սիստեմի փլուզումը, աճում սոցիալիզմի ձգողա-
կան ուժը, այնքան ավելի կատաղի բնույթ է ստանում գաղափարական պայ-
քարը։ Ժամանակակից իմպերիալիզմը հակակոմունիզմի պրոպագանդան
բարձրացրել է պետական քաղաքականության աստիճանի։ Նա ուժ ու միջոց-
ներ չի խնայում սասանելու համաշխարհային կոմունիստական շարժման
միասնությունը, պառակտելու սոցիալիզմի համաշխարհային սիստեմը, հույս
ունենալով դրանով կանխելու կապիտալիզմը կործանում տանող պրոցեսները։

Կոմունիստական կուսակցությունների ներսում տարաձայնությունների և
օպորտունիստական զանազան հոսանքների առաջացման օբյեկտիվ ու սուբյեկ-
տիվ պատճառների մասին խոսելիս, չի կարելի եզրակացնել, որ անհնար է
միասնության ստեղծումը, հետևաբար և պառակտումը ճակատագրական ան-
խուսափելիություն է։

Կոմունիստական շարժման համաշխարհային ողջ պրակտիկան ցույց է
տալիս, որ, ինչպես առանձին կուսակցությունների ներսում, այնպես և միջազ-
գային մասշտաբով հնարավոր է ու կարելի է պահպանել կոմունիստական
շարժման միասնությունը։ Բայց դրան հասնելու համար հարկավոր է ակտիվ
պայքարել։ Միասնությունը տարերայնորեն չի կարող ստեղծվել։

Կոմունիստական կուսակցությունների միասնության պահպանման և իմ-
պերիալիզմի դեմ մղվող պայքարում նրանց ղեկավար դերի ամրապնդման

վճռական ու հիմնական պայմանը՝ հավատարմությունն է մարքս-լենինյան ուսմունքին, նրա սկզբունքների ստեղծագործական կիրառումն ու զարգացումը։ Մարքսիզմ-լենինիզմի դիրքերից յուրաքանչյուր նահանջ, ինչ ձևով էլ այն դրսևորվի, վաղ թե ուշ պետք է ունենա իր բացասական հետևանքները։ Այդ պատճառով էլ կուսակցության տեսական հիմունքների անաղարտության համար անզիջում պայքարը նրա զարգացման օրինաչափությունն է։

Արդի շրջանում կոմունիստական կուսակցությունների միասնության պահպանման գործում վճռական դեր է կատարում նացիոնալիզմի ու շովինիզմի դրսևորումների դեմ անզիջում պայքարը։ Բուրժուական նացիոնալիզմն ու շովինիզմը համաշխարհային կոմունիստական շարժման, ինչպես և սոցիալիստական համագործակցության երկրների միասնության ու համախմբվածության գլխավոր թշնամիներն են։ Հավատարմություն պրոլետարական ինտերնացիոնալիզմին, մարքս-լենինյան գաղափարներին ու քաղաքականությանը — այդ է համաշխարհային կոմունիստական շարժման միասնության գլխավոր պայմաններից մեկն այսօր։

Կոմունիստական կուսակցությունների միասնության և համախմբվածության պահպանման գործում անչափ մեծ նշանակություն ունի կուսակցական կյանքի լենինյան կազմակերպական հիմունքների, մասնավորապես դեմոկրատական ցենտրալիզմի սկզբունքի անշեղ կիրառումը։ Միջազգային կոմունիստական շարժման ամբողջ պրակտիկան լիովին հաստատել ու հաստատում է այդ սկզբունքի միակ ճիշտ լինելը։ Կուսակցական կյանքի լենինյան նորմերը միշտ զորավիգ են եղել կոմունիստական կուսակցությունները պառակտումից պահպանելու գործում։

Կոմունիստական կուսակցությունների միասնության պահպանման և ամրապնդման ոլորտում սկզբունքային նշանակություն ունի միասնական ստրատեգիայի ու տակտիկայի մշակումը, տարաձայնություններն ընկերական քննարկումների միջոցով հաղթահարելը։

Համաշխարհային կոմունիստական շարժման միասնության պահպանման և ամրապնդման համար կարևոր են սոցիալիստական հեղափոխության տեսության ընդհանուր օրինաչափություններով ղեկավարվելը և ազգային առանձնահատկությունների խստիվ հաշվառումը։ Անտեսել այդ երկու հանգամանքը, նշանակում է անխուսափելի դարձնել պառակտումը։ Կոմունիստական կուսակցությունների միասնությունը չի կարող ստեղծվել ուժով, մեկի կամքը մյուսներին պարտադրելու միջոցով։ Միասնության գլխավոր հիմքերից մեկը բոլոր կոմունիստական կուսակցությունների իրավահավասարության և սուվերենության սկզբունքի պահպանումն է։

Մարքս-լենինյան կուսակցությունների միասնության պահպանման գործում վճռական նշանակություն ունի տարաձայնությունների սկզբունքային հաղթահարումը։ Հեղափոխական կուսակցությունները պետք է ամեն կերպ խուսափեն տարաձայնություններից ու պառակտումից։ Բայց երբ անհնար է դրանցից խուսափել, ապա սքողելը դավաճանության է հավասար։ Սկզբունքային տարաձայնություններում անթույլատրելի է կոմպրոմիսը։ Տարաձայնությունները մարքսիզմ-լենինիզմի դիրքերից, սկզբունքային պայքարով հաղթահարելու միջոցով միայն կարելի է ստեղծել ամուր միասնություն։ «Պայքար ցանկալ առանց աքացիի, տարաձայնություններ՝ առանց պայքարի,— գրել է Լենինը,— ինստիտուտային միամտություն կլիներ, և եթե պայքարը վարվի



բացահայտ, այն հարյուր անգամ ավելի լավ է արտասահմանյան և ռուսաստանյան «գուբարևականությունից», այն հարյուր անգամ ավելի արագ կհասցնի, կրկնում եմ, ամուր միասնության» (ПСС, т. 46, стр. 58)։

Ամեն մի այլ միասնություն, որը խարսխվում է սկզբունքների զիջման հաշտվողականության վրա, օպորտունիզմ է նշանակում, դա օգուտ չի կարող բերել կոմունիստական շարժմանը։ Այդ է ապացուցում ՍՄԿԿ 70-ամյա, միջազգային կոմունիստական շարժման ողջ պատմությունը։

***

Հավատարիմ մարքսիզմ-լենինիզմի և պրոլետարական ինտերնացիոնա-
լիզմի սկզբունքներին, ՍՄԿԿ-ն արդի ժամանակաշրջանում ևս ջանքեր չի
խնայում՝ արմատական արդյունքների հասնելու համաշխարհային կոմունիս-
տական շարժման միասնության ու համախմբվածության համար մղվող պայ-
քարում։ Այդ նպատակին հասնելու գործում կարևոր փուլ էր եվրոպական կո-
մունիստական կուսակցությունների 1967 թ. Կառլովի Վարիի կոնֆերանսը և
ապա կոմունիստական տարբեր կուսակցությունների մի շարք այլ միջազգա-
յին հանդիպումներ, որոնց նպատակն էր աստիճանաբար հաղթահարել գո-
յություն ունեցող տարաձայնությունները և նախապատրաստել կոմունիստնե-
րի միջազգային նոր ֆորում՝ քննելու ժամանակակից հեղափոխական զարգաց-
ման արմատական պրոբլեմները, մշակելու միասնական ստրատեգիա ու տակ-
տիկա իմպերիալիզմի դեմ մղվող պայքարում։

Համաշխարհային կոմունիստական շարժման միասնության ու համա-
խմբվածության համար մղվող պայքարում պատմական ուղենիշ էր կոմունիս-
տական և բանվորական 75 կուսակցությունների՝ 1969 թ. մոսկովյան խոր-
հրդակցությունը, որի նախապատրաստմանը և բուն աշխատանքներին ամե-
նաակտիվ մասնակցություն ունեցավ ՍՄԿԿ-ն։ Խորհրդակցությունը մեծ ներ-
դրում կատարեց մարքս-լենինյան տեսության մի շարք դրույթներ ժամանա-
կակից իրադրության համեմատ ստեղծագործորեն զարգացնելու բնագավա-
ռում։ Այն վճռական հարված հասցրեց կոմունիստական շարժման պառակտիչ
ուժերին, միաժամանակ հստակ նշելով դրանց դեմ հետագայում պայքարելու
հիմնական ուղիները։ Խորհրդակցությունը նոր ուժով ընդգծեց պրոլետարա-
կան ինտերնացիոնալիզմի սկզբունքների անշեղ կիրառման կենսական նշա-
նակությունը՝ իմպերիալիզմի դեմ մղվող պայքարում հեղափոխական բոլոր
ուժերի համախմբման գործում։ «Մարքսիզմ-լենինիզմին, պրոլետարական
ինտերնացիոնալիզմին հավատարիմ լինելը, իրենց ժողովրդի շահերին, սո-
ցիալիզմի ընդհանուր գործին անձնվիրաբար ու հավատարմորեն ծառայելը
կոմունիստական ու բանվորական կուսակցությունների միասնական գործո-
ղությունների արդյունավետության և ճիշտ կողմնորոշման անհրաժեշտ պայ-
մանն են, իրենց պատմական նպատակներին հասնելու՝ նրանց հաջողության
գրավականը»,— ասված է նրա ընդունած դեկլարացիայում։

1969 թ. խորհրդակցությունից հետո համաշխարհային կոմունիստական
շարժման միասնության համար մղվող պայքարը թևակոխեց զարգացման նոր
փուլ։ Ավելի ամրապնդվեցին կոմունիստական կուսակցությունների կապերը։
Վերջին երեք տարիների ընթացքում գումարվեցին Եվրոպայի, Կենտրոնական
Ամերիկայի, Արաբական երկրների կոմունիստական կուսակցությունների մի
շարք ռեգիոնալ կոնֆերանսներ, տեղի ունեցան լատինա-ամերիկյան երկրնե-
րի, Հյուսիսային Եվրոպայի և այլ վայրերի կոմունիստական կուսակցություն-

ների ներկայացուցիչների հանդիպումներ, որոնք զգալի դեր կատարեցին կո-
մունիստների շարքերի քաղաքական ու գաղափարական համախմբման համար։

Կոմունիստական կուսակցությունների քաղաքական և գաղափարական
միասնության գործում խիստ անհրաժեշտ են տարբեր կուսակցությունների
պատվիրակությունների փոխանակումը, եղբայրական կուսակցությունների
համագումարներին մասնակցելը (վերջին երեք տարում 43 կոմունիստական և
բանվորական կուսակցություններ ունեցել են իրենց համագումարները) և այլն։
Խորհրդակցությունից հետո ընկած ժամանակաշրջանում ՍՍՀՄ-ում են եղել
կոմունիստական, հեղափոխական-դեմոկրատական և ձախ սոցիալիստական
255 կուսակցությունների պատվիրակություններ, որոնցից 102-ը մասնակ-
ցել են ՍՄԿԿ XXIV համագումարին։ Իր հերթին ՍՄԿԿ-ն ավելի քան 80 պատ-
վիրակություն է ուղարկել ոչ սոցիալիստական երկրներ։ Այդ փոխադարձ
հանդիպումների ընթացքում ՍՄԿԿ մտքերի լայն փոխանակություն է ունեցել
միջազգային զարգացման, հեղափոխության և կոմունիստական շարժման,
լենինյան տեսության ու քաղաքականության հրատապ պրոբլեմների շուրջ։
Այդ հանդիպումների շնորհիվ ստեղծվել է կոմունիստական ու բանվորական
կուսակցությունների գործողությունների ու հայացքների միասնություն։

Համաշխարհային կոմունիստական շարժման գաղափարական-տեսական
միասնության ամրապնդման գործում խոշոր դեր կատարեց Վ. Ի. Լենինի
ծննդյան 100-ամյակի տոնակատարությունը, որը նոր ուժով ցույց տվեց
մարքսիզմ-լենինիզմի գաղափարների կենսունակությունը և եղբայրական
կուսակցությունների վճռականությունը՝ պայքարելու նրա անաղարտության և
ստեղծագործական զարգացման ու կիրառման համար։

Ժամանակակից ռևիզիոնիզմի դեմ մղվող պայքարում բավական չէ նը-
րանց, որպես բանվոր դասակարգի ու հեղափոխական ողջ շարժման թշնա-
միների, դատապարտումը։ Շատ ավելի կարևոր է նրանց հայացքների հակա-
գիտական, հակալենինյան բնույթի բացահայտումը և մարքս-լենինյան տե-
սության ստեղծագործական զարգացումը՝ ժամանակակից իրադրությանը հա-
մապատասխան։ «Հին ֆորմուլաների կրկնությունը այնտեղ, որտեղ դրանք
արդեն իրենց սպառել են, նոր պրոբլեմներին նորովի մոտենալ չկարողանալը
կամ չցանկանալը՝ այս ամենը վնաս է բերում գործին, լրացուցիչ հնարավո-
րություններ ստեղծում մարքսիզմ-լենինիզմի զանազան ռևիզիոնիստական
խեղաթյուրումներ տարածելու համար։ Մեր տեսության ու պրակտիկայի վրա
բուրժուական և ռևիզիոնիստական հարձակումների քննադատության համոզ-
չությունը հսկայական չափով ուժեղանում է այն ժամանակ, երբ դա հենվում
է հասարակական գիտությունների, մարքս-լենինյան տեսության ակտիվ և
ստեղծագործական զարգացման վրա» (ՍՄԿԿ XXIV համագումարի նյութերը,
էջ 137—138)։

ՍՄԿԿ-ն, ինչպես մինչև XXIV համագումարը, այնպես էլ դրանից հետո,
իր գաղափարական-տեսական պայքարում ղեկավարվել ու ղեկավարվում է
այդ դիրքորոշմամբ։ Մեր կուսակցության ամենաակտիվ մասնակցությամբ
միայն վերջին երեք տարիների ընթացքում գումարվել են 19 միջազգային
տեսական կոնֆերանսներ, գիտական սեսիաներ և սիմպոզիումներ, որոնցում,
ժամանակակից պայմաններին համապատասխան, լայնորեն քննարկվել են
մարքս-լենինյան տեսության, կոմունիստական կուսակցությունների ղեկավար
դերի աճի, դասակարգային և ազգային-ազատագրական պայքարի հրատապ



պրոբլեմները։ Տեսության հարցերի շուրջ մտքերի լայն փոխանակում է կազ-
մակերպել «Проблемы мира и социализма» ամսագիրը։

Համաշխարհային կոմունիստական շարժման միասնության և համա-
խմբվածության համար վիթխարի աշխատանք է կատարված։ Բայց ռևիզիո-
նիզմն ու պառակտիչ մյուս ուժերը դեռ լիովին չեն հաղթահարված։ Պրակ-
տիկան ցույց է տալիս, որ որքան ավելի են նրանք կորցնում իրենց դիրքերը,
այնքան ավելի են ուժեղացնում պայքարը։ Իսկ այդ նշանակում է, որ նրանց
գաղափարական և կազմակերպական վերջնական ջախջախումը շարունակում
է մնալ մարքս-լենինյան կուսակցությունների առաջնահերթ և ամենօրյա
խնդիրը։ «Առաջվա նման հրատապ է աջ և «ձախ» ռևիզիոնիզմի դեմ, նացիո-
նալիզմի դեմ ուղղված պայքարը»,— ասված է ՍՄԿԿ XXIV համագումարին
Կենտկոմի տված հաշվետվության մեջ (ՍՄԿԿ XXIV համագումարի նյութերը,
էջ 27)։

Չանդրադառնալով ժամանակակից էտապում համաշխարհային կոմու-
նիստական շարժման միասնության դեմ ելած ռևիզիոնիստական, օպորտու-
նիստական ուժերի գաղափարական-տեսական, տակտիկական, քաղաքական
և կազմակերպական պայքարի բոլոր ասպեկտներին, նշենք միայն դրանց մի
քանի դրսևորումներն ու առանձնահատկությունները։

Արդի շրջանում մարքսիզմ-լենինիզմի և հակակոմունիզմի, ռևիզիոնիզմի
միջև համաշխարհային մասշտաբով մղվող գաղափարական-քաղաքական
պայքարի առանցքային հարցը կազմում է կոմունիստական կուսակցության
ղեկավար դերի մասին մարքս-լենինյան ուսմունքը։ Այդ հարցի շուրջ ռևի-
զիոնիստների «տեսությունները» բազմազան են։

Դրանցից ամենից առաջ պետք է նշել ավստրիական ռենեգատ Ֆիշերին։
Նա գտնում է, որ կոմունիստական կուսակցություններն իրենց կազմակերպա-
կան, քաղաքական և գաղափարական հիմունքներով արդեն ապրել են իրենց
դարը, հնացել են, հետևաբար պետք է ստեղծել նոր տիպի կուսակցություն-
ներ։ Նա, օրինակ, առաջարկում է կոմունիստական կուսակցությունները փո-
խարինել այնպիսի կուսակցություններով, որոնք արտահայտեն հասարակա-
կան բազմազան խավերի շահերն ու նրանց գաղափարախոսությունները,
իրենց մեջ ներառնեն, ասենք, մարքսիստներին և ոչ մարքսիստներին, կոմու-
նիստներին և սոցիալ-դեմոկրատներին, կաթոլիկներին և բողոքականներին և
այլն։ Դժվար չէ նկատել, որ Ֆիշերը բանվոր դասակարգի հեղափոխական
կուսակցությունը ցանկանում է փոխարինել ապադասակարգային մի կոնգլո-
մերատով, ստեղծել մոտավորապես այն սկզբունքով, ինչ սկզբունքով Ռու-
սաստանում ցանկանում էին կուսակցությունը ստեղծել մարտովականներն ու
մենշևիկ լիկվիդատորները։

Նույն սկզբունքը տարբեր ձևով քարոզում և պաշտպանում է ռենեգատ
Ռ. Գարոդին Ֆրանսիայում։ Նա բանվոր դասակարգի հեղափոխական կու-
սակցության մարքս-լենինյան գաղափարական հիմքը համարում է հնացած և
գտնում, որ բանվորական կուսակցությունը պետք է հրաժարվի միասնական
աշխարհայացքից։ Նա ձգնում է ապացուցել, որ սոցիալական տարբեր դիրք և
տարբեր հայացքներ ունեցող բազմազան խավերին դեպի սոցիալիզմ կարող է
առաջնորդել միայն այնպիսի կուսակցություն, որը ղեկավարվում է տարբեր
աշխարհայացքներով։ Դժվար չէ նկատել, որ տարբեր աշխարհայացքների
վրա խարսխված կուսակցությունը չի կարող ունենալ միասնական նպատակ

ու միասնական գործողություններ, հետևաբար և միասնական ղեկավարու-
թյուն։

Մարքս-լենինյան կուսակցության ղեկավար դերի ժխտմանը կամ թուլաց-
մանն է ուղղված հարավսլավական ռևիզիոնիստների այն պնդումը, թե իբր
կուսակցության ղեկավար դերի նկատմամբ մարքս-լենինյան ուսմունքը ճիշտ
լինելով իշխանության համար մղվող պայքարում, այն իր ուժը կորցնում է
իշխանության գրավումից հետո, հետևաբար հետանկարում նա պետք է չքա-
նա, կուսակցությունը աստիճանաբար պետք է ազատվի իշխանության ղեկա-
վարման տարրերից և իր գործունեությունը սահմանափակի կուլտուր-դաս-
տիարակչական աշխատանքով։

Ժամանակակից ռևիզիոնիստների առավել տարածված հայացքներից մե-
կը «քաղաքական պլյուրալիզմի» տեսությունն է։ Այդ տեսության կողմնակից-
ները ձգնում են ապացուցել, որ իսկական դեմոկրատիան հնարավոր է իրա-
կանացնել միայն իրարամերժ հայացքներ ու ծրագրեր ունեցող, իրար դեմ
պայքարող բազմակուսակցության պայմաններում։ Հաղիվ թե հարկ կա ապա-
ցուցելու, որ բազմակուսակցության նման հասկացությունը տանում է դեպի
պրոլետարիատի դիկտատուրայի, սոցիալիզմի կառուցման պայմաններում
բանվոր դասակարգի զինաթափում, պայմաններ է ստեղծում հակասոցիա-
լիստական ուժերի ազատ գործունեության համար։

Կուսակցության ղեկավար դերի մարքս-լենինյան ուսմունքի դեմ է ուղղված
նաև կուսակցությունը միլիտարիզմի սկզբունքով կառուցելու մաոականների
տեսակետը։ ՉԿԿ IX համագումարում ընդունված կանոնադրության մեջ, օրի-
նակ, լիովին հանված են դեմոկրատական ցենտրալիզմի, ղեկավարման կո-
լեկտիվության, կուսակցության միասնության ու ներկուսակցական դեմոկրա-
տիայի սկզբունքները և, ընդհակառակը, կանոնադրական ուժ են տացել
Մաոյի պաշտամունքը, նրա իրավունքը՝ փոխելու կուսակցության կազմա-
կերպական կառուցվածքը, սահմանելու ղեկավարությունը ժառանգող հա-
ջորդներ և այլն։

Կուսակցության ղեկավար դերի ժխտմանը կամ թուլացմանն ուղղված
այդ բոլոր տեսություններն ու գործողությունները հակասում են մարքսիզմ-
լենինիզմին։ Նրանց նպատակը, վերջին հաշվով, հանգում է ինչպես իշխանու-
թյան համար մղվող պայքարում, այնպես և սոցիալիզմի ու կոմունիզմի կա-
ռուցման ժամանակաշրջանում բանվոր դասակարգին, բոլոր աշխատավորնե-
րին առաջնորդից ու ղեկավար ուժից զրկելուն։

ՍՄԿԿ պատմական ծառայությունն այն է, որ նա իր տեսական ու պրակ-
տիկ գործունեությամբ ապացուցում ու ցույց է տալիս մարքս-լենինյան կու-
սակցությունների ղեկավար դերի իրականացման պատմական անհրաժեշտու-
թյունը՝ հասարակությունը սոցիալիստական և կոմունիստական հիմունքնե-
րով հեղափոխականորեն վերափոխելու բարդ պրոցեսներում։ Ավելին, նա
կուսակցության ղեկավար դերի մասին մարքս-լենինյան ուսմունքը վերջին
տարիների ընթացքում բարձրացրեց զարգացման նոր աստիճանի։ ՍՄԿԿ XXIV
համագումարի փաստաթղթերում ո՛չ միայն բազմակողմանի վերլուծության են-
թարկվեցին կուսակցության ղեկավար դերի աճը պայմանավորող օբյեկտիվ
ու սուբյեկտիվ պատճառները, այլև հստակորեն նշվեցին այն բարձրացնելու
կոնկրետ ուղիներն ու եղանակները։





Ժամանակակից էտապում համաշխարհային կոմունիստական շարժման
միասնության ամրապնդման գործում առաջնային նշանակություն ունի մաո-
ական ռևիզիոնիզմի վնասազերծումը։ Մաոիզմի վտանգավորությունն այն է,
որ նա գլխավորում է ռևիզիոնիստական բոլոր ուժերին։ Նա գործում է իշխա-
նության գլուխ կանգնած կոմունիստական կուսակցության ներսում, որն իր
պառակտիչ նպատակներին հասնելու համար լայնորեն օգտագործում է մաս-
սայական ինֆորմացիայի և պրոպագանդայի պետական բոլոր միջոցները։
Մաոականները բոլոր ուժերով աշխատում են կոմունիստական մյուս կուսակ-
ցություններում ստեղծել Պեկինին հարող և նրան ենթարկվող կազմակերպու-
թյուններ ու խմբեր։ Ըստ Պեկինի տվյալների՝ մաոականներին հարող կազմա-
կերպություններ ու խմբեր են գործում ավելի քան 50 երկրներում։

Մաոիզմի վտանգավորությունն առանձնապես մեծ է այն պատճառով, որ
նա իր գաղափարախոսությամբ և քաղաքականությամբ ռևիզիայի է ենթար-
կում մարքսիզմ-լենինիզմի արմատական բոլոր սկզբունքները, աշխատում է
իր պառակտիչ գիծն անցկացնել ժամանակակից հեղափոխական շարժման
բոլոր պրոբլեմները լուծելիս։

Մաոիզմը ժամանակակից կոմունիստական շարժման մեջ հակալենինյան
օպորտունիստական ամենավտանգավոր ուժն է, որպիսին չի տեսել համաշ-
խարհային հեղափոխական և կոմունիստական շարժման ողջ պատմությունը։
Այդ պատճառով էլ նրա դեմ վճռական, սկզբունքային պայքարը, նրան վնա-
սազերծելը ո՛չ միայն ՍՄԿԿ և մարքս-լենինյան մյուս կուսակցությունների,
այլև Չինաստանի իսկական ինտերնացիոնալիստ կոմունիստների առաջնա-
հերթ և պատմական խնդիրն է։ Մաոիզմի վնասազերծումը խոշոր առաջընթաց
քայլ կլինի համաշխարհային կոմունիստական շարժման միասնության ամրա-
պնդման և համախմբվածության ճանապարհին։ Այդպիսին է ՍՄԿԿ XXIV
համագումարի դիրքորոշումը։

# ԿՈՒՍԱԿՑԱԿԱՆ ԿՅԱՆՔ

## ԲՆԱԿՉՈՒԹՅԱՆ ՀՈԳԵՎՈՐ ՊԱՀԱՆՋՄՈՒՆՔՆԵՐԻ ԲԱՎԱՐԱՐՄԱՆ ՀԱՄԱՐ

Պ. Մ. ԽԱՉԱՏՐՅԱՆ

ՀԿԿ Թալինի շրջկոմի առաջին քարտուղար

*ՍՄԿԿ XXIV համագումարը խնդիր դրեց ամեն կերպ բարձրացնել աշխատավորության կուլտուրական սպասարկման մակարդակը, արդյունավետ կազմակերպել կուլտուր-դաստիարակչական աշխատանքները: Կուսակցության այս պահանջը մեկ անգամ ևս մատնացույց է անում լենինյան այն ճշմարտությունը, որ լիակատար կոմունիզմի կառուցումը, առաջին հերթին, ենթադրում է այդ հասարակարգի նյութատեխնիկական բազան ստեղծող ամենաբարձր կուլտուրայի տեր հասարակություն: Այս կապակցությամբ Լ. Ի. Բրեժնևը XXIV համագումարում ընդգծեց. «Մեծ գործը՝ կոմունիզմի կառուցումը, անկարելի է առաջ շարժել առանց իր՝ մարդու բազմակողմանի զարգացման»:*

*Մեր շրջանում ծավալվող տնտեսական ու կուլտուրական շինարարության, աշխատավորության գաղափարական ու գեղագիտական դաստիարակության, կոմունիզմ կառուցող մարդու բարոյական կերպարի ձևավորման, նրա բազմակողմանի զարգացման գործում ՀԿԿ շրջանային կոմիտեն միշտ բարձր է գնահատել կուլտուրայի օջախների դերը և հետևողականորեն պահանջել սկզբնական կազմակերպություններից՝ ամենօրյա օգնություն ցույց տալ կուլտուր-լուսավորական հիմնարկություններին, մշտապես համագործակցել նրանց հետ:*

*Կուսշրջկոմը և սկզբնական կուսկազմակերպություններն իրենց բյուրոներում և ժողովներում ավելի հաճախ են քննարկում կուլտուր-լուսավորական հիմնարկությունների գործունեության հետ կապված հարցերը՝ բառ արժանվույն խրախուսելով լավն ու ուսանելին, բացահայտելով թերությունները: Ուրախությամբ պիտի ասել, որ շրջանի գյուղական ակումբների, գրադարանների, կուլտուրայի տների գերակշռող մասը հիմնականում անթերի է կատարում իր պարտքը: Կուլտուրայի այդ օջախները, սերտ կապ հաստատելով գյուղական մտավորականության հետ, պատշաճ մակարդակով և ագիտացիոնմասսայական աշխատանքի փորձված միջոցներով ու ձևերով ՍՄԿԿ XXIV համագումարի որոշումները դարձնում են աշխատավորական լայն զանգվածների սեփականությունը: Դա, ինչ խոսք, նպաստում է աշխատավորության կոմունիստական դաստիարակությանը, նրանց բազմակողմանի զարգացմանը: Մեր շրջանի կուլտուր-լուսավորական հիմնարկությունները հանդես են եկել բազմաթիվ հետաքրքրական նախաձեռնություններով: Սակայն, մինչև այդ բոլորի մասին խոսելը, կցանկանայի ամսագրի ընթերցողների ուշադրությանը ներկայացնել հնաբույր մի փաստաթղթի տխուր բովանդակությանը, որը լույս է սփռում նախկին Թալինի կուլտուր-լուսավորական անմխիթար վիճակի վրա: Ահա այն.*

*«Հեռագիր Հայաստանի հանրապետության նախարարին.*

*Թալինի շրջանի մի խումբ ինտելիգենտների մեջ միտք է հղացել շրջանում, որը կտրված է եղել աշխարհից, բանալ գրադարան-ընթերցարան: Տեղեկանալով, որ Երևան է փոխադրվել Հայ հրատարակչության ընկերության գրադարանը, ուստի խնդրում ենք Ձեզ, պարոն նախարար, հաճել կարգադրել Թալինի հասարակության համար ևս մասն հանել այդ գրքերից...*

*Մի խումբ ինտելիգենտների խնդրանքով... 1920 թվականի հունվարի 26»[1]:*

*Իհարկե, Թալինցի մի բուռ մտավորականների խնդրանքը չի կատարվել, ավելին՝ մնացել է անպատասխան: 1920 թվականի Թալինը զուրկ է եղել որևէ կուլտուրական օջախից: Բայց սովետական կարգերի և կոմկուսակցության հոգատարությունը փոխեցին իրավիճակը նաև այս բնագավառում: 1923 թ. Թալինի շրջանում բացվեց առաջին խրճիթ-ընթերցարանը: Ականատեսի վկայությամբ այդ օրը տոն է եղել մեր աշակերտության համար: Իսկ Թալինցի երիտասարդ տղան ու աղջիկն առաջին անգամ բեմ են բարձրացել 1926-ին:*

*Այդպիսին է եղել Թալինի երեկը: Իսկ այսօ՞րը... Այսօր մեր շրջանը պատած է կուլտուր-լուսավորական հիմնարկությունների լայն ցանցով: Այժմ շրջանում կան 5 գյուղական և շրջանային կուլտուրայի տուն, 37 ակումբ, 24 գյուղական մասսայական գրադարան, շրջանային և մանկական գրադարան, կուլտուրայի և հանգստի զբոսայգի, երաժշտական դպրոց, գործում են ժողովրդական թատրոն, գեղարվեստական ինքնագործունեության 54 խումբ ու խմբակներ: Այս ամենը ծառայում է աշխատավորության գեղագիտական մակարդակի բարձրացմանը, կուլտուրական հանգստի կազմակերպմանը, մարդկանց կոմունիստական դաստիարակությանը:*

*Կուլտուր-լուսավորական հիմնարկությունների գլխավոր հոգսը ՍՄԿԿ XXIV համագումարի նյութերի ու որոշումների բառ ամենայնի պարզաբանումն է, հնգամյակի խնդիրները լուծելու համար աշխատավորների ուժերի մոբիլիզացումը: Անցած մեկուկես տարում շրջանի աշխատավորների համար կարգացվել են հարյուրավոր դասախոսություններ, զեկուցումներ ու զրույցներ, որոնց գերակշռող մասը նվիրվել է կուսակցության XXIV համագումարի նյութերի և որոշումների մեկնաբանմանը: Նրանց նախաձեռնությամբ անցկացվում են բովանդակալից շատ միջոցառումներ: Շրջսովետի կուլտուրայի բաժինը, «Գիտելիք» ընկերության շրջանային բաժանմունքը, սկզբնական կուսկազմակերպությունները, առաջնորդվելով «Համագումարի որոշումները դարձնել յուրաքանչյուր աշխատողի գաղափարական սեփականությունը» նշանաբանով և գործնական ամուր կապի մեջ մտնելով Երևանի գիտական օջախների հետ, համատեղ ջանքերով կիրառեցին պրոպագանդիստական աշխատանքի նոր, հետաքրքրական ձևեր ու մեթոդներ: Երևանի պետական համալ-*

[1] *Հայաստանի պատմության պետական արխիվ, ֆ. 146, գ. 4, թ. 24:*

սարանի և տեղի դասախոսների ուժերով շրջանում հայտարարվեց համագումարի նյութերի պրոպագանդման միասնական օր։ Համալսարանի 10 գիտնականներ, մեր դասախոսների հետ միասին, շրջանի 20 գյուղերում զեկուցումներ կարդացին «Սովետական ժողովրդի նյութական-կուլտուրական մակարդակի բարձրացումը ՍՄԿԿ գլխավոր նպատակն է» թեմայով։ Այդ ընթացքում հայ անվանի գիտնականներն օգտակար խորհուրդներ տվեցին կուլտուր-լուսավորական օջախների աշխատողներին։

Առաջին նախաձեռնությունը մեծ աշխուժություն առաջացրեց և ցանկալի արդյունք տվեց։ Հաջորդ անգամ մեր աշխատավորության հյուրերն էին Հայաստանի գիտությունների ակադեմիայի և «Գիտելիք» ընկերության գիտնականները։ Հայտարարվեց դասախոսական շաբաթ, որի ընթացքում շրջանի շատ գյուղերում հարյուրավոր աշխատավորներ ունկնդրեցին «ՍՄԿԿ XXIV համագումարը և կոմունիստական կուսակցության լենինյան արտաքին քաղաքականության հաղթանակը» թեմայով դասախոսություններ։ Դասախոսական շաբաթը եզրափակվեց շրջանային կուսակցական-սովետական ակտիվի գիտատեսական կոնֆերանսով, ուր դասախոսություններով հանդես եկան անվանի գիտնականներ, ակադեմիկոս Հ. Մաղաքյանը և Է. Խաչատրյանը։

ՍՄԿԿ XXIV համագումարի նյութերի և որոշումների պարզաբանումն ու պրոպագանդումը շրջանի ակումբներում, կուլտուրայի տներում, գրադարաններում կատարվում են բավարար խորությամբ և հետաքրքրական։ Կուլտուր-լուսավորական օջախներում ճիշտ և խելացի են օգտագործում ցուցադրական ագիտացիայի ընձեռած հնարավորությունները։ Այս առումով խրախուսելի գործ են կատարում շրջանային կուլտուրայի տունը, Դավիթաշենի, Ն. Արթիկի, Իրինդի, Ակունքի, Ջարինջայի, Կարմրաշենի գյուղական ակումբները և Մաստարայի կուլտուրայի տունը։

Այստեղ արժե նշել Դավիթաշենի գյուղական ակումբի ու սկզբնական կուսկազմակերպության օրինակը։ Սրանից երեք տարի առաջ Դավիթաշենում կուլտուր-լուսավորական աշխատանքի վիճակը խիստ անհանգստացնող էր։ Ակումբներում չէին կազմակերպվում հետաքրքրական միջոցառումներ, չէին գործում գեղարվեստական ինքնագործունեության և այլ խմբակներ։ Այդ ամենը չէր կարող չմտահոգել կուսկազմակերպությանը և շրջանային կոմիտեին։ Ակումբի հարցը քննարկվեց կուսկազմակերպության ժողովում, ապա՝ շրջանային կոմիտեում, ձեռնարկվեցին կազմակերպական միջոցառումներ։ Ակումբի վարիչ նշանակվեց Տ. Գրիգորյանը։ Կարճ ժամանակամիջոցում ակումբը անճանաչելի դարձավ։ Կուսկազմակերպությունը խրախուսեց շնորհալի ակումբավարին։ Նրա փորձը քննարկվեց ՀԿԿ շրջկոմում, որոշվեց այն ծանոթացնել շրջանի կուլտուրայի մյուս աշխատողներին։ Տ. Գրիգորյանի աշխատանքը գնահատվեց ըստ արժանվույն. ակումբն արժանացավ ՀՍՍՀ կուլտուրայի մինիստրության փոխանցիկ դրոշին և առաջին կարգի մրցանակին։

Ո՞րն է դրականը Դավիթաշենի ակումբի գործունեության մեջ։ Առաջին հերթին այն, որ ակումբը սերտ կապ է հաստատել գյուղի աշխատավորության, մտավորականության, տնտեսության ղեկավարների հետ։ Այնտեղ սիստեմատիկաբար կազմակերպվում են դասախոսություններ, զեկուցումներ, զրույցներ, ուր հանդես են գալիս տնտեսության ղեկավարները, ուսուցիչները, ժողովրդական տնտեսության մասնագետները։ Կանոնավոր գործում է ակումբային խորհուրդը, որը յուրաքանչյուր ամիս կազմում է աշխատանքային



պլան, քննարկում ակումբի հետ առնչվող կուլտուր-լուսավորական հարցերը և հետևում դրանց ժամանակին կատարմանը։ Ակումբն ունի 17 մարդուց բաղկացած դասախոսական խումբ, որը սիստեմատիկաբար դասախոսություններ, զեկուցումներ, զրույցներ է կազմակերպում աշխատավորության համար։ Պատշաճ տեղ է տրվում ցուցադրական ագիտացիային։ Այստեղ պատրաստվում են ցուցափեղկեր, վահանակներ՝ «Հայաստանը նոր հնգամյակում», «Մեր գյուղը և շրջանը իններորդ հնգամյակում», «Թալինի շրջանի 1972 թվականի սոցիալիստական պարտավորությունները», «Մեր տնտեսության 1972 թ. սոցիալիստական պարտավորությունները» թեմաներով։ Ակումբ հաճախող ամեն մի մարդու ուշադրությունն են գրավում ՍՍՀՄ կազմավորման 50-ամյակին նվիրված ցուցափեղկերը։ Ուշագրավ են նաև գյուղի, շրջանի, ակումբի գործունեությունն արտացոլող «Մեր շքանշանակիրները», «ՍՍՀՄ կազմավորման 50 տարին» և մյուս ալբոմները։ Առավել նորն ու դրականը, որ մեծ չափով նպաստեցին ակումբի աշխատանքի բարելավմանը, բազմաբնույթ խմբակների ստեղծումն էր, նրանց գործունեության աշխուժացումը։ Այժմ ակումբին կից գործում են թատերական, երգի-պարի ինքնագործ, սպորտային, հասարակական-քաղաքական և ուրիշ խմբակներ, որոնցում ընդգրկված է գյուղի երիտասարդությունը։

ՍՍՀՄ կազմավորման 50-ամյակի առթիվ լավ աշխատանք է կատարում ժողովուրդների բարեկամության համալսարանը, որի պարապմունքների ժամանակ ունկնդիրները հաղորդակից են լինում ՍՍՀՄ եղբայրական ժողովուրդների կյանքին ու ժողովրդական տնտեսության զարգացման ասպարեզում ձեռք բերած հաջողություններին։

Ցավոք, շրջանում ամենուր չէ, որ կուսկազմակերպությունը կուլտուր-լուսավորական հիմնարկության ցույց տրվող օգնությունը համարում է իր խնդիրներից մեկը։ Նման դեպքերում, անկասկած, տուժում է աշխատավորության գաղափարական և գեղագիտական դաստիարակության գործը։ Ահա թե ինչու ՀԿԿ շրջկոմը այս կամ այն կուլտուրայի օջախի անբավարար աշխատանքի համար քննադատում է տվյալ կուսկազմակերպությանը, նրա բյուրոյին։ Անցած տարի, օրինակ, շրջկոմի բյուրոն, շրջսովետի գործկոմի հետ միասին, քննարկեց Ն. Սասնաշենի, Սաբունչիի, Ոսկեթասի, Բառոժի, Կարմրաշենի, Շղարշիկի սկզբնական կուսկազմակերպությունների գործունեությունը՝ մասսաների շրջանում տարվող կուլտուր-լուսավորական աշխատանքի կազմակերպման ասպարեզում։ Նշված ակումբ-գրադարանների աշխատողները թերանում էին իրենց պարտականությունների կատարման մեջ, վատ էին կազմակերպում աշխատավորության կուլտուրական հանգիստը, անգործության էին մատնել ինքնագործ խմբերը, աշխատավորության համար քիչ էին կազմակերպում դասախոսություններ, զեկուցումներ, զրույցներ և այլ հետաքրքրական միջոցառումներ։ Նրանք ճիշտ ընկալեցին արված արդարացի քննադատությունը և կուսկազմակերպությունների ղեկավարությամբ կարճ ժամանակում վերացրին հիշյալ թերությունները։

Գյուղական կուլտուր-լուսավորական հիմնարկության աշխատողի գործը չի սահմանափակվում ակումբի, կուլտուրայի տան կամ գրադարանի ներսում միջոցառումներ կազմակերպելով։ Չէ՞ որ հաճախ արտադրությունում զբաղված մարդը ժամանակ չի գտնում հաճախելու կուլտուրայի օջախ։ Աշխատավորության կուլտուրական սպասարկումը պատշաճ ձևով կազմակերպելու նպա-

տակով՝ կուլտուրայի բաժինը, ԼԿԵՄ շրջկոմը և «Գիտելիք» ընկերության շրջանային բաժանմունքը ՀԿԿ շրջկոմի առաջարկությամբ, շրջանի խոշոր գյուղերի ակումբներում և շրջանային կուլտուրայի տանը կազմակերպում են գեղարվեստական-ագիտացիոն բրիգադներ, որոնք պարբերաբար այցելում են կոլտնտեսությունների ու սովխոզների դաշտերում, անասնապահական ֆերմաներում աշխատող մարդկանց և հենց արտադրական տեղամասերում կազմակերպում նրանց կուլտուրական հանգիստը. ժամանակակից հրատապ հարցերի շուրջ կարդացվում են դասախոսություններ ու զեկուցումներ, տրվում են գեղարվեստական ինքնագործունեության խմբերի համերգներ։

Աշխատավորների հոգևոր պահանջմունքների բավարարման նկատմամբ կուսակցության նոր պահանջը զգալի աշխուժություն է առաջացրել գեղարվեստական ինքնագործունեության խմբերի աշխատանքում։ Այժմ շրջանում գործում է ժողգործիքների, երգի-պարի և թատերական ինքնագործ 54 խումբ։ Միայն 1971 թ. ինքնագործ խմբերի ուժերով տրվել են 258 համերգ ու թատերական ներկայացում։ Այս առումով լավ գործ են կատարում Շրջկենտրոնի, Մաստարայի, Արագածի, Կարմրաշենի, Դավիթաշենի, Իրինդի, Ն. Արթիկի կուլտուրայի տներն ու ակումբները։ Աշնակի կուլտուրայի տան սասունցիների պարերի խմբի համբավը վաղուց ի վեր դուրս է եկել մեր հանրապետության սահմաններից։ Խումբն անցյալ տարի ներկայացումներով հանդես է եկել Մոլդավիայում և մեր հանրապետության շատ շրջաններում։ Դրվատանքի է արժանի ժողովրդական թատրոնի վերջին երկու տարվա գործունեությունը։ Շրջանի աշխատավորությանը գեղարվեստական մեծ բավականություն են պատճառում շրջանային կուլտուրայի տան էստրադային նվագախմբի և կուլտուրայի բաժնի աշխատողների քառաձայն երգչախմբի ելույթները։

Սակայն, ինչպես ամենուր, այնպես էլ Թալինում այժմ բարձրացել է մարդկանց գեղարվեստական ճաշակը։ Հետևաբար, միայն ժողովրդական ինքնագործունեությամբ հնարավոր չէ գոհացնել աշխատավորության աճող հոգևոր պահանջմունքները։ Նկատի առնելով այս՝ կուլտուրայի բաժինը սերտ համագործակցություն է հաստատել հանրապետությունում գործող թատրոնների, երգչախմբային ընկերությունների, երգի-պարի անսամբլների կոլեկտիվների հետ։ Վերջին մեկ տարում շրջանային կուլտուրայի տանը և գյուղական ակումբներում բազմիցս ելույթներ են ունեցել Երևանի Գ. Սունդուկյանի անվան պետական ակադեմիական թատրոնի փառաբանված կոլեկտիվը, Հ. Պարոնյանի անվան երաժշտական կոմեդիայի, Լենինականի, Կիրովականի պետական թատրոնները, Կամոյի, Արտաշատի միջշրջանային պետթատրոնները, հանրապետության երգչախմբային ընկերության խմբերը, երգի-պարի վաստակավոր անսամբլը և պրոֆեսիոնալ այլ կոլեկտիվներ։

Այժմ սովետական բովանդակ երկրի բազմազգ ժողովուրդները լայնորեն նախապատրաստվում են նշելու ՍՍՀՄ կազմավորման 50-ամյակը։ Փառապանծ տարելիցն արժանավայել դիմավորելու համար լուրջ ու պատվաբեր դեր ունեն նաև կուլտուր-լուսավորական հիմնարկությունները։ Այս ասպարեզում շրջանի ակումբներն ու գրադարանները հարուստ փորձ են ձեռք բերել։ Ավելին, վերջերս ՀՍՍՀ կուլտուրայի մինիստրության կոլեգիան, լսելով Թալինի շրջսովետի գործկոմի կուլտուրայի բաժնի վարիչ Բ. Հարոյանի զեկուցումը,



հանձնարարեց կուլտուրայի մինիստրության գիտա-մեթոդական կաբինետին՝ առանձին գրքույկով հրապարակել Թալինի շրջանի կուլտուր-լուսավորական հիմնարկությունների աշխատանքի փորձը՝ ՍՍՀՄ կազմավորման 50-ամյա հոբելյանի տոնակատարության նախապատրաստման բնագավառում։ Ո՞րն էր արժեքավորն ու հետաքրքրականը նրանց գործունեության մեջ։ Ամենակարևորը՝ ՍՍՀՄ կազմավորման 50-ամյակի նախապատրաստությունը հանրապետությունում առաջինը նախաձեռնեցին մեր շրջանի կուլտուր-լուսավորական հիմնարկությունների աշխատողները։ Դա 1971 թ. հունվարին էր։ Երկարատև նախապատրաստությունից հետո, մայիսի 25-ին, շրջանային կուլտուրայի տունը կազմակերպեց 15 հանրապետություններին նվիրված բարեկամության երեկո։ Այդ օրը վաղ առավոտից կուլտուրայի տան ռադիոհանգույցն սկսեց աշխատել և հաղորդել եղբայրական հանրապետությունների ժողովուրդների ազգային երաժշտություն։ Հետաքրքրասիրությունը մարդկանց ակամա ձգում էր դեպի Սովետական Միության և բոլոր հանրապետությունների պետական դրոշներով ու գերբերով զարդարված շենքը։ Այստեղ կազմակերպված էր նաև 15 հանրապետությունների այսօրն արտացոլող ցուցահանդես...

Հաջորդ օրն ամփոփեցինք բարեկամության առաջին երեկոյի արդյունքները և որոշեցինք յուրաքանչյուր ամսի 25-ը շրջանում հայտարարել բարեկամության օր՝ նվիրված այս կամ այն հանրապետությանը։ Որոշմանը հետևեց գործը։ Կուլտուր-լուսավորական հիմնարկությունները, համակողմանի աջակցություն ստանալով կուսակցական, սովետական, կոմերիտական կազմակերպություններից, հիանալի նախապատրաստվեցին այդ միջոցառումներին։ Առանձնապես անմոռանալի են ՌՍՖՍՀ-ին նվիրված օրերը (1971 թ. դեկտեմբերի 20—23-ը)։ Իսկական տոն էր շրջանում։ Տոնակատարությանը մասնակցելու էր եկել Նովոչերկասկ քաղաքի կուլտուրայի աշխատողների պատվիրակությունը (այդ թվում՝ քաղաքային կուլտուրայի տան «Կովիլյոկ» պարային անսամբլը)։ Մեր ռուս բարեկամները եղան շրջանի մի շարք գյուղերում, հանդիպումներ ունեցան աշխատավորության ու մտավորականության հետ և համերգներ տվեցին։ Աշնակ և Դավիթաշեն գյուղերի աշխատավորները հյուրերին դիմավորեցին հայկական ազգային ավանդական սովորությամբ՝ աղ ու հացով, նվագով, պարով... Թալինցիների հիշողության մեջ երկար կմնա 1971 թ. դեկտեմբերի 21-ի երեկոն, որը կազմակերպվեց շրջանային կուլտուրայի տանը։ «Փառք ռուս մեծ ժողովրդին» ընդհանուր խորագրով բացված ցուցահանդեսը դիտելուց հետո, հանդիսականները մտնում են դահլիճ։ Ահա լռում է ռադիոհանգույցով տրվող երաժշտությունը։ Հանկարծ լսվում է Վ. Ի. Լենինի ձայնը, ու մեկեն խոր լռություն է հաստատվում դահլիճում, հետո մեծ Լենինի սիրած «Վարշավյանկա» և «Անվախ ընկերք» երգերն են հնչում հանդիսատեսին։ Հայ և ռուս ժողովուրդների դարավոր բարեկամությանը նվիրված զեկուցումից հետո տրվում է համերգ։

Բարեկամության օրերին Նովոչերկասկի և Թալինի կուլտուրայի բաժինները որոշեցին հետագայում ևս կազմակերպել փոխայցելություններ, որոնք է՛լ ավելի կամրապնդեն երկու կոլեկտիվների բարեկամությունը։

ՍՍՀՄ կազմավորման 50-ամյակին նվիրված հետաքրքրական շատ միջոցառումներ են անցկացվել շրջանում։ Դրանցից մեկը ընթացիկ տարվա փետրվարի 3-ին Հակկո գյուղում կազմակերպված շրջանի հայ և քուրդ աշխատավորների ու մտավորականության ներկայացուցիչների հանդիպումն էր,

որին մասնակցում էին նաև մայրաքաղաքից ժամանած քուրդ անվանի գրողներ, բանաստեղծներ, լրագրողներ, պետական և հասարակական գործիչներ։

Շրջանի աշխատավորները ցնծությամբ դիմավորեցին եղբայրական Վրաստանի պատվիրակներին, որոնց ժամանումը վերածվեց հայ և վրաց ժողովուրդների դարավոր բարեկամությունն արտահայտող վառ ցույցի։ Առաջիկայում մեր հյուրերը կլինեն եղբայրական Ուզբեկստանի և Էստոնիայի կուլտուրայի աշխատողները։

Կուսշրջկոմի բյուրոն վերջերս քննարկեց ՍՍՀՄ կազմավորման 50-ամյակի առթիվ շրջանում կազմակերպվող միջոցառումների հարցը։ Բյուրոն հավանություն տվեց կուլտուրայի բաժնի գործունեությանը և ընդունեց կոնկրետ որոշում։ Դրա համաձայն Վ. Թալինում, Արագածում և Մաստարայում ստեղծեցինք ժողովուրդների բարեկամության համալսարաններ։ Շրջկոմի բյուրոն պարտավորեցրեց սկզբնական կուսկազմակերպություններին, կուլտուր-լուսավորական հիմնարկություններին, ի պատիվ մեծ տարելիցի, ծավալել ցուցադրական լայն ագիտացիա. ակումբներում, գրադարաններում ստեղծել ցուցահանդեսներ, ստենդներ՝ նվիրված 15 եղբայրական հանրապետությունների գիտության ու կուլտուրայի և ժողովրդական տնտեսության մյուս բնագավառներում ձեռք բերած նվաճումներին։ Վերանայվեց շրջկոմի դասախոսական խմբի թեմատիկ պլանը, հանձնարարվեց դասախոսական խմբին և «Գիտելիք» ընկերության շրջանային բաժանմունքին՝ աշխատավորության համար կազմակերպել դասախոսություններ, զեկուցումներ, զրույցներ՝ նվիրված ՍՍՀՄ ժողովուրդների անխախտ բարեկամությանը։

Շրջանի կուլտուր-լուսավորական հիմնարկությունները ՍՄԿԿ XXIV համագումարից հետո կատարել են բավականաչափ լավ գործեր, հանդես եկել հետաքրքրական շատ նախաձեռնություններով։ Դրական այդ պրոցեսը շարունակվում է։ ՍՄԿԿ XXIV համագումարի նյութերի և որոշումների պրոպագանդումն ու պարզաբանումը և ՍՍՀՄ կազմավորման 50-ամյակի տոնակատարության նախապատրաստությունը մնում են նրանց գործունեության կարևոր բնագավառները։ Դրան էր ուղղված շրջանի կուլտուր-լուսավորական հիմնարկությունների աշխատողների հայրենասիրական նոր նախաձեռնությունը։ Վերջերս նրանք դիմում ուղղեցին հանրապետության կուլտուր-լուսավորական բնագավառի աշխատողներին՝ ՍՍՀՄ կազմավորման փառապանծ 50-ամյակի տոնակատարությունը լավագույն գործերով դիմավորելու համար։ Նրանք պատրաստակամություն են հայտնում խորությամբ պարզաբանելու ՍՄԿԿ XXIV համագումարի որոշումների իմաստն ու նշանակությունը, ակտիվորեն մասնակցելու նոր մարդու դաստիարակության մեծ և բարդ գործին, գեղարվեստական ինքնագործ խմբերի, պետական թատրոնների, համերգային անսամբլների միջոցով արմատապես բարելավելու գյուղի աշխատավորների կուլտուրական սպասարկումը։ Հարազատ մնալով իրենց ընդունած դիմումին՝ շրջանի կուլտուր-լուսավորական հիմնարկությունները շարունակում են եղբայրական հանրապետություններին նվիրված բարեկամության օրերը, հանրապետության գիտական օջախների և ստեղծագործական միությունների հետ կազմակերպում են գիտատեխնիկական սեսիաներ և կոնֆերանսներ, կուլտուրայի և արվեստի փառատոներ, թատերականացված հանդեսներ, բանավոր ամսագրեր և թեմատիկ երեկոներ, երիտասարդական բանավեճեր և ակումբային «օգոնյոկներ», հնարամիտների և ուրախների մրցույթներ, պոե-



զիայի երեկոներ։ Դիմումով նախատեսվում է շահագործման հանձնել կուլտուրայի տուն և ակումբային հինգ նոր շենք, կուլտուրայի բոլոր օջախներն ապահովել հեռուստացույցներով, ռադիոընդունիչներով և տեխնիկական այլ միջոցներով, շրջկենտրոնում բացել գավառագիտական թանգարան, վեց գրադարան փոխադրել նոր ու հարմարավետ շենքեր։

Կուլտուր-լուսավորական հիմնարկությունները եղել և մնում են որպես մասսայական-քաղաքական աշխատանքի, աշխատավորության գաղափարական, գեղագիտական դաստիարակության, հոգևոր պահանջմունքների բավարարման, նոր մարդու բարոյական կերպարի ձևավորման ամենամասսայական և հուսալի օջախներ։ Տարիների փորձը համոզում է, որ որտեղ լավ է կազմակերպվում մարդկանց գաղափարական դաստիարակության գործը, այնտեղ շահում է արտադրությունը, ավելի ակնհայտ է դրսևորվում աշխատանքի նկատմամբ կոմունիստական վերաբերմունքը։ Հաշվի առնելով կուլտուր-լուսավորական հիմնարկությունների այս կարևոր դերը, հատկապես վերջին տարիներին, ՀԿԿ շրջկոմը, շրջսովետի գործկոմը, սկզբնական կուսակցական ու կոմերիտական կազմակերպությունները մեծ հոգատարություն են ցուցաբերում ակումբների, կուլտուրայի տների, գրադարանների նկատմամբ, օգնում են դրանց նյութատեխնիկական բազայի ընդլայնմանն ու ամրապնդմանը, բարձրորակ կադրերով ապահովմանը։ Այս ասպարեզում ևս հաջողություններն ակնհայտ են։ Վերջին մի քանի տարում շրջանի 6 գյուղերում վերակառուցվել են կուլտուրայի տների հին շենքերը, շահագործման է հանձնվել շրջանային կուլտուրայի տունը՝ 600 տեղանոց իր հոյակապ դահլիճով։ Աշխատավորության առջև շուտով իր դռները լայնորեն կբացի Արագած ավանի 400 տեղանոց դահլիճով կուլտուրայի նոր տունը։ Նոր կուլտուրայի տներ ու ակումբներ են կառուցվում Արտենի և Քարակերտ ավաններում, Կաթնաղբյուր, Ն. Բազմաբերդ և Կաքավաձոր գյուղերում։

Տարեցտարի բարձրանում է կուլտուրայի օջախների տեխնիկական հագեցվածությունը։ Այնուհանդերձ, շրջանի կուլտուր-լուսավորական հիմնարկությունների գործունեության մեջ կան թերություններ։ Բանն այն է, որ ոչ բոլոր կուլտուրայի օջախներն են իրենց աշխատանքը վերակառուցել նոր պահանջների ոգով։ Որոշ ակումբներ ու գրադարաններ դեռևս շարունակում են կառչած մնալ ինչ-որ ժամանակաշրջանում իրենց արդարացրած, բայց այսօրվա պահանջներին արդեն չհամապատասխանող աշխատանքային ձևերին ու մեթոդներին։ Շրջանի մի շարք փոքր բնակավայրերի կուլտուրայի օջախները չունեն նյութատեխնիկական բավարար պայմաններ։ Չնայած զգալի տեղաշարժերին, բայց և այնպես դեռևս չլուծված հարցեր կան նաև կուլտուրայի օջախները բարձր որակավորում ունեցող մասնագետներով ապահովելու գործում։

ՀԿԿ Թալինի շրջկոմը, սկզբնական կուսկազմակերպություններն ամեն ինչ անում են և կանեն կուլտուր-լուսավորական հիմնարկությունների արդյունավետությունն ապահովելու, աշխատավորության գաղափարական-գեղագիտական դաստիարակությունը է՛լ ավելի լավ կազմակերպելու համար։

---

# ՔԻՄԻԱՑՈՒՄԸ ԵՎ ՏԵԽՆԻԿԱԿԱՆ ՊՐՈԳՐԵՍԸ

Վ. Տ. ԿԻՐԱԿՈՍՅԱՆ

ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության զարգացման տվյալ փուլում գլխավոր խնդիրը գիտատեխնիկական առաջադիմության արագացման հիման վրա հանրային արտադրության արդյունավետության բարձրացումն է, էկոնոմիկայի բոլոր ճյուղերի զարգացման բարձր տեմպերի ապահովումը։

«Գիտատեխնիկական առաջադիմության վճռական արագացումը,— նշեց Լ. Ի. Բրեժնևը կուսակցության XXIV համագումարում,— մնում է գլխավոր խնդիրներից մեկը։ Այն դարաշրջանում, երբ ավելի ու ավելի մեծ չափով է դրսևորվում գիտության, որպես անմիջական արտադրաուժի, դերը, գլխավոր են դառնում արդեն ոչ թե նրա առանձին նվաճումները, որքան էլ փայլուն լինեն դրանք, այլ ամբողջ արտադրության գիտատեխնիկական բարձր մակարդակը» (ՍՄԿԿ XXIV համագումարի նյութերը, էջ 73)։ Գիտատեխնիկական առաջադիմությունն աշխատանքի բնույթի փոփոխության նյութական հիմքն է։ Այն իր մեջ ներառնում է արտադրության համալիր՝ ավտոմատացումն ու մեքենայացումը, քիմիացումը և էլեկտրիֆիկացումը։ Արտադրության տեխնիկական զարգացումը հրամայաբար պահանջում է ստեղծել համապատասխան նյութեր։ Դրան հնարավորություն է ընձեռում քիմիան։ Սրա օգնությամբ ստացվում են բարձր հատկություններով օժտված նյութեր, որոնք անհրաժեշտ են արդի գիտատեխնիկական հեղաշրջումն արագացնելու համար։ Գիտատեխնիկական հեղաշրջման ծավալմանը զուգընթաց մեխանիկական մշակումը, որը գերազանցապես տիրապետող էր մեքենայական հեղաշրջումից հետո, իր տեղն աստիճանաբար զիջում է քիմիականին։ Իրականանում է Մարքսի այն հանճարեղ կանխագուշակումը, որ մարդու կողմից քիմիական մեթոդներին և ռեակցիաներին տիրապետելու հետ միասին, մեխանիկական մշակումը ավելի ու ավելի է իր տեղը զիջում քիմիական մշակմանը, որի ընթացքում փոխվում է ո՛չ միայն նյութի ձևը, այլ նրան տրվում են որակական նոր վիճակ, մարդու համար անհրաժեշտ հատկություններ։

Արտադրության քիմիացումը հսկայական դեր է կատարում մեքենաշինական արտադրության առաջընթաց աճի տեմպերի ապահովման համար, իսկ մեքենաշինությունն այն ճյուղն է, որի արագ զարգացմամբ է որոշվում ժողովրդական տնտեսության տեխնիկական առաջընթացը։ 1960—1970 թթ. սև մետաղագործության (որը մեքենաշինության գլխավոր հումքային բազան է) արտադրությունն աճել է 1,8, իսկ մեքենաշինության և մետաղամշակման արտադրության արդյունքի թողարկումը՝ 3,12 անգամ։ Մեքենաների թողարկման այսպիսի արագ աճը զգալի չափով այդ ճյուղի քիմիացման արդյունք է, որը,



բարելավելով պողպատի որակը, իջեցրել է դրա ծախսումը սարքավորման մեկ միավորի վրա և բարձրացրել մեքենայի հզորությունը։ Դրան նպաստել է նաև այն, որ սև մետաղի փոխարեն լայնորեն կիրառվել են սինթետիկ պոլիմերային նյութեր՝ ամենից առաջ սինթետիկ ձյութ և պլաստմասսա։

Տեխնիկական առաջընթացը մեքենաշինության այնպիսի կարևորագույն ճյուղում, ինչպիսին է էլեկտրատեխնիկական արդյունաբերությունը, անհնարին է առանց հատուկ բարձր պոլիմերային նյութերի ներդրման, որոնք ունեն մեխանիկական մեծ ամրություն, քիմիական կայունություն և ցածր էլեկտրահաղորդականություն։ Դրանք փոխարինում են թանկարժեք գունավոր մետաղներին, հատկապես պղնձին, նիկելին, ինչպես նաև կապարին։ Կաբելային արդյունաբերության մեջ օգտագործվող սինթետիկ նյութերի յուրաքանչյուր հազար տոննան թույլ է տալիս տնտեսելու 750—800 տոննա կապար, 50 տոննա բամբակյա թել և 130—150 տոննա կաուչուկ։ Անհրաժեշտ է ընդգծել, որ այստեղ խոսքը վերաբերում է ո՛չ թե գունավոր մետաղները պարզապես ավելի էժան սինթետիկ նյութերով փոխարինելուն, այլև մեծ մասամբ տեխնիկական անհրաժեշտությանը։ Այսպես, Միության մեքենաշինական և մետալուրգիական գործարաններում տեղադրված 0,8—100 կվտ հզորության 120 հազար էլեկտրաշարժիչների ուսումնասիրությունը ցույց է տվել, որ դրանց վթարի 80 տոկոսը կապված է էլեկտրամեկուսիչների ժամանակից շուտ շարքից դուրս գալու հետ, որոնք պատրաստված են բնական նյութերից։ Դրանց ծառայության փաստացի ժամկետը չի անցնում 3,5—4 տարուց, այնինչ նորմատիվայինը պետք է կազմեր 10—12 տարի։ Բավական է ասել, որ մեր երկրում տարեկան արտադրված էլեկտրաշարժիչների 15 տոկոսը փոխարինում է շարքից դուրս եկածներին։ Եվ ահա այդ մեկուսիչները սինթետիկ պոլիմերային նյութերից պատրաստելիս, հնարավորություն է տալիս էլեկտրաշարժիչների շահագործման ժամկետները երկարացնել 2—3 անգամ, 25—30 տոկոսով փոքրացնելով դրանց արտաքին չափերն ու կշիռը։

Պոլիմերային սինթետիկ նյութերը լայն կիրառվում են նաև հաստոցաշինության մեջ։ Այժմ արդեն կան խառատային, ֆրեզերային, հղկող և այլ հաստոցներ, որոնց բազմաթիվ դետալներ պատրաստվում են պլաստմասսաներից։ Դրանք հիմնականում փոխարինում են չծանրաբեռնված կամ քիչ ծանրաբեռնված դեֆիցիտային գունավոր մետաղներից պատրաստվող դետալներին։ Ի տարբերություն գոյություն ունեցող հաստոցների, պլաստմասսայի դետալներով հաստոցներն աչքի են ընկնում շահագործման մեծ ժամկետներով, պատրաստման պարզությամբ և էժանությամբ։ Բացի դրանից, այդ հաստոցներն ավելի ճշգրիտ են, արագընթաց և անաղմուկ։ Մեր հանրապետության համար, որն ունի բարձր զարգացած հաստոցաշինական արդյունաբերություն, մեծ նշանակություն ունի հաստոցների և սարքավորումների առանձին դետալները սինթետիկ նյութերով փոխարինելը։ Պոլիմերային նյութերի ներդրումը այս ճյուղում լայն հնարավորություններ է ստեղծում կրճատելու հաստոցների առանձին մասերի պատրաստման աշխատատարությունը, իջեցնելու քաշը, երկարացնելու դրանց ծառայության ժամկետները և տնտեսելու զգալի քանակությամբ սև և գունավոր մետաղներ։ Այսպես, օրինակ, Կիրովականի գերճշգրիտ հաստոցների գործարանում սերիական արտադրության հաստոցների ավելի քան 35 մաս պատրաստվում է պլաստմասսայից։ Իսկ այնպիսի հաստոց, ինչպիսին է «4531» մակնիշի էլեկտրակայծային հաստոցը, որտեղ մե-

տաղի կտրումն իրականացվում է էլեկտրական հոսանքի միջոցով, պլաստմասսաների կիրառումը տեխնիկական անհրաժեշտություն է։ Այլ խոսքով, այստեղ այն հանդես է գալիս ո՛չ թե որպես փոխարինիչ, այլ տրադիցիոն նյութ։ Դրանց կիրառումը Կիրովականի հաստոցաշինական գործարանում հնարավորություն է ընձեռում դետալների պատրաստման աշխատատարությունը կրճատելու 2—5, ինքնարժեքն իջեցնելու 1,5—2 և դետալների քաշը պակասեցնելու 3—8 անգամ։

Եթե Կիրովականի հաստոցաշինական գործարանում հաստոցների առանձին մետաղյա դետալները պլաստմասսայով փոխարինելու ասպարեզում հասել են զգալի հաջողությունների, ապա նույնը չի կարելի ասել հանրապետության մյուս հաստոցաշինական գործարանների վերաբերյալ։ Այսպես, Երևանի Ձերժինսկու անվան հաստոցաշինական գործարանում օգտագործվող պլաստմասսայե դետալների թիվը չի անցնում 11-ից, ֆրեզերային հաստոցների գործարանում՝ 14-ից։ Այն դեպքում, երբ Միության համանման գործարաններում դրանց թիվը հասնում է 30—50-ի։

Հայաստանի մեքենաշինության, մասնավորապես հաստոցաշինության մեջ պոլիմերային սինթետիկ նյութերի կիրառման հարցերով զբաղվում է Հայաստանի մեքենաշինության գիտահետազոտական ինստիտուտի ոչ մետաղյա իրերի լաբորատորիան, որն ստեղծվել է 1962 թվականին։ Լաբորատորիան 1962—1970 թթ. ընթացքում փորձարկել և երաշխավորել է հաստոցաշինական գործարաններին՝ կիրառելու ավելի քան 230 անուն տարբեր դետալներ։ Բայց, ցավոք, առ այսօր ձեռնարկություններում ներդրվել են շատ քիչ դետալներ։ Ինստիտուտում այժմ լայն աշխատանքներ են տարվում պլաստմասսայե դետալները մեքենաշինության մեջ լայն չափով արմատավորելու համար։ Այսպես, 1970 թ. Լենինականի հղկիչ հաստոցների և Ուլյանովսկի մարզի Բարիշ քաղաքի ռեդուկտորների գործարաններում փորձարկվեցին և հավանության արժանացան ինստիտուտում մշակված 8 տարբեր պլաստմասսայե դետալներ, որոնք ստացվում են թաց մամլման մեթոդով և համարյա մեխանիկական մշակում չեն պահանջում և հսկայական մետաղ ու միջոցներ են տնտեսում։ Այսպես, Լենինականի հղկիչ հաստոցների գործարանում արտադրվող «3բ12» մոդելի ունիվերսալ կլոր հղկման հաստոցի փոկանիվները, որոնք պատրաստվում էին ալյումինից և պողպատից, առաջարկվել է փոխարինել պլաստմասսայով։ Այդ միջոցառումը հնարավորություն կընձեռի դետալների պատրաստման աշխատատարությունը կրճատել ավելի քան 3, ինքնարժեքն իջեցնել մոտ 3,2, քաշը պակասեցնել մոտ 3—8 անգամ։ Դա կապահովի տարեկան 4826 կգ ալյումինի և 8970 կգ պողպատի տնտեսում, իսկ ինքնարժեքի իջեցումից ստացված խնայողությունը կկազմի 8404 ռուբլի։ Այն իրականացնելու համար կպահանջվի ընդամենը 1283 կգ պլաստմասսայի այնպիսի տեսակ, ինչպիսին է վոլոկնիտը։

Երևանի արմատուրային գործարանն արտադրում է էլեկտրոհիդրավլիկ ռելեներ, որոնք մեծ քանակությամբ արտահանվում են Գերմանական Դեմոկրատական Հանրապետություն։ Այդ ռելեների դետալները հիմնականում պատրաստվում էին լատունից։ 1970 թ. այդ թանկարժեք գունավոր մետաղը փոխարինվեց կապրոնով, որի շնորհիվ տնտեսվում են մեծ քանակությամբ նյութական և աշխատանքային ռեսուրսներ։

Մետաղյա դետալները պլաստմասսաներով փոխարինելը, անշուշտ, օգուտ



է բերում մեր ժողովրդական տնտեսությանը. սակայն վատ ջերմահաղորդականության պատճառով շփման հանգույցներում դրանք չեն դիմանում և ժամանակից շուտ շարքից դուրս են գալիս։ Այս թերությունը վերացնելու նպատակով՝ սրպտումները հանգեցրին մետաղապլաստների (մետաղի, կապրոնի և գրաֆիտի փոշիների խառնուրդ) ստեղծմանը։ Դրանից ստացվող դետալները նույնպես մշակվում են տաք մամլման եղանակով։

Մետաղապլաստներից պատրաստված դետալների փորձարկումները ցույց տվեցին, որ նոր նյութն ավելի լավ է շփման հանգույցներում, քան նույնիսկ բրոնզից պատրաստվածները։ Այս դետալներից մի քանիսը ստուգվեցին ՍՍՀՄ գիտությունների ակադեմիայի մեքենաշինության համամիութենական գիտահետազոտական ինստիտուտում և հավանության արժանացան։

Մեծ է պլաստմասսաների դերը քիմիական մեքենաշինության մեջ։ Այս ճյուղում պլաստմասսաների գերակշռող մասն օգտագործվում է ֆիլտրների, ցենտրիֆուգաների, սեպարատորների և ներքին խողովակային բարդ կառուցվածք ունեցող ապարատների պատրաստման համար։ Բավական է ասել, որ մեր երկրում քիմիական մեքենաշինության համախառն արտադրանքի մոտ 13 տոկոսը թողարկվում է պլաստմասսաների և սինթետիկ ձյութերի օգտագործմամբ։ Պլաստմասսաների լայն կիրառումը քիմիական մեքենաշինության մեջ բարելավում է քիմիական ապարատների շահագործման ցուցանիշները, թեթևացնում դրանց քաշը և տնտեսում մեծ քանակությամբ գունավոր մետաղներ։ Լենինգրադի Օխտինսկի գործարանն արտադրում է 6—150 մմ տրամագծով և 4 մետր երկարությամբ պլաստմասսայից խողովակներ, որոնք դիմանում են մինչև 6 մթն ճնշման։ Դրանք փոխարինում են արտադրության ղանական ագրեսիվ պայմաններում օգտագործվող այն խողովակներին, որոնք պատրաստվում են թանկարժեք չժանգոտվող պողպատից, կապարից, պղնձից և այլ գունավոր մետաղներից։ Այս խողովակներն ունեն մեխանիկական բարձր ամրություն, քիմիական մեծ կայունություն և փոքր կշիռ։ Դրանք 7—10 անգամ թեթև են չուգունից և 3—6 անգամ՝ պողպատից։ Մեր հանրապետության քիմիական մեքենաշինության մեջ պլաստմասսաները օգտագործվում են շատ աննշան քանակությամբ։ Օրինակ, Երևանի հիդրոպոմպերի գործարանը պլաստմասսայից պատրաստում է ընդամենը 3 դետալ։ Մինչդեռ ուսումնասիրությունները ցույց են տալիս, որ հիդրոպոմպերի գործարանի թողարկած «2K—6» մակնիշի կենտրոնախույս պոմպի 13 դետալներից 7-ը հնարավոր է փոխարինել պլաստմասսայով։ Դա հնարավորություն կընձեռի պոմպի քաշը պակասեցնելու 12 տոկոսով, կրճատելու դետալների պատրաստման աշխատատարությունը և իջեցնելու ինքնարժեքը։ Այսպես, «2K—6» մակնիշի պոմպի միայն բանվորական անիվը, չուգունի փոխարեն պոլիպրոպիլենից պատրաստելիս, նրա քաշը պակասում է 11,5, աշխատատարությունը՝ 14, ինքնարժեքը՝ ավելի քան 4 անգամ[1]։

Երևանի կոմպրեսորների գործարանում արտադրվում են «ՎՈՒ—3/8» և «ՎՈՒ—3/8վ» մակնիշի նոր տեսակի կոմպրեսորներ, որոնք կարող են աշխատել 50 աստիճան ջերմության և 100 աստիճան խոնավության պայմաններում։ Այս կոմպրեսորների ավելի քան 8 դետալներ պատրաստվում են պլաստմասսայից։ Չնայած դա շատ քիչ է Միության համանման ձեռնարկությունների համեմատությամբ, բայց դրանց տված տնտեսական և տեխնիկական ար-

1 Հաշվարկները կատարվել են մեր կողմից, գործարանների տվյալների հիման վրա։

դյունքն ակնհայտ է։ Այսպես, այդ կոմպրեսորների պոմպերի չուգունյա աջ և ձախ կափարիչները վոլոկնիտով փոխարինելիս, այդ դետալների քաշը իջել է ավելի քան 6, ինքնարժեքը՝ 2,5 անգամ, աշխատատարությունը կրճատվել է 8 անգամ։

Պլաստմասսաները և սինթետիկ ձյութերը լայն չափով կիրառվում են նաև սարքաշինության մեջ։ Վերջինս համարվում է մեքենաշինության այն ճյուղերից մեկը, որն առաջինն ապացուցեց պլաստմասսաների և սինթետիկ ձյութերի կիրառման նպատակահարմարությունը։ Այստեղ պլաստմասսաներն օգտագործվում են պատյանների, իրանների, վռանների և բազմաթիվ այլ դետալների պատրաստման համար։ Սարքաշինության մեջ պլաստմասսաները փոխարինում են թանկարժեք, սև և գունավոր մետաղների։ Ըստ որում, սարքաշինությունն օգտագործում է այնպիսի համաձուլվածքներ, որոնք իրենց տեխնիկական հատկություններով գերազանցում են բոլոր մետաղներին։ Այս ճյուղի զարգացման համար կարևոր նշանակություն ունի բարձրորակ տեխնիկական քարերի արտադրությունը, որով և պայմանավորված է սարքերի ճշգրիտ աշխատանքը։ Այդպիսի բարձրորակ տեխնիկական քարեր ստացվում են նաև արհեստական ճանապարհով։ Օրինակ՝ Կիրովականի քիմիական կոմբինատում արտադրվում է կորունդ, որն իր կարծրությամբ մոտենում է ադամանդին։ Մեր հանրապետության սարքաշինության մեջ նույնպես օգտագործվում են զգալի քանակությամբ պլաստմասսաներ։ Բայց դա դեռևս շատ քիչ է, եթե նկատի ունենանք մեր հանրապետության սարքաշինության թողարկած արտադրատեսակները, քանակը և զարգացման հեռանկարները։ Պլաստմասսաները սարքաշինության մեջ համարվում են ո՛չ միայն փոխարինիչներ, այլ դրանք սարքերին տալիս են մի շարք նոր հատկություններ՝ թեթևություն, խոնավակայունություն և կայունություն ագրեսիվ միջավայրում։

Ընթացիկ հնգամյակում (1971—1975 թթ.) նախատեսվում է քիմիական և նավթաքիմիական արդյունաբերության արտադրանքի թողարկումն ավելացնել մոտավորապես 1,7, այդ թվում՝ պլաստմասսայինը և սինթետիկ ձյութինը՝ 2, կաուչուկինը՝ 1,77, կենցաղային քիմիայի ապրանքներինը՝ 1,9 անգամ, այն դեպքում, երբ արդյունաբերության ամբողջ արտադրանքը նախատեսվում է ավելացնել 42—46 տոկոսով։

1975 թ. պլաստմասսաների և սինթետիկ ձյութերի արտադրությունը նախատեսվում է հասցնել 3,3—3,4 մլն տոննայի, որը գերազանցում է 1970 թ. մակարդակը մոտավորապես 2, իսկ 1965-ինը՝ 4 անգամ։ Դրա հետ մեկտեղ, ինչպես նշված է ՍՄԿԿ XXIV համագումարի դիրեկտիվներում, անհրաժեշտ է. «Բարելավել պլաստմասսաների և դրանցից պատրաստվող առարկաների որակը, յուրացնել մեծ դիմացկունություն ունեցող, ջերմակայուն, էլեկտրամեկուսիչ, ժանգակայուն և այլ նոր տեսակի պոլիմերային նյութերի արտադրությունը։ Մինչև հնգամյակի վերջը սինթետիկ ձյութերի և պլաստմասսաների թողարկման ընդհանուր ծավալի մեջ թերմոպլաստների արտադրության տեսակարար կշիռը հասցնել 40—43 տոկոսի» (ՍՄԿԿ XXIV համագումարի նյութերը, էջ 334)։

Նոր հնգամյակում առաջընթաց քայլ կկատարվի նաև մեր հանրապետության քիմիական արդյունաբերության մեջ։ Նախատեսվում է հատկապես ավելացնել պլաստմասսաների և սինթետիկ ձյութերի, քիմիական թելերի, հանքային պարարտանյութերի և քիմիական այլ նյութերի արտադրությունը։



1975 թ., 1970 թ. համեմատությամբ, քիմիական արդյունաբերության արտադրանքի արտադրությունը կաճի 47 տոկոսով։

Մեր հանրապետության մեքենաշինական ձեռնարկություններում պլաստմասսաների և սինթետիկ ձյութերի զանգվածային ներդրումը անխզելիորեն կապված է պլաստմասսաների արտադրության ծավալից և դրանց վերամշակումից։ Չնայած անցած հնգամյակում զգալի չափով ավելացան պլաստմասսաների արտադրության և վերամշակման կարողությունները, այնուամենայնիվ, այն չի բավարարում հանրապետության արդյունաբերության, մասնավորապես մեքենաշինության, հարաճուն պահանջները։ Ուսումնասիրությունները ցույց են տվել, որ պլաստմասսայե իրերի պահանջը տարեկան տասնյակ հազարավոր տոնների է հասնում, այն դեպքում, երբ հանրապետությունում պլաստմասսաներ վերամշակող ձեռնարկությունների կարողությունն անցյալ հնգամյակի վերջում կազմում էր ընդամենը 5 հազար տոննա։ Ներկայումս գոյություն ունի պլաստմասսաների վերամշակման երկու մասնագիտացված ձեռնարկություն՝ Էջմիածնի պլաստմասսաների և Երևանի «Պոլիպլաստ» գործարանները։ Բացի նշվածներից, մեքենաշինական մի քանի ձեռնարկություններում՝ Վ. Ի. Լենինի անվան էլեկտրամեքենաշինական, Ճշգրիտ չափիչ սարքերի, Լենինականի հղկիչ հաստոցների, Կիրովականի «Ավտոմատիկա» և գերճշգրիտ հաստոցների գործարաններում և այլն կան պլաստմասսաների վերամշակման տեղամասեր։

Մեքենաշինական ձեռնարկությունների փոքրիկ տեղամասերում ռացիոնալ չեն օգտագործվում պլաստմասսաների վերամշակման սարքավորումները և արտադրական հրապարակները, որի հետևանքով իջնում են դրանց տեխնիկատնտեսական ցուցանիշները։ Մեր կարծիքով, տնտեսապես և տեխնիկապես նպատակահարմար է, որ մեքենաշինական ձեռնարկությունների համար անհրաժեշտ պլաստմասսայե իրերի արտադրությունն ամբողջովին կենտրոնացվի այնպիսի մասնագիտացված ձեռնարկությունում, ինչպիսին Էջմիածնի պլաստմասսաների վերամշակման գործարանն է։ Վերջինս հնարավորություն կընձեռի կիրառել բարձր արտադրողականություն ապահովող տեխնոլոգիա, առավել արդյունավետ օգտագործել արտադրական հիմնական ֆոնդերը, խնայողաբար օգտագործել հումքը, վառելիքը, էլեկտրաէներգիան, իսկ մնացած ձեռնարկություններին ազատել իրենց պրոֆիլին ոչ հատուկ արտադրանքի թողարկումից։ Մեր կարծիքով, այս հարցով պետք է մտահոգվի Հայկական ՍՍՀ պետպլանը։

Հայրենական մեքենաշինության բնագավառում սինթետիկ պոլիմերային նյութերի օգտագործման արդյունավետությունը կարելի է բարձրացնել, եթե այդ նյութերն այս ճյուղում ներդրվեն միասնական գիտատեխնիկական պլանի համաձայն։ Եվ քանի որ այդպիսի պլանը դեռևս բացակայում է, ապա մեքենաշինության տարբեր ճյուղերի քիմիացումը վերջին ժամանակներս կրել է միակողմանի բնույթ։ Պրակտիկան ցույց է տալիս, որ որքան շատ պլաստմասսա և սինթետիկ ձյութ է օգտագործում այս կամ այն ճյուղը, այնքան մեծանում է այդ ճյուղերի քիմիացման մակարդակը, իսկ մանր սպառողների դերը, հակառակը, իջնում է։ Այս պայմաններում քիմիական արդյունաբերությունը, ամենից առաջ, ձգտում է բավարարել խոշոր ճյուղերի պահանջները, մոռանալով մանր սպառողներին, որոնք շատ հաճախ հայրենական քիմիայից պահանջում են բարձրորակ կոնստրուկտիվ նյութեր։ Սա ոչ միայն միակողմանի է զարգացրել պլաստմասսաների արտադրությունը, այլ, պլաստմասսա-

ների ու առաջավոր տեսակների չօգտագործման հետևանքով, չի բարձրացրել հայրենական մեքենաշինության քիմիացման մակարդակը։ Գործածվող պլաստմասսաների ավելի քան $^3/_4$-ը հատկացվել է քիչ ծանրաբեռնված դետալների պատրաստմանը։ Այդ պոլիմերների օգտագործմամբ մեքենաշինարարները չեն կարողացել լուծել տեխնիկական առաջընթացի շատ խնդիրներ։ Խիստ անհրաժեշտ դետալների և հանգույցների պատրաստման համար կիրառվել են աննշան քանակությամբ պոլիմերային նյութեր։ Այդ հանգամանքը ինչ-որ չափով կանխորոշել է հայրենական մեքենաշինության քիմիացման հետագա ընթացքը։ Շատ ձեռնարկություններ իրենց հատկացված պլաստմասսաներն օգտագործել են ոչ միայն մեքենաների կոնստրուկցիաների տեխնիկական կատարելագործման, այլև մետաղի տնտեսման, թողարկվող արտադրանքի աշխատատարության և ինքնարժեքի իջեցման նպատակով։ Այդ իսկ պատճառով դեֆիցիտային պոլիմերային նյութերի ներդրումից ստացված արդյունքը ոչ թե մեքենաների շահագործման հատկությունների բարելավման, այլ մեքենաների դետալների և հանգույցների գործարանային աշխատատարության և ինքնարժեքի իջեցման արդյունք է։ Այդ հետևանք է այն բանի, որ քիմիական արդյունաբերությունը բավարար քանակի և որակի պլաստմասսա և սինթետիկ ձյութ չի մատակարարում դրանք վերամշակող ձեռնարկություններին։

Մեքենաշինության քիմիացման բնագավառում մյուս լուրջ թերությունն այն է, որ կոնստրուկտիվ պլաստմասսաների հիմնական տեսակների (պոլիամիդների, պոլիֆորմալդեհիդի, ապակեպլաստիկների և այլն) գները շատ բարձր են։ Ինչպես ցույց են տվել ուսումնասիրությունները, պլաստմասսաների շատ տեսակների գները արհեստականորեն բարձրացվել են դրանց շահութաբերության ավելացման հաշվին։ Այսպես, կապրոլակտամի մեծածախ գնի շահութաբերության մակարդակը կազմում է 39, պոլիստիրոլինը՝ 37 տոկոս և այլն։ Չնայած 1967 թ. պլաստմասսաների շատ տեսակների մեծածախ գներն իջեցվեցին, բայց դրանց մակարդակը դեռևս բավարար չէ։ Գները պետք է լինեն այնպիսին, որպեսզի ձեռնարկություններին շահագրգռեն թողարկելու առավել առաջադիմական պոլիմերային նյութեր, իսկ սպառողներին՝ կիրառելու այն։

Ընթացիկ հնգամյակում, անշուշտ, հաշվի կառնվեն մեքենաշինության քիմիացման ասպարեզում վերը նշված թերությունները, և դրանց վերացմամբ կարագանա տեխնիկական առաջընթացը, ինչպես բուն մեքենաշինության մեջ, այնպես էլ այն ճյուղերում, որոնք կիրառում են մեքենաշինության թողարկած արտադրանքը։

Վ. Տ. ԿԻՐԱԿՈՍՅԱՆ

---

## ՍՈՎԵՏԱԿԱՆ ՇԻՆԱՐԱՐՈՒԹՅՈՒՆ

# ԷԿՈՆՈՄԻԿԱՅԻ ՊԼԱՆԱՅԻՆ ԿԱՌԱՎԱՐՄԱՆ ՀԱՆԳՈՒՅՑԱՅԻՆ ՕՂԱԿԸ*

Ս. Ա. ԿԱՐԱՊԵՏՅԱՆ

ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1971—1975 թթ. հնգամյա պլանի՝ ՍՄԿԿ XXIV համագումարի դիրեկտիվներով նախագծված միջոցառումների իրականացման գործում մեծ դեր է վերապահվում աշխատավորների դեպուտատների տեղական սովետներին, որոնք կոչված են ուժեղացնելու իրենց ազդեցությունը հանրային արտադրության զարգացման վրա։

«Աշխատավորների դեպուտատների շրջանային և քաղաքային սովետների աշխատանքի հետագա բարելավման միջոցառումների մասին» ՍՄԿԿ կենտկոմի 1971 թ. մարտի 5-ի որոշման մեջ նշված է, որ կոմունիստական շինարարության արդի ժամանակաշրջանը նոր, ավելի մեծ պահանջներ է ներկայացնում դրանց գործունեությանը, որոնք «տեղերում կուսակցության ու պետության քաղաքականության պրակտիկ իրականացումն ապահովող պետական մարմինների հանգուցային օղակն են»։

Տեղական տնտեսության կազմում, որպես կանոն, գործում են աշխատավորների դեպուտատների սովետներին ենթակա արդյունաբերական ու գյուղատնտեսական ձեռնարկությունները, շինարարական կազմակերպությունները, ավտոտրանսպորտը և ավտոճանապարհային տնտեսությունը, կենցաղային, առևտրական, մթերող և մատակարարող ձեռնարկություններն ու կազմակերպությունները, բնակարանային և կոմունալ տնտեսությունը, կուլտուրայի և առողջապահության հիմնարկությունները։

Այդ բարդ կոմպլեքսի ամենօրյա պլանային կառավարումն իրականացնում են աշխատավորների դեպուտատների տեղական՝ շրջանային, քաղաքային, ավանային և գյուղական սովետների գործադիր կոմիտեները՝ իրենց ճյուղային վարչությունների ու բաժինների միջոցով։

Տեղական սովետների գործադիր կոմիտեների ճյուղային վարչություններն ու բաժինները կազմում են ամփոփ հեռանկարային և ընթացիկ պլաններ ըստ ենթակա ձեռնարկությունների, կազմակերպությունների ու հիմնարկությունների, իրականացնելով դրանց կառավարումը։ Ճյուղային վարչությունների ու բաժինների կողքին գործկոմներն ունեն նաև միջճյուղային մարմին-

* Տպագրվում է հարցադրման կարգով։— Խմբ.։

ներ, որոնց սիստեմում ընդհանուր պլանային մարմինների ֆունկցիան կատարում են դրանց շրջանային ու քաղաքային պլանային հանձնաժողովները (շրջքաղպլանները)՝ պետպլանի ամենաստորին հանգուցային օղակները։

Տեղերում պլանավորման օրգանների հիմնական խնդիրներն են՝ շրջանային ու քաղաքային տնտեսության զարգացման, շրջանների ու քաղաքների սոցիալ-կուլտուրական շինարարության, տեղական ենթակայության ձեռնարկությունների, հիմնարկների ու կազմակերպությունների առաջադրանքների, տեղաբաշխման ու մասնագիտացման հեռանկարային և տարեկան միասնական պլանների մշակումը, հաստատումը, իրականացումը և վերահսկումը, կոլտնտեսությունների, սովխոզների և մյուս գյուղատնտեսական ձեռնարկությունների արտադրական-ֆինանսական պլանների քննարկումը։

Նրանք պարտավոր են խելամտորեն տեղաբաշխելու տեղական արդյունաբերության, գյուղատնտեսական մթերքներ ընդունող ու վերամշակող ձեռնարկությունները և կետերը, կենցաղային սպասարկման, առևտրի ու հասարակական սննդի օբյեկտները, մոռացության չտալով կուլտուրայի, ժողովրդական կրթության և առողջապահության կազմակերպությունների և հիմնարկների նկատմամբ հսկողությունը, անհրաժեշտության դեպքում առաջարկություններ ներկայացնելով համապատասխան վերադաս մարմիններին։ Այդ օրգաններն ունեն նաև բազմաթիվ այլ պարտականություններ, որոնց կատարման համար ամենօրյա լայն աշխատանք պետք է ծավալեն։

Արդի պայմաններում հատուկ նշանակություն է ձեռք բերում ժողովրդական տնտեսության հեռանկարային պլանավորումը՝ արտադրաուժերի զարգացման ու տեղաբաշխման գլխավոր սխեմաների և գիտական նախիմացությունների մշակման հիման վրա։ Մինչև վերջին ժամանակներս հեռանկարային պլանավորումն իրականացնում էին հիմնականում կենտրոնական և հանրապետական պլանային մարմինները։ Այսուհետև այդ պլանների մշակմանը պետք է մասնակցեն նաև շրջանային ու քաղաքային պլանային հանձնաժողովները, միաժամանակ կազմելով իրենց եզրակացությունները տվյալ տերիտորիաներում նոր ձեռնարկությունների նախագծման, գործողների վերակառուցման և ընդլայնման առաջադրանքների վերաբերյալ։ Դրանց վրա դրվում է նաև շրջանային ու քաղաքային հատակագծումների սխեմաների, զարգացման գլխավոր պլանների և կառուցման նախագծերի վերաբերյալ եզրակացությունների ու առաջարկությունների նախապատրաստման խնդիրը։ Այդ մարմինների մասնակցությունը հեռանկարային պլանավորման կարևոր փաստաթղթերի մշակման գործում թույլ կտա ավելի լրիվ հաշվի առնելու հիմնական ֆոնդերի, աշխատանքային, նյութական ու բնական ռեսուրսների օգտագործման հնարավորությունները, ավելի ճիշտ որոշելու արտադրության մասնագիտացման ու կոոպերացման ուղղությունը, փոքր ու միջին քաղաքների և գյուղական բնակավայրերի զարգացման ուղիները։

Պլանավորման ու տնտեսական խթանման նոր ձևերը պահանջում են հատուկ ուշադրություն նվիրել գնագոյացման հարցերին։ Շրջանային և քաղաքային պլանային հանձնաժողովները համապատասխան գործկոմների կողմից հաստատվող գների ու տարիֆների նախագծերի վերաբերյալ պատրաստում են եզրակացություններ ու առաջարկություններ։ Նրանց հանձնարարվում է մշա-



կել նաև եզրակացություններ գործկոմների վարչությունների ու բաժինների ներկայացրած նյութերի, այդ թվում՝ տեղական բյուջեի ու նյութա-տեխնիկական մատակարարման պլանների նախագծերի վերաբերյալ, սիստեմատիկաբար ստուգել պետական պլանի և տնտեսության ու կուլտուրայի զարգացման վերաբերյալ կուսակցության և կառավարության որոշումների կատարումը։

Համապատասխան գործկոմների վարչությունների ու բաժինների պլանային աշխատանքի մեթոդական ղեկավարումը, ինչպես նաև դրանց ենթակա ձեռնարկությունների ու կազմակերպությունների պլանների կատարման նկատմամբ վերահսկողության իրականացումը նույնպես դրված են շրջքաղպլանային հանձնաժողովների վրա։ Նրանց առջև ծառացած այդ նոր խնդիրների լուծումը, հատկապես կոմպլեքսային պլանավորման իրականացումը և տարբեր ենթակայության ձեռնարկությունների գործունեության կոորդինացումը, անհնար է առանց պլանային աշխատանքի գիտական մակարդակի հետագա բարձրացման։

Տեղական տնտեսության զարգացման կոմպլեքսային պլանը ճյուղային նախագծումների մեխանիկական ամփոփագիրը չէ։ Այն հիմնավորելու համար շրջքաղպլանները պետք է մեծ աշխատանք կատարեն անհրաժեշտ համամասնությունների սահմանման, ներճյուղային, միջճյուղային և միջշրջանային կապերի ստուգման, մի շարք կոմպլեքսային պրոբլեմների հետազոտման նպատակով։ Այդպիսի պլան կազմելիս անհրաժեշտ է օգտագործել բալանսների սիստեմը, էկոնոմիկա-մաթեմատիկական մեթոդների օգնությամբ ընտրել օպտիմալ լուծումներ։

Գիտականորեն հիմնավորված կոմպլեքսային պլանի մշակման առավել կարևոր խնդիրներն են՝ տվյալ տերիտորիայում գործող տարբեր ենթակայության ձեռնարկությունների գործունեության կոորդինացումը, հողային, ջրային, անտառային, վառելիքային-էներգետիկ և հումքային ռեսուրսների ռացիոնալ օգտագործումը, աշխատանքային ռեսուրսների բաշխումը, տնտեսական ու կուլտուրական օբյեկտների շինարարության ապահովումը, բնակչության ռեալ եկամուտների ու կենսամակարդակի բարձրացումը, արտադրաուժերի տեղաբաշխումը, տնտեսական կապերի ռացիոնալացումը։

Միութենական և հանրապետական ենթակայության ձեռնարկությունների կապերը տեղական տնտեսության հետ բազմապիսի են։ Դրանք իրականացվում են աշխատանքի միջշրջանային բաժանման, արտադրության մասնագիտացման ու կոոպերացման, աշխատուժի ապահովման, գյուղատնտեսական ու հանքային հումքի, արդյունաբերական ու կենցաղային թափուկների, էներգետիկ ռեսուրսների օգտագործման, նյութա-տեխնիկական մատակարարման, արտադրանքի թողարկման և վաճառահանման բնագավառում։

Տեղական տնտեսության զարգացման պլանները շաղկապվում են հանրապետական ու միութենական ենթակայության ձեռնարկությունների ու կազմակերպությունների զարգացման պլանների հետ՝ ամփոփ կոորդինացված պլանների միջոցով։ Շրջքաղպլանների պարտականությունն է, մասնավորապես, տեղական արդյունաբերության, հանրապետական, միութենական հանրապետական և ընդհանուր միութենական ձեռնարկությունների կողմից թողարկվող կուլտուր-կենցաղային նշանակության և տնտեսական գործածության ապրանքների արտադրության, շրջանի կամ քաղաքի ամբողջ տերիտորիայի

վրա կատարվող բնակարանային և կուլտուր-կենցաղային շինարարության, անկախ գերատեսչական ենթակայության, բոլոր կազմակերպությունների կողմից իրականացվող ապրանքաշրջանառության և կենցաղսպասարկման, որակյալ բանվորների պատրաստման (հաշվի առնելով ձեռնարկությունների, կառուցումների և այլ կազմակերպությունների պահանջները), ինչպես նաև երիտասարդությանը աշխատանքի տեղավորելու միջոցառումների կոորդինացված պլանների մշակումը։

Մեր երկրում պլանային տնտեսության կեսդարյա փորձը վկայում է, որ առանց տեղական պլանային մարմինների դերի հարաճուն բարձրացման և դրանց տրված իրավունքների ու լիազորությունների իրականացման, դժվար է ապահովել տերիտորիալ սկզբունքով պլանավորման կատարելագործումը, յուրաքանչյուր վարչական շրջանում հարցերի ողջ կոմպլեքսի լուծման գործում առավելագույն ինքնուրույնությունը, ժողովրդական տնտեսության մեջ անհրաժեշտ համամասնությունների պահպանումը։

Հենց այդպիսի գաղափար էր դրված ՍՍՀՄ պետպլանի կազմակերպման հիմքում։ Այն իր արտացոլումն է գտել նաև մեր կուսակցության ծրագրում, որտեղ ասված է. այսուհետև ևս պլանային ղեկավարման մի շարք ֆունկցիաներ ընդհանուր միութենական մարմինները հանձնելու են հանրապետական, հանրապետական մարմինները՝ տեղական մարմիններին, դրանով իսկ է՛լ ավելի ընդլայնելով վերջիններիս իրավունքներն այն հաշվով, որպեսզի դրանք վերջնականապես լուծեն տեղական նշանակություն ունեցող բոլոր հարցերը։

Մինչդեռ, ինչպես միանգամայն արդարացիորեն նշվում է ՍՄԿԿ Կենտկոմի 1971 թ. մարտի 5-ի որոշման մեջ, շրջանային և քաղաքային սովետներն իրենց իրավունքներն ու հնարավորությունները դեռ լրիվ չեն օգտագործում տեղական տնտեսությունը համակողմանիորեն զարգացնելու, բնակչության սպասարկումը բարելավելու համար, պատշաճ հաստատակամություն չեն ցուցաբերում տնտեսական ռեֆորմի կենսագործման հետ կապված տնտեսական շինարարության հարցերը լուծելիս, ինչպես նաև բավարար չափով չեն կոորդինացնում բնակարանային, կոմունալ շինարարության, սոցիալ-կուլտուրական և կենցաղային օբյեկտների կառուցման, ժողովրդական սպառման ապրանքների արտադրության բնագավառում գերատեսչական տարբեր ենթակայության ձեռնարկությունների ու կազմակերպությունների աշխատանքը։

Հայտնի է, որ տեղական արդյունաբերության, կենցաղային սպասարկման, կոմունալ տնտեսության, առևտրական և շրջանների ու քաղաքների տերիտորիայում գտնվող մյուս ձեռնարկությունների ու կազմակերպությունների զգալի մասն առավելապես սպասարկում է տվյալ տերիտորիայի բնակչությանը։ Սակայն այդ ձեռնարկությունների և կազմակերպությունների մեծ մասն անմիջականորեն ենթարկվում է ճյուղային մինիստրություններին ու գերատեսչություններին։ Դա նվազեցնում է շրջանային և քաղաքային սովետների պատասխանատվությունն իրենց տերիտորիայի գործերի վիճակի համար, կաշկանդում նրանց նախաձեռնությունը՝ տեղական տնտեսության զարգացման, բնակչության սպասարկման բարելավման հարցերը լուծելիս։

Կենտկոմի որոշմամբ շրջանային ու քաղաքային սովետներին առաջարկված է մշակել կոնկրետ միջոցառումներ և դրանք կենսագործել ըստ շրջանի ու քաղաքի, որպեսզի առավել բարելավվի տեղական արդյունաբերության, բնակչության կենցաղային սպասարկման ձեռնարկությունների, դպրոցների, հիվանդանոցների, մանկական հիմնարկությունների, ակումբների, կինոթատրոնների, խանութների, ճաշարանների, բնակարանային-կոմունալ, նորոգման-շինարարական և շրջանային ու քաղաքային այլ ձեռնարկությունների ու կազմակերպությունների աշխատանքը։



Դա պարտավորեցնում է շրջանային և քաղաքային սովետներին՝ ուժեղացնելու ուշադրությունը տեղական տնտեսության կոմպլեքսային զարգացման, արդյունաբերական և գյուղատնտեսական ձեռնարկությունների ճիշտ մասնագիտացման ու տեղաբաշխման, արտադրության ընդլայնման և դրա արդյունավետության բարձրացման նպատակով առկա ռեսուրսների առավելագույն օգտագործման հարցերի նկատմամբ։ Դրա հետ մեկտեղ նրանք պարտավոր են տնտեսական ռեֆորմի սկզբունքների կենսագործման ասպարեզում ձեռնարկություններին ու կազմակերպություններին օգնություն ցույց տալու նպատակով ակտիվացնել իրենց գործունեությունը, իրականացնել գործնական ու արդյունավետ վերահսկողություն դրանց կողմից օրենսդրության պահանջները կիրառելու նկատմամբ։

Անցյալում, ինչպես հայտնի է, հարկ եղած ուշադրություն չէր նվիրվում տեղական տնտեսության առանձին ճյուղերի պլանավորմանը և, հատկապես, տեղական արդյունաբերության զարգացմանը, որի առջև միշտ մեծ խնդիրներ էին դրվում քաղաքային ու գյուղական տնտեսություններին անհրաժեշտ արտադրատեսակներով ու նյութերով, իսկ աշխատավորությանը լայն սպառման առարկաներով ապահովելու գործում։

Ճիշտ է, նախորդ հնգամյակում, ինչպես բոլոր հանրապետություններում, այնպես էլ Հայաստանում տեղական արդյունաբերությունն ապրեց իր իսկական վերածնունդը, նոր թափ հաղորդելով կուլտուր-գեղարվեստական և կենցաղային-տնտեսական բարձրորակ իրերի արտադրությանը։ Օրինակ, եթե հանրապետության ողջ արդյունաբերական արտադրանքի թողարկումը հինգ տարում ավելացավ մոտ 1,8, ապա տեղական արդյունաբերության արտադրությունն աճեց ավելի քան 4 անգամ, զգալի չափով գերազանցելով դիրեկտիվներով սահմանված առաջադրանքը (3,8 անգամ)։ Նրա տեսակարար կշիռը հանրապետության արդյունաբերության մեջ կրկնապատկվեց, իսկ ձեռնարկությունների թիվն ավելացավ 3,5 անգամ և հասավ 45-ի, որոնց զգալի մասը հագեցված է ժամանակակից տեխնիկայով։ Այն դարձել է «հազար մանրուքների» իսկական ինդուստրիա, որի թողարկած արտադրատեսակներից շատերն իրենց արտաքին տեսքով ու որակական ցուցանիշներով չեն զիջում հայրենական լավագույն արտադրատեսակներին և նույնիսկ արտահանվում են Անգլիա, Դանիա և այլ երկրներ։

Այնուամենայնիվ, ինչպես միանգամայն արդարացիորեն նշվեց Հայաստանի Կոմկուսի XXV համագումարում, մեր հանրապետությունում տեղական արդյունաբերության զարգացման համար առկա անսահման հնարավորությունները դեռևս ճիշտ ու լրիվ չեն օգտագործվում։ Օրինակ, տեղական արդյունաբերության մինիստրության 45 ձեռնարկություններից միայն Երևանում են գտնվում 16-ը, կամ ընդհանուր թվի 36,3 տոկոսը, ուր աշխատում է ողջ անձնակազմի 52,2 տոկոսը։ Այստեղ է կենտրոնացված արտադրաֆոնդերի 61,2 տոկոսը։ Իսկ եթե դրանց ավելացնենք նաև այն 10 ձեռնարկությունները, որ անմիջապես ենթարկվում են Երևանի քաղսովետին, ինչպես նաև նկատի ունենանք, որ հանրապետական ենթակայության 19 քաղաքներից 8-ում և 36 գյու-

ղական շրջաններից 15-ում չկա տեղական արդյունաբերության ոչ մի ձեռնարկություն, ապա մեկնաբանությունները ավելորդ են։

Լենինականի քաղաքային սովետը դեռ անցյալ տարվա սկզբներին հանրապետության Մինիստրների սովետի առջև հարց էր բարձրացրել տեղական նշանակություն ունեցող ավելի քան տասը արդյունաբերական ձեռնարկություն հանձնել քաղգործկոմին, իսկ այս տարվա հունվարին կազմակերպել ևս հինգ նոր ձեռնարկություն, և գործկոմին առընթեր ստեղծել տնտհաշվարկային տեղական արդյունաբերության վարչություն հաստիքային 10 միավորով, որոնց պահպանումը ենթադրվում է կատարել այդ ձեռնարկությունների մասհանումների հաշվին։

ՀՍՍՀ Մինիստրների սովետը պարտավորեցրել էր հանրապետության պետպլանին ուսումնասիրել այդ հարցը և տալ իր եզրակացությունը։ Պետպլանի պահանջով Լենինականի քաղգործկոմը սույն թվականի հունիսի 5-ին ներկայացրել է համապատասխան ձեռնարկությունների և տեղական արդյունաբերության վարչության կազմակերպման տեխնիկա-տնտեսական հիմնավորումը։ Սակայն մինչև օրս պետպլանը այդ հարցի լուծմանը ընթացք չի տվել և Մինիստրների սովետ չի ներկայացրել իր եզրակացությունը՝ Լենինականի քաղաքային սովետի գործադիր կոմիտեին առընթեր տեղական արդյունաբերության վարչություն կազմակերպելու և տեղական նշանակություն ունեցող ձեռնարկությունները նրան հանձնելու մասին։

ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1971—1975 թթ. հնգամյա պլանի՝ XXIV համագումարի դիրեկտիվների, համաձայն տեղական արդյունաբերության հետագա ընդլայնման նպատակով խնդիր է դրվում առավելագույն չափով օգտագործել հումքի և նյութերի տեղական ռեսուրսները, իրականացնել գործող ձեռնարկությունների տեխնիկական վերազինում ու մասնագիտացում, ինչպես նաև նոր ձեռնարկություններ կառուցել փոքր ու միջին քաղաքներում և գյուղական վայրերում՝ գերազանցապես կուլտուր-գեղարվեստական և կենցաղային-տնտեսական առարկաների արտադրության համար։

Հետևաբար, առաջնակարգ նշանակություն ունի տեղական արդյունաբերության արտադրաուժերի զարգացման ու տեղաբաշխման հստակ, մտածված պլանավորումը հեռանկարային, գիտականորեն հիմնավորված նախախմացության գլխավոր սխեմայով։

Այդ առումով անհրաժեշտ է արագացնել Երևան քաղաքի տերիտորիայում գտնվող տեղական արդյունաբերության, ինչպես նաև ոչ արդյունաբերական բնույթի մինիստրությունների, գերատեսչությունների, միությունների, ընկերությունների և այլ կազմակերպությունների համապատասխան ձեռնարկությունները գործադիր կոմիտեին առընթեր գործող տեղական արդյունաբերության նորաստեղծ վարչությանը հանձնելու հարցի լուծումը, ապահովելով դրանց գործունեության կոորդինացումը համանուն մինիստրության կողմից։ Այդպիսի պահանջ դրեց նաև անցյալ տարի աշխատավորների դեպուտատների XIII գումարման Երևանի քաղաքային սովետի առաջին սեսիան։

Հանրապետական ենթակայության մնացած քաղաքների և գյուղական շրջանների աշխատավորների դեպուտատների սովետները ևս պետք է ձեռնամուխ լինեն այդօրինակ միջոցառումների շուտափույթ իրականացմանը, կազմակերպելով իրենց գործադիր կոմիտեներին առընթեր տեղական արդյունաբերության վարչություններ կամ բաժիններ, համապատասխանաբար լուծելով



տվյալ շրջանի կամ քաղաքի բնակչությանն սպասարկող ձեռնարկությունները տեղական ենթակայությանը հանձնելու հարցը, ինչպես դա նախատեսվում է Հայկական ՍՍՀ ութերորդ գումարման Գերագույն սովետի առաջին սեսիայի ընդունած «Հայկական ՍՍՀ աշխատավորների դեպուտատների շրջանային սովետի մասին» և «Հայկական ՍՍՀ աշխատավորների դեպուտատների քաղաքային, քաղաքի շրջանային սովետի մասին» ՀՍՍՀ օրենքներով։

Այսպիսով, տեղական տնտեսության պլանավորման ու կառավարման վերաբերյալ հարցերը կլուծվեն միայն տեղական սովետների գիտությամբ՝ շրջքաղպլանների եզրակացությունների հիման վրա։

Տեղական տնտեսության համար խիստ կարևորություն ունեցող պլանային հարցերը հաճախ բարձրացվում են զգալի ուշացումներով, որոնց լուծումը դժվարանում է, իսկ որոշ դեպքերում՝ նույնիսկ անհնար դառնում։ Պլանների նկատմամբ այստեղ չի ցուցաբերվում լուրջ գիտական-վերլուծական մոտեցում, չեն պահպանվում անհրաժեշտ համամասնությունները տեղական տնտեսության ճյուղերի միջև, դրանք հաճախ չեն բխում քաղաքների ու գյուղերի զարգացման գլխավոր պլանների պահանջներից և լուրջ դժվարություններ ու անհամամասնություններ են ստեղծում բնակավայրերի բարեկարգման գործում։ Անբավարար վիճակում են նյութական ֆոնդերի պլանավորումը և բաշխումը։ Երբեմն այդ ֆոնդերով չեն ապահովվում նախատեսվող միջոցառումների կենսագործումը։ Տեղական սովետների կազմակերպություններից ստացված հայտերը ոչնչով չեն հիմնավորվում, դրանք պարզապես նյութերի ցուցակներ են՝ հաճախ ուռճացված, հաճախ էլ մեծ բացթողումներով։

Շինարարության պլաններում կան բազմաթիվ դեպքեր, երբ տիտղոսային ցուցակներում առանց նախագծային և նախահաշվային փաստաթղթերի օբյեկտներ են նախատեսվում, այն դեպքում, երբ բազմաթիվ փոխանցվող օբյեկտներ նախահաշվային արժեքի չնչին մնացորդներով դուրս են մնում պլանից և դառնում անավարտ։ Արտալիմիտային կապիտալ շինարարության համար հատկացված միջոցները մանրացվում են բազմաթիվ և հաճախ քաղաքների ու գյուղական շրջանների տնտեսական ու կուլտուրական կյանքի համար առաջնային նշանակություն չունեցող օբյեկտների վրա։ Լուրջ թերություններ կան կապալառու կազմակերպությունների բեռնվածության պլանավորման գործում։ Հաճախ պլանավորվում է շինմոնտաժային աշխատանքների մեծ ծավալ, բայց ռեալ օբյեկտների տեսակարար կշիռը կազմում է ծանրաբեռնվածության 30—50 տոկոսը։

Շրջանային և քաղաքային պլանային հանձնաժողովների առջև դրված այդ վիթխարի խնդիրների լուծումը պահանջում է, նախ՝ դրանց գործող ապարատն ամրապնդել ու համալրել համապատասխան մասնագետներով։ Բանն այն է, որ մեր հանրապետության 36 գյուղական շրջանների պլանային հանձնաժողովներից հինգում հաստիքով աշխատում են երկու, իսկ մնացածներում՝ մեկական մարդ։ Հանրապետական ենթակայության 19 քաղաքներից պլանային հանձնաժողովներ կան միայն չորսում՝ աննշան աշխատողներով։ Իսկ մնացած քաղգործկոմները և քաղաքային շրջգործկոմները պլանային հանձնաժողովներ չունեն։ Դա, իհարկե, նորմալ համարել չի կարելի։

Ինչ վերաբերում է առկա շրջքաղպլաններին, ապա դրանք ոչ միայն ֆիզիկապես հնարավորություն չունեն կազմելու ժողովրդատնտեսական ամփոփ ու կոմպլեքս պլաններ, որոնցում արտացոլվեին տեղական արդյունաբերու-

թյան, գյուղատնտեսության զարգացման, սոցիալ-կուլտուրական շինարարության ու բնակչության կենցաղային սպասարկման միմյանց հետ համաձայնեցված առաջարկություններ և կոորդինացվեին դրանց գործունեությունը, այլև ի վիճակի չեն վերլուծելու գոնե տեղական տնտեսության ձեռնարկությունների աշխատանքը և վերահսկելու արտադրական պլանների կատարումը։

Ահա թե ինչու, ամենից առաջ, անհրաժեշտ է ստեղծել գործունյա, լիարժեք շրջանային և քաղաքային պլանային հանձնաժողովներ, դրանց գործող ապարատը համալրել ժողովրդական տնտեսության առաջատար ճյուղերի համար լայն պրոֆիլի տնտեսագետների որակյալ կադրերով, ինչպես նաև մշակել ու հաստատել նրանց համար նոր կանոնադրություն, ելնելով «Հայկական ՍՍՀ աշխատավորների դեպուտատների շրջանային սովետի մասին» և «Հայկական ՍՍՀ աշխատավորների դեպուտատների քաղաքային, քաղաքի շրջանային սովետի մասին» օրենքներով նախատեսվող պլանավորման խնդիրներից։

Ակնհայտ է, որ ապրանքաշրջանառության աճը, ապրանքների ասորտիմենտի ընդլայնումը, դրանց մոտեցումը գնողական պահանջարկի կառուցվածքին զգալի չափով կախված են այն բանից, թե որքանով ճիշտ են որոշվում համապետական ու տեղական ձեռնարկությունների խնդիրները։ Ուստի պահանջվում է ուժեղացնել կենտրոնական, հանրապետական և տեղական մարմինների կապը, կոորդինացնելով տեղական տնտեսության զարգացման պլանները ամբողջովին վերցրած ժողովրդական տնտեսության հիմնական ուղղությունների հետ։

Վերջապես պետպլանի տերիտորիալ պլանավորման բաժինը պետք է սերտ կապերի մեջ մտնի շրջքաղպլանների հետ, տեղում օգնի նրանց։ Միաժամանակ այդ բաժնի խնդիրն է՝ ստուգել, ուսումնասիրել, վերլուծել և ընդհանրացնել շրջքաղպլանների գործունեությունը, դրանց ներգրավել ժողովրդատնտեսական պլանների և հանրապետության համար ընդհանուր հետաքրքրություն ներկայացնող այլ հարցերի քննարկմանը։ Ըստ որում, պետպլանը մինիստրությունների ու այլ գերատեսչությունների հետ այդ հարցերը չպետք է լուծի առանց շրջքաղպլանների կարծիքը հաշվի առնելու։ Դրա հետ մեկտեղ, նպատակահարմար է կազմել հանրապետության պետպլանի և շրջքաղպլանների աշխատանքների միասնական հիմնական պլան, որը շրջանային և քաղաքային պլանային հանձնաժողովներին տեղյակ կպահի այն հարցերին, որոնք առաջիկայում նրանք պետք է լուծեն պետպլանի հետ միասին, նպաստելով դրանց փոխադարձ սերտ կապի ստեղծմանը, համատեղ այդ գործունեությանը հաղորդելով առավել մեծ նպատակասլացություն։

Գործի շահերից ելնելով, վատ չէր լինի հրատարակելու նաև բյուլետեն «Օգնություն շրջքաղպլաններին» խորագրով, որը կլուսաբանի աշխատանքի դրական փորձի փոխանակումը, տեղական տնտեսության պլանավորման հարցերի վերաբերյալ կոնսուլտացիայի կազմակերպումը, այդ գործում տեղ գտնող թերությունների վերացման ուղիները։ Այդ խնդրի հաջող լուծմանը կարող է մեծ օգնություն ցույց տալ Հայաստանի ժողովրդական տնտեսություն ամսագիրը, եթե տվյալ բյուլետենը հրատարակվի իբրև հավելված։

---

# ՀԱՍԱՐԱԿԱԿԱՆ ՀԻՄՈՒՆՔՆԵՐՈՎ

## (Կիրովական քաղաքի թաղային կոմիտեների աշխատանքի փորձից)

Թաղային կոմիտեն հասարակական ինքնագործունեության հիմնական օղակներից է։ Այն մեծ ուժ է քաղսովետի գործկոմի համար՝ իր առջև ծառացած խնդիրների լուծման գործում։ Թաղային կոմիտեների կանոնադրության մեջ նշված է. «Թաղային կոմիտեները բնակչության հասարակական ինքնագործունեության ընտրովի մարմիններ են, որոնք կոչված են ակտիվորեն աջակցելու աշխատավորների դեպուտատների տեղական սովետներին և նրանց գործադիր կոմիտեներին՝ տնտեսական ու կուլտուրական շինարարության միջոցառումների հաջող անցկացման, սոցիալիստական համակեցության կանոնների պահպանման, բնակչության նախաձեռնության և ինքնագործունեության բազմակողմանի զարգացման, սոցիալիստական սեփականության նկատմամբ հոգատար վերաբերմունքի և պատասխանատվության զգացմունքի ոգով սովետական մարդկանց դաստիարակելու, աշխատավոր լայն մասսաներին պետական կառուցմանը ներգրավելու գործում»։

Թաղային կոմիտեն իր տեղամասի բնակիչների ուշադրությունը բևեռում է նրանց համար կենսական նշանակություն ունեցող հարցերի լուծման վրա։ Նա է ապահովում բնակչության ակտիվ մասնակցությունը տների, բակերի, դրանց հարող տերիտորիաների բարեկարգմանը, ծառերի ու թփերի տնկմանը, ծաղկանոցների ստեղծմանը, պահպանմանն ու խնամքին։ Տերիտորիան մաքուր վիճակում պահելու, սանիտարական պատշաճ դրություն ստեղծելու նպատակով կոմիտեն բնակչության ուժերով սիստեմատիկաբար անցկացնում է սանիտարական միջոցառումներ՝ շաբաթօրյակներ, միամսյակներ և այլն։

Այս և բազմաթիվ այլ խնդիրներ հաջողությամբ լուծելու համար թաղային կոմիտեներն ստեղծում են հասարակական հանձնաժողովներ՝ սանիտարական, կուլտուր-լուսավորական աշխատանքի, կանանց ու երեխաների շրջանում, կենսաթոշակառուների հետ տարվող աշխատանքի, հասարակական կարգի պահպանման, կանաչապատման, բարեկարգման և այլն։ Նա վերահսկում է տնային լիազորների գործունեությունը, քննարկում տնային կառավարչությունների ինֆորմացիան՝ բնակելի ֆոնդի օգտագործման ու նորոգման վիճակի մասին, հարց բարձրացնում նրանց աշխատանքում տեղ գտած թերությունները վերացնելու համար։

Թաղային կոմիտեն հետևում է հասարակական օգտագործման ծորակների, ջրհորների, ոռոգման ցանցի, գազային սարքերի և կոմունալ տնտեսության այլ օբյեկտների պահպանմանը։ Սրանք են հիմնականում առաջնահերթ այն խնդիրները, որոնք իրենց ամբողջ բարդությամբ ու պատասխանատվությամբ ծառացած են թաղային յուրաքանչյուր կոմիտեի առջև։ Կիրովական քաղաքն ունի 62 թաղային կոմիտե։ 1971 թ. հունիս—հուլիս ամիսներին անցկացվեցին դրանց ընտրությունները։ 486 հոգի ընտրվեցին թաղային կոմիտեների կազմում։ Նրանց ճնշող մեծամասնությունը կենսաթոշակառուներ են և առաջավոր բանվորներ։

Թաղային կոմիտեների ընտրություններին նվիրված ժողովներում բնակիչները բազմաթիվ պահանջներ են ներկայացնում և առաջարկություններ անում իրենց թաղամասի հետ առնչվող հարցերը լուծելու համար։ Քաղսովետի գործկոմի՝ ընտրությունն անցկացնող պատասխանատու աշխատողը այդ առաջարկություններն ու պահանջները գրավոր, ժողովի արձանագրության հետ միասին, ներկայացնում է կազմհրա-

*անգործության են մատնված։ Փոխանակ օգտագործելու կոմիտեի անդամների ուժերը, որոշ նախագահներ ամբողջ ծանրությունը վերցրել են իրենց վրա, չեն գումարում թաղամասի բնակիչների ժողովներ և չեն պարզաբանում նրանց հուզող հարցերը։ Մատնանշված թերությունները չնչին բացառությամբ վերաբերում են № 7 (նախագահ՝ Պ. Մելքոնյան), № 23 (նախագահ՝ Ս. Խոյեցյան), № 48 (նախագահ՝ Մ. Վարդանյան), № 13 (նախագահ՝ Գ. Մխոյան), № 24 (նախագահ՝ Հ. Աբովյան) և № 36 (նախագահ՝ Ա. Մարկոսյան) թաղային կոմիտեներին։*

*Ըստ կանոնադրության, թաղային կոմիտեները քաղաքացիներին (բացի պետական բնակելի տներում բնակվողներից) տալիս են տեղեկանքներ բնակության վայրի, խնամքի տակ եղած անձերի թվի մասին և այլն։ Ցավոք, առանձին կոմիտեների նախագահներ երբեմն ոչ ճիշտ տեղեկանքներ են տալիս քաղաքացիներին, որով թյուրիմացության մեջ են գցում կազմակերպություններին։ Այսպես, № 31 թաղային կոմիտեի նախկին նախագահ Մարուսյա Ջաղացպանյանը կոշիկի ֆաբրիկայի աշխատող Ռ. Ավետիսյանին տվել էր տեղեկանք, որ նա չի աշխատում։ Իր հարսին և տղային կեղծ տեղեկանք էր տվել № 59 թաղային կոմիտեի նախագահ Մ. Կոոյանը։ Բնականաբար, քաղսովետի գործկոմը չէր կարող հաշտվել իրենց իրավունքները չարաշահողների նկատմամբ։ Ինչպես վերոհիշյալ, այնպես էլ № 45 թաղային կոմիտեի նախագահ Ս. Մովսիսյանը գործկոմի որոշումով ետ կանչվեցին։ Ուսումնասիրվում է № 36 թաղային կոմիտեի նախագահ Ն. Մարկոսյանի հարցը այն տեղեկանքի համար, որով թաղի բնակիչ Վարդան Ամիրխանյանին իրավունք է տրվում սպանդանոցում մորթելու իր ունեցած մեկ կովը, այն դեպքում, երբ իրականում վերջինս կով չի ունեցել, այլ գողացել է Ստեփանավանի շրջանի Վարդաբլուր գյուղի կոլտնտեսությունից։*

*Սրանք, ճիշտ է, եզակի դեպքեր են, բայց ստվերում են մեր աշխատանքը։ Քաղսովետի գործկոմը ջանում է կանխել նման դեպքերը, բարձրացնել թաղային կոմիտեների ու նրանց նախագահների պատասխանատվությունը՝ իրենց վստահված պատվավոր հանձնարարությունը բարեխղճորեն կատարելու համար։*

*Թաղային կոմիտեները և նրանց նախագահները կատարում են հասարակական շնորհակալ ու պատասխանատու հանձնարարություն։ Մենք ջանում ենք, որպեսզի նրանք մշտապես գտնվեն իրենց կոչման բարձրության վրա։ Քաղսովետի գործկոմի կազմհրահանգչական բաժինը, թաղային կոմիտեներին օգնելու նպատակով, յուրաքանչյուր եռամսյակ կազմում է միջոցառումների պլան և, գործկոմի ղեկավարության հետ համաձայնեցնելուց հետո, սկսում դրա կենսագործումը։ Ըստ այդ պլանի, նրանց համար անցկացվում են համաքաղաքային ու փնջային սեմինարներ և հրահանգչական խորհրդակցություններ, որտեղ պարզաբանվում են սովետական օրենքները, թաղային կոմիտեների կանոնադրությունն ու խնդիրները։ Դա տրամաբանական է. նախ՝ պետք է հրահանգավորել, աշխատողին ասել իր անելիքը, հետո՝ պահանջել, այլապես անիմաստ կլինի արդյունքի սպասելը։ Անցկացրած այդ միջոցառումները փորձի փոխանակման լավ դպրոց են։ Դրանց պարտադիր կարգով մասնակցում են նաև միլիցիայի տեղամասային լիազորները, քանի որ նրանք նախ՝ ի պաշտոնե պատասխանատվություն են կրում թաղամասի գործերի վիճակի համար և ապա՝ նրանց համատեղ ու զուգակցված աշխատանքից շատ բան է կախված։*

*ՍՄԿԿ XXIV համագումարը պահանջեց ապահովել սովետների արդյունավետ գործունեությունը, այն հասցնել նոր խնդիրների մակարդակին։ Այդ պահանջը հավասարապես վերաբերում է նաև սովետների հիմնական օղակներից մեկին՝ թաղային կոմիտեներին, որոնց գործունեությունը բարելավելու համար մենք լուրջ քայլեր ենք կատարել։ Հետևողական ու սիստեմատիկ աշխատանքի միջոցով մենք ձգտում ենք բարձրացնել թաղային կոմիտեների մարտունակությունը, դարձնել դրանք մեր օրերի պահանջները լուծելու ունակ կազմակերպություններ։*

Վ. Հ. ԱՎԵՏԻՍՅԱՆ

Կիրովականի քաղսովետի գործկոմի
նախագահի առաջին տեղակալ

# Նշանավոր ՏԱՐԵԹՎԵՐ

## ՆՈՐԸ ՏԻԵԶԵՐՔԻ ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐՈՒԹՅԱՆ ՄԵՋ

*(ԲՅՈՒՐԱԿԱՆԻ ԼԵՆԻՆԻ ՇՔԱՆՇԱՆԱԿԻՐ ԱՍՏՂԱԴԻՏԱՐԱՆԻ 25-ԱՄՅԱԿԻ ԱՌԹԻՎ)*

Լ. Վ. ՄԻՐԶՈՅԱՆ

Բյուրականի աստղադիտարանի դիրեկտորի տեղակալ,
ֆիզիկա-մաթեմատիկական գիտությունների դոկտոր, պրոֆեսոր

Հայ ժողովուրդը դարեր շարունակ մահու և կենաց կռիվ է մղել իր գոյության համար։ Չնայած դրան, թե՛ օտար նվաճողների լծի տակ հեծող մայր երկրում և թե՛ աշխարհով մեկ ցրված հայ գաղութներում մերթ ընդ մերթ փայլատակել է մեր ժողովրդի գիտական հանճարը։

Հայաստանում գիտությունների զարգացման նախադրյալներ ստեղծվեցին միայն նրա արևմտյան հատվածում սովետական կարգեր հաստատվելուց հետո։ Մասնավորապես, ճշգրիտ գիտությունները Հայաստանում սովետական կարգերի ծնունդ են։

Երևանի պետական համալսարանում արդեն 30-ական թվականներից սկսվեց գիտական աշխատանքի կադրերի պատրաստման դժվարին աշխատանքը։ Բնական ու ճշգրիտ գիտությունների գծով բարձրորակ մասնագետների պատրաստման գործում Հայաստանին էական օգնություն ցույց տվեցին Մոսկվայի և Լենինգրադի գիտնականները։

Հայաստանում գիտության բուռն զարգացումը սերտորեն կապված է գիտությունների ակադեմիայի ստեղծման հետ (1943 թ.), որն իր գործունեության առաջին տարիներից մեծ ուշադրություն նվիրեց ճշգրիտ գիտություններին։

Նորաստեղծ ակադեմիայի հիմնադիր անդամներից էր տեսական աստղաֆիզիկայի սովետական դպրոցի հիմնադիր, Լենինգրադի համալսարանի գիտական մասի պրոռեկտոր ու աստղադիտարանի դիրեկտոր, երեսուներեքամյա Վիկտոր Համբարձումյանը։ Վերջինիս ընտրությունը ակադեմիայի վիցե-պրեզիդենտի պաշտոնում և այդ կապակցությամբ մշտական բնակություն հաստատելը Երևանում, նպաստեցին ճշգրիտ գիտությունների, առաջին հերթին աստղագիտության, ծաղկմանը Սովետական Հայաստանում։

1946 թ. Հայկական ՍՍՀ կառավարության որոշմամբ հիմնադրվեց Բյուրականի աստղադիտարանը։

Անցյալ տարիներին Բյուրականում տեղակայվել են կատարելագործված աստղադիտակներ, ստեղծվել են գիտական բաժիններ ու լաներ, լաբորատորիաներ, շարք են մտել գիտական ու արտադրական շենքեր։ Աստղադիտարանը դարձել է ժամանակակից գիտության պահանջներին բավարարող սարքավորումներով զինված գիտական մի կենտրոն։ Աճել են մասնավոր գիտական կադրերը, որոնք, հիմնականում, Երևանի պետական համալսարանի սաներ են։ Կատարվել են գիտական հետազոտություններ, որոնք մեծ հաջողություններ և լայն ճանաչում են բերել հայ աստղագետներին։

Վերջերս լրացավ Բյուրականի աստղադիտարանի գործունեության 25 տարին, որի ղեկին մոտ առաջին օրվանից անփոփոխ եղել է Վ. Հ. Համբարձումյանը։ Այդ գործունեությունն

անբաժան կերպով նվիրված է եղել հայրենական գիտության զարգացմանը, նրա գիտական հեղինակության բարձրացմանը: Աստղադիտարանի հոբելյանի առիթով ստորև մի փորձ է արվում հանրամատչելի ձևով պատմել ժամանակակից գիտության մեջ հայ աստղագետների ներդրման մասին:

Աստղագիտության, հնագույն այդ գիտության, զարգացման արդի փուլը աչքի է ընկնում իր խիստ արտահայտված ֆիզիկական բովանդակությամբ. նրա մեջ գերակշռող տեղ է զբաղեցնում աստղաֆիզիկան՝ տիեզերական մարմինների ու երևույթների բնույթի ու զարգացման օրինաչափությունների ուսումնասիրությամբ զբաղվող շատ երիտասարդ բաժինը: Այդ ուսումնասիրությունը հիմնվում է տիեզերական մարմինների ճառագայթման աստղաֆիզիկական դիտումների վրա:

Մեզ շրջապատող նյութական աշխարհում՝ Տիեզերքում, գոյություն ունի ֆիզիկական պայմանների և դրա հետ կապված նյութի վիճակների անսահման բազմազանություն: Նրանց մի մասը ոչ միայն բացակայում է Երկրագնդի վրա, այլ, ավելին, առայժմ անհասանելի է երկրային լաբորատորիաներում: Դրա շնորհիվ տիեզերական մարմինների ու երևույթների ուսումնասիրությունը հնարավորություն է ընձեռում բացահայտելու նյութի, միայն այդ արտասովոր պայմաններում դրսևորվող, գիտությանը դեռևս անհայտ, արմատական հատկությունները: Դրանով է պայմանավորված աստղաֆիզիկական հետազոտությունների հըսկայական նշանակությունը նյութական աշխարհի ճանաչման ու նյութի արմատական հատկությունների ուսումնասիրության համար և նրանց զգալի ազդեցությունը ճշգրիտ գիտությունների, հատկապես ֆիզիկայի, զարգացման վրա: Աստղաֆիզիկայի կարճատև պատմությունը հարուստ է այդ բանը հաստատող օրինակներով:

Բյուրականի աստղադիտարանը պատկանում է այն աստղադիտարանների շարքին, որոնք իրենց գործունեությունը լիովին նվիրել են աստղաֆիզիկային, հիմնականում աստղերի և Ծիր Կաթնի դասի աստղային հսկայական համակարգերի՝ գալակտիկաների ուսումնասիրությանը:

Ձգտելով չընդօրինակել հայտնի աստղադիտարաններին, Բյուրականի աստղադիտարանն իր գոյության առաջին տարիներին, ակադեմիկոս Վիկտոր Համբարձումյանի ղեկավարությամբ, մշակել է ուսումնասիրության իր ուրույն ոճը, որի համար բնորոշը դիտողական և տեսական հետազոտությունների սերտ զուգակցումն է: Ըստ որում առաջնությունը բոլոր դեպքերում տրվել է դիտողական աշխատանքներին, իսկ տեսական եզրակացությունները անվերապահորեն բխել են դիտումներից ստացվող փաստական տվյալների ընդհանրացման և տեսական վերլուծության արդյունքներից: Այդ յուրօրինակ մոտեցումն իրեն լիովին արդարացրել է և օգնել բացահայտելու նյութի տիեզերական գոյաձևերի բնույթին ու հատկություններին, նրանց առաջացման ու զարգացման երևույթներին վերաբերող մի շարք կարևոր օրինաչափություններ:

Առաջին լուրջ գիտական հաջողությունը աստղադիտարանում ծնվեց 1947 թվականին, նոր տիպի աստղային համակարգերի հայտնագործման հետ, որոնց տրվեց աստղասփյուռներ անվանումը: Այդ հայտնագործությունը, նրանից բխող կարևորագույն հետևություններով, ամբողջովին կանխորոշեց աստղադիտարանի գործունեության հետագա բեղմնավոր ուղին: Դա մի շրջան էր, երբ դիտողական աստղաֆիզիկան Հայաստանում իր առաջին քայլերն էր անում: Եվ հայ աստղագետները, շատ համեստ չափերի աստղադիտակների օգնությամբ, սկըսեցին աստղասփյուռների լուսանկարչական դիտումները:

Հետագայում Բյուրականում նոր, ավելի հզոր աստղադիտակների տեղակայմանը զուգընթաց դիտողական աշխատանքները զգալիորեն ընդլայնվեցին, թե՛ դիտման օբյեկտների և թե՛ դիտումների ժամանակ օգտագործվող մեթոդների իմաստով: Անշեղորեն աճեց տիեզերական ճառագայթման, մեր Գալակտիկայից դուրս գըտնըվող, արտագալակտիկական աղբյուրների դիտումների հարաբերական քանակը, և աստղերի հետ միասին դրանք դարձան ուսումնասիրության հիմնական օբյեկտները:

Անցյալ տարիներին հայ աստղագետներն իրենց կոլեգաների հետ արժեքավոր դիտումներ են կատարել նաև մի շարք սովետական (Աբասթումանի, Ղրիմի, Շամախիի) և արտասահմանյան (ԱՄՆ, Անգլիա, Ավստրալիա, Հունգարիա, Մեքսիկա, Ֆրանսիա) աստղադիտարաններում՝ ժամանակակից խոշորագույն աստղադիտակների և ռադիոդիտակների կիրառությամբ: Այդ բոլոր դիտումների համար բնորոշը նրանց տեսական ուղղվածությունը և աստղաֆիզիկայի բազմազան մեթոդների (լուսաչափական, սպեկտրալ, բևեռաչափական, ռադիոաստղագիտական և այլն) հաջող օգտագործումն է:

Բյուրականում կատարված դիտումների հիման վրա հայտնաբերվել են բազմաթիվ հետաքրքրական տիեզերական օբյեկտներ, այդ թվում՝ 3 գերնոր, երկու հարյուրից ավելի բռնկվող և փոփոխական, ավելի քան երկու



հարյուր սպիտակ թզուկ աստղեր, մի քանի տասնյակ մոլորակաձև միգամածություններ, շուրջ հազար կապույտ օբյեկտներ, սպեկտրներում պայծառ գծերով հարյուրից ավելի աստղեր, արտասովոր ուժեղ ուլտրամանուշակագույն ճառագայթում ունեցող ավելի քան 500 գալակտիկաներ և այլն:

Հայ աստղագետների դիտումներն օգնել են հայտնագործելու որոշ միգամածությունների լույսի բևեռացման բարձր աստիճանի (Խեցգետնաձև, NGC 2261[1] և այլ միգամածություններ) և աստղերի լույսի բևեռացման փոփոխականության (սառն գերհսկա N Ցեֆեոսի և այլ աստղեր) երևույթները, որոշելու տարբեր չափերի աստղային համակարգերի կառուցվածքի և դինամիկայի կարևոր հատկանիշներ, հայտնաբերելու անկայուն աստղերի ու գալակտիկաների ճառագայթման հետաքրքիր առանձնահատկություններ:

Հիշյալ դիտումները բխել են նյութի տիեզերական գոյաձևերի առաջացման ու զարգացման մեջ անկայուն երևույթների կարևոր դերի վերաբերյալ Բյուրականում մշակված տեսական պատկերացումներից: Իրենց հերթին այդ դիտումները, սովետական և արտասահմանյան աստղադիտարաններում կուտակված հարուստ դիտողական նյութի հետ միասին, հիմք են ծառայել աստղերի ու գալակտիկաների աշխարհում ընթացող անկայուն երևույթների, աստղերի ու աստղային համակարգերի առաջացման և զարգացման վերաբերյալ սկզբունքային նշանակություն ունեցող նոր պատկերացումների մշակման համար: Դրա շնորհիվ համեմատաբար փոքր աստղադիտակներով զինված Բյուրականի աստղադիտարանում կարճ ժամանակամիջոցում ստացվել են առաջնակարգ կարևորություն ունեցող գիտական արդյունքներ, որոնք զգալի ազդեցություն են թողել ժամանակակից աստղագիտության, առաջին հերթին աստղաֆիզիկայի, զարգացման վրա:

Առանձնահատուկ հետաքրքրություն են ներկայացնում իրենց զարգացման շրջադարձային փուլերում գտնվող աստղերի ու աստղային համակարգերի բնույթի, կառուցվածքի, դինամիկայի և էվոլյուցիայի վերաբերյալ Բյուրականում ստացված արդյունքները:

Համառոտակի ծանոթանանք կարևորագույն արդյունքներից մի քանիսի հետ:

Ուսումնասիրությունը ցույց է տվել, որ աստղասփյուռները, ի տարբերություն մինչ այդ հայտնի աստղային համակարգերի՝ աստղակույտերի, աստղերի անկայուն, քայքայվող համակարգեր են: Հաշվարկների համաձայն այդ համակարգերի քայքայման համար պահանջվող առավելագույն ժամանակամիջոցը մի քանի տասնյակ միլիոն տարի է: Հետևաբար նրանք չեն կարող գոյություն ունենալ դրանից ավելի երկար, այսինքն՝ նրանց տարիքը լավագույն դեպքում դրանից մեծ չէ: Մինչդեռ Գալակտիկայի աստղերի մեծամասնության (այդ թվում Արեգակի) տարիքը, ժամանակակից տվյալներով, մի քանի միլիարդ տարի է: Այստեղից անմիջականորեն բխում է, որ աստղասփյուռները աստղերի շատ երիտասարդ խմբավորումներ են: Առնվազն նույնքան երիտասարդ են աստղասփյուռներում գտնվող աստղերը: Այդ արմատական եզրակացությունը, որը հաստատվեց դիտողական բազմաթիվ տվյալներով, հիմք ծառայեց աստղերի ու նրանց համակարգերի առաջացման հետ կապված կարևորագույն հարցերի լուծման համար:

Մասնավորապես, աստղասփյուռների երիտասարդության փաստից հետևում է, որ մեր Գալակտիկայում, ինչպես նաև այլ գալակտիկաներում նոր աստղերի և աստղային համակարգերի ձևավորման ու զարգացման պրոցեսները ներկայումս շարունակվում են: Պարզվել է, որ դրանք ուղեկցվում են ֆիզիկական ու դինամիկական անկայունության զանազան դըրսևորումներով: Չափազանց կարևոր է այն փաստը, որ անկայունության այդ երևույթները շատ դեպքերում կապված են նյութի տիեզերական, երկրային լաբորատորիաներում անհասանելի վիճակների հետ: Ուստի, նրանց բազմակողմանի հետազոտությունները մեծ արժեք են ներկայացնում ոչ միայն աստղերի և աստղային համակարգերի առաջացման ու զարգացման, այլ նաև նյութի երկրային ֆիզիկային անմատչելի վիճակների ուսումնասիրության համար:

Աստղասփյուռները և նրանց կազմում դիտվող ավելի փոքր չափերի երիտասարդ աստղախմբերը (որոշ տիպի աստղակույտեր, Օրիոնի Տրապեցիայի տիպի բազմաստղեր, աստղաշղթաներ և այլն) դինամիկական անկայունության հետևանքով ժամանակի ընթացքում լայնանում և քայքայվում են: Այդ երևույթը հնարավոր չէ բացատրել ելնելով նոսր նյութի (գազի կամ փոշու) խտացման հետևանքով երկնային մարմինների ձևավորման, գիտության մեջ երկար տարիներ անվերապահորեն իշխող, պատկերացումից: Այն վկայում է, որ ինչպես աստղասփյուռների, այնպես էլ, ընդհանրապես, բոլոր աստղային համակարգերի առաջացումը կապված չէ նոսր նյութի խտացման հետ, այլ

[1] NGC *2261, N 82 և այլն— օբյեկտի անվանումը սովորաբար տրվում է համապատասխան ցուցակի կրճատ նշանակումով և նրանում այդ օբյեկտի հերթական համարով:*

ընդհականակը, խիտ կամ գերխիտ նյութի տրոհման արդյունքը է: Այլ կերպ ասած, տիեզերական նյութի էվոլյուցիան ընթանում է խիտ վիճակներից դեպի նոսր վիճակները կատարվող անցումների ձևով: Բյուրականում մշակված նախաաստղերի վարկածի համաձայն աստղերն ու աստղային համակարգերը, ինչպես նաև գազա-փոշային միգամածությունները ձևավորվում են մեծ խտություն և փոքր չափեր ունեցող, գիտությանն առայժմ անհայտ բնույթի, զանգվածային մարմինների՝ նախաաստղերի, տրոհման հետևանքով:

Տիեզերքում նյութի գիտությանն անհայտ վիճակների գոյության վերաբերյալ այդ պատկերացման շնորհիվ հնարավոր դարձավ համկանալ աստղասփյուռներում և երիտասարդ աստղերում դիտվող, մինչ այդ անբացատրելի մի շարք երևույթներ: Ավելին, այն թույլ տվեց կանխագուշակել որակապես նոր երևույթներ:

Գիտական կանխատեսության փայլուն օրինակ էր աստղասփյուռների լայնացման երևույթի կանխագուշակումը, այսինքն այնպիսի շարժումների (համակարգի կենտրոնից դեպի դուրս ուղղված), որոնք իրենց բնույթով արմատապես տարբերվում են գիտությանը մինչ այդ հայտնի բոլոր տեսակի շարժումներից: Հետագայում աստղերի տեսանելի շարժումների հետազոտությունները լիովին հաստատեցին աստղասփյուռների լայնացման երևույթը:

Ցավոք, մինչև այժմ չի հաջողվել իրականացնել գերխիտ նախաաստղային մարմինների անմիջական դիտումներ: Դրա պատճառը, հավանաբար, նրանց փոքր չափերը և ցածր լուսատվությունն են սպեկտրի՝ աստղաֆիզիկական դիտումների համար մատչելի մասում: Հետևաբար, նրանց հայտաբերման համար առայժմ կա մի ճանապարհ՝ փնտրել դրանց գոյության անուղղակի վկայություններ այն երևույթներում, որոնք կապված են աստղերի ու գալակտիկաների զարգացման նախնական փուլերի հետ:

Այդ իմաստով, առաջին, շատ կարևոր արդյունքները ստացվել են Բյուրականում, աստղասփյուռների կազմում դիտվող երիտասարդ, իրենց ֆիզիկական վիճակով անկայուն, անկանոն փոփոխական աստղերի ուսումնասիրությունից: Այսպես, պարզվել է, որ T Ցուլի տիպի[1] աստղերի ճառագայթման արագ փոփոխությունները պայմանավորված չեն նրանց չափերի և ջերմաստիճանի հնարավոր փոփոխություններով և չեն կարող բացատրվել ճառագայթման հայտնի պրոցեսներով:

*[1] Փոփոխական աստղերի տարբեր դասերը նշանակվում են իրենց դասի բնորոշ ներկայացուցիչների անունով, օրինակ T Ցուլի, FU Օրիոնի և այլն:*

Այդ աստղերի ճառագայթման փոփոխությունների վերլուծությունը բերել է այն հետևության, որ հիշյալ աստղերի արտաքին շերտերում ժամանակ առ ժամանակ հայտնվում են էներգիայի հզոր աղբյուրներ, որոնք արտաբերվում են նրանց ներքին, խորը շերտերից: Որպես հետևանք աստղի արտաքին շերտերում տեղի է ունենում ներաստղային էներգիայի զգալի քանակների անջատում, որը և հանգեցնում է աստղի ճառագայթման դիտվող փոփոխություններին: Նկատի ունենալով այն փաստը, որ հիշյալ աստղերը երիտասարդ են, բնական է ենթադրել, որ ներաստղային էներգիայի արտաբերում դեպի աստղի արտաքին շերտերը կատարվում է նախաաստղային գերխիտ նյութի՝ աստղի ընդերքում դեռևս պահպանված թանձրուկների կողմից:

Այդ տեսակետից գիտական մեծ հետաքրքրություն են ներկայացնում բռնկվող աստղերի ուսումնասիրության արդյունքները: Այդ աստղերի սովորաբար հանգիստ ճառագայթումը ժամանակ առ ժամանակ, բռնկման ձևով, ուժեղանում է (երբեմն մի քանի տասնյակ և ավելի անգամ) հաճախ մեկ րոպեից էլ պակաս ժամանակամիջոցում և ապա կրկին հանգում իր նախկին հզորությանը: Ճառագայթման այդ փոփոխություններն ուղեկցվում են աստղի սպեկտրի ուժեղ ձևափոխմամբ, որի արդյունքը լինում է այն, որ բռնկման շրջանում այն նմանվում է T Ցուլի տիպի սպեկտրի: Այդ փոփոխությունները նույնպես հաջողությամբ կարելի է բացատրել աստղի արտաքին շերտերում ներաստղային էներգիայի առանձին բաժինների անջատման պրոցեսներով՝ գերխիտ նյութի թանձրուկների արտաբերման հետևանքով:

Վերջերս գերխիտ նախաաստղային նյութի միջոցով ներաստղային էներգիայի արտաբերման պատկերացումը հաջողությամբ կիրառվել է ֆուորների երևույթի բացատրության նպատակով: Դրանք FU Օրիոնի դասի աստղեր են, որոնց տեսանելի ճառագայթման հզորությունը, հանկարծակի ու կարճատև սաստկացումից հետո (շուրջ 100 անգամ), երկար ժամանակ մընում է այդ բարձր մակարդակի վրա: Այդ երևույթի մեկնաբանությունն աստղի ներքին կառուցվածքի արմատական վերակառուցման հետևանքով, նրա էներգիայի աղբյուրների հզորության աճով հանդիպում է անհաղթահարելի այն դժվարությանը, որ նման վերակառուցման համար անհրաժեշտ են շատ ավելի երկարատև ժամանակամիջոցներ: Նոր բացատրության համաձայն, մինչև աստղի պայծառության աճը նրա շուրջը գոյություն ունեն գերխիտ նյութի թանձրուկներ, որոնք անընդհատ արձակում են մեծ էներգիայի մասնիկներ: Ֆուորի երևույթը սկսվում է այն բանից հետո, երբ աստղի շուրջը ինչ-որ անհայտ պատճառներով առաջանում է տարածված մթնոլորտ, որն աստիճանաբար իր մեջ ընդգրկում է մեծ էներգիայի մասնիկների այդ աղբյուրները: Աստղի տեսանելի ճառագայթման հզորության դիտվող աճն այս դեպքում կարելի է բացատրել աստղի մթնոլորտի կողմից մեծ էներգիայի մասնիկների կինետիկ էներգիայի ձևափոխմամբ՝ օպտիկական ճառագայթման:

Ֆուորների երևույթի այս բացատրությունը ելնում է այն պատկերացումից, որ դրանք երիտասարդ աստղեր են և մշակվել է միայն վերջերս, Կարապի աստղասփյուռում նոր ֆուորի հայտնաբերումից հետո, երբ պարզվեց, որ մինչև պայծառության ուժեղ աճը, այն ունեցել է T Ցուլի տիպի սպեկտր:

Այսպիսով, բոլոր քննարկված դեպքերում նախաաստղային գերխիտ նյութի թանձրուկների առկայությունն աստղի ընդերքում սերտորեն կապված է նրա երիտասարդության հետ:

Եթե T Ցուլի տիպի աստղերի երիտասարդությունն անխուսափելիորեն բխում է այն փաստից, որ դրանք բոլոր դեպքերում դիտվում են աստղասփյուռների կազմում, ապա բռնկվող աստղերի երիտասարդությունը հաստատվել է նրանց վիճակագրական հետազոտությամբ: Ցույց է տրվել, որ բռնկվող աստղերի թիվը շատ մեծ է աստղասփյուռներում և երիտասարդ աստղակույտերում: Այսպես, ստացվել են փաստարկներ, որոնք վկայում են, որ մոտավորապես, համեմատաբար երիտասարդ, Բազումք (Պլեյադներ) աստղակույտում գրեթե բոլոր թզուկ աստղերը պետք է բռնկվող լինեն: Այդ արդյունքը հաստատվել է անմիջական դիտումներով: Բյուրականի, Բուդապեշտի, Տոնանցինտլայի (Մեքսիկա) և Ասիագոյի (Իտալիա) աստղադիտարաններում Բազումք աստղակույտի տիրույթի հետևողական լուսանկարչական դիտումների շնորհիվ, վերջին մի քանի տարում այդ տիրույթում արդեն հայտնաբերվել է շուրջ 250 նոր բռնկվող աստղ, չորս անգամ ավելի, քան հայտնի էր մինչ այդ:

Այդ պատկերացումից հետևում է, որ բռնկումային ակտիվության փուլը, երբ աստղի ամենակարևոր հատկանիշներից մեկը բռնկման ունակությունն է, թզուկ աստղերի զարգացման նախնական փուլերից է: Ստացվել են վկայություններ այն մասին, որ բռնկումային ակտիվության փուլը հաջորդում է թզուկ աստղերի զարգացման ամենավաղ, T Ցուլի տիպի փուլին, որի համար բնորոշ են աստղի պայծառության անկանոն, համարյա անընդհատ փոփոխությունները:

Այս արդյունքների շնորհիվ, դիտումների հիման վրա, հաջողվել է անմիջականորեն բացահայտել թզուկ աստղերի զարգացման վաղ փուլերի հաջորդականությունը, որը շատ կարևոր է աստղային էվոլյուցիայի պրոբլեմի համար:

Գերխիտ նախաաստղերի վարկածը ոչ միայն բացատրում է աստղերի առաջացման և ճառագայթման հետ կապված մի շարք երևույթներ, որոնք անհասկանալի են նոսր նյութի խտացման հետևանքով աստղերի ձևավորման դեպքում, այլև հնարավոր է դարձրել կանխագուշակելու նոր երևույթներ, որոնք այնուհետև հայտաբերվել են դիտումների միջոցով:

Այսպես, աստղի արտաքին շերտերում նախաաստղային նյութի թանձրուկների միջոցով էներգիայի առանձին բաժինների արտաբերման հետևանքով ծնվող ճառագայթման հատկությունները կախված են այն շերտի խորությունից, որտեղ էներգիան ազատվում է: Դրանից ելնելով, Բյուրականում կանխագուշակվել էր տարբեր ֆիզիկական առանձնահատկություններ ունեցող բռնկումների երկու դասի («արագ» և «դանդաղ») գոյությունը: Այդ կանխագուշակումը հաստատվեց մեքսիկացի աստղագետ Հարոյի դիտումներով:

Նախաաստղերի վարկածի տեսական հիմնավորումը կապված էր շատ մեծ խտությունների դեպքում նյութի վարքի ուսումնասիրության հետ: Խոսքը նյութի այնպիսի խտությունների մասին է, որ կարող է գերազանցել ատոմների միջուկներում եղած խտությունը՝ ավելի քան միլիարդ տոնն մեկ խորանարդ սանտիմետրում: Այդ կապակցությամբ հայ տեսաբանները մշակել են գերխիտ աստղային գոյաձևերի տեսությունը, միջուկային և ավելի մեծ խտությունների համար: Պարզվել է, որ այդ դեպքում աստղի կորիզը, հիմնականում, կազմված է տարրական ծանր մասնիկներից՝ հիպերոններից, որոնք երկրային պայմաններում խիստ անկայուն են և անմիջապես (ընդամենը տասնմիլիարդերորդ վայրկյանի ընթացքում) քայքայվում են: Սակայն նյութի շատ մեծ խտությունների պայմաններում դրանք կայունանում և կազմում են գերխիտ աստղային գոյաձևերի զանգվածի զգալի մասը:

Այդ արդյունքները տեսականորեն հիմնավորում են նյութի գերխիտ, տիեզերական գոյաձևերի վերաբերյալ նոր պատկերացումը:

Հարկ է նշել, որ գերխիտ տիեզերական մարմինների գոյության վճռական հաստատում էր ճառագայթման շատ կարճատև (մեկ վայրկյանի կարգի) և խիստ պարբերական փոփոխու-

թյուններով օժտված ռադիոաղբյուրների՝ բաբախիչների (պուլսարներ) հայտնագործումը 1968 թ., անգլիացի ռադիոաստղագետների կողմից:

Աստղային էվոլյուցիայի և նյութի արտասովոր վիճակների բացահայտման տեսակետից արտակարգ հետաքրքրություն ունեցող արդյունքներ են ստացել հայ աստղագետները՝ գալակտիկաների աշխարհում ընթացող անկայուն երևույթների ուսումնասիրության հիման վրա: Այդ բնագավառում հետազոտություններն սկսվեցին 50-ական թվականների սկզբին, որպես աստղային էվոլյուցիային վերաբերող հետազոտությունների տրամաբանական շարունակություն: Ելնելով վերը շարադրված այն պատկերացումից, որ տիեզերական նյութի զարգացման նախնական փուլերը կապված են մեծ խտությունների և էներգիաների հետ, և նկատի ունենալով, որ գալակտիկաների աշխարհում նյութի զարգացման փուլերն շատ ավելի տևական են, բնական էր ենթադրել, որ գալակտիկաներում նախաստղային նյութի հատկությունները պետք է բացահայտ ձևով դրսևորվեն շատ ավելի երկար ժամանակամիջոցներում, քան աստղերում:

Առաջին իսկ հետազոտությունները հաստատեցին, որ իրոք անկայունության երևույթները գալակտիկաների աշխարհում հանդիպում են ավելի հաճախ, ընդ որում, առանձնապես բուռն ձևով և շատ ավելի մեծ մասշտաբներով, քան աստղերի աշխարհում: Պարզվել է, որ գալակտիկաների կույտերի առնվազն մի մասը գտնվում է լայնացման, քայքայման վիճակում: Հայտաբերվել են գալակտիկաների ֆիզիկական անկայունության տարբեր դրսևորումներ՝ անսովոր կապույտ գույնի շիթերի և արբանյակների, կենտրոնական տիրույթներից գազային նյութի արտավիժումների ու հանգիստ արտահոսքի, ուժեղ ուլտրամանուշակագույն, ռադիո և ինֆրակարմիր ճառագայթման և մի շարք այլ ձևերով:

Գալակտիկաներում անկայունության երևույթների բազմակողմանի ուսումնասիրությունը հանգեցրել է սկզբունքային նշանակություն ունեցող այն հետևությանը, որ այդ երևույթներն անմիջականորեն կապված են գալակտիկաների զարգացման և նոր գալակտիկաների ձևավորման հետ և գալակտիկաների կենտրոնական փոքր խտացումների՝ նրանց կորիզների ակտիվության արդյունք են:

Առանձնահատուկ հետաքրքրություն են ներկայացնում գալակտիկաների կորիզների ակտիվության շատ հզոր դրսևորումները, որոնք արտացոլում են նրանց վիճակի լուրջ փոփոխությունները: Դրանցից են գալակտիկաների ռադիոբռնկումները, երբ կորիզում տեղի ունեցող պայթյունների հետևանքով գալակտիկան դառնում է վիթխարի հզորության ռադիոճառագայթման աղբյուր՝ ռադիոգալակտիկա: Գալակտիկաների կորիզների բուռն ակտիվության վիթխարի դրսևորումներ են կորիզից գազային մեծ զանգվածների, նյութի շիթերի և առանձին խտացումների արտավիժումներով ուղեկցվող պայթյունները: Այդ երևույթները տարրական մասնիկների արձակման ամենահզոր պրոցեսներն են Տիեզերքում, որոնց ժամանակ անջատվող էներգիան միլիարդ միլիարդավոր անգամ գերազանցում է ամենահզոր ջրածնային ռումբերի էներգիային:

Հետազոտությունները ցույց են տվել, որ գալակտիկաների կորիզներում գտնվող աստղերը և ցրված գազա-փոշային նյութը չեն կարող ակտիվության հիշյալ երևույթների պատճառը լինել: Այստեղից անխուսափելիորեն հետևում է գալակտիկաների կորիզներում նյութի մեծ խտությամբ և էներգիայի հսկայական պաշարներով օժտված անհայտ բնույթի զանգվածային մարմինների գոյությունը:

Գալակտիկաների կորիզների ակտիվության և արտասովոր հատկությունների վերաբերյալ բյուրականյան պատկերացման առաջին փայլուն հաստատումները ստացվեցին արդեն 1963 թ., նրա մշակումից ընդամենը մի քանի տարի անց, ամերիկյան գիտնականների կողմից, աշխարհի խոշորագույն աստղադիտակով կատարված դիտումների հիման վրա:

Դրանցից առաջինը տիեզերական ռադիոճառագայթման աստղանման աղբյուրների՝ քվազարների[1] հայտնագործումն էր: Քվազարները, կորիզների ակտիվության պատկերացման համաձայն, իրենցից ներկայացնում են գալակտիկաների զարգացման նախնական փուլը, երբ գոյություն ունի միայն մերկ կորիզը, իսկ շուրջը գալակտիկա դեռ չի ձևավորվել: Հետագայում կորիզի շուրջը գալակտիկայի ձևավորմանը և զարգացմանը զուգընթաց, նվազում է նրա ակտիվությունը՝ նյութի և էներգիայի «շռայլ» ծախսման հետևանքով: Հետևաբար, ամենաակտիվ կորիզներ կարող են դիտվել միայն իրենց զարգացման ամենավաղ փուլերում գտնվող գալակտիկաների մոտ: Այդ տեսակետին լիովին ներդաշնակում են քվազարների շատ բարձր լուսատվությունը՝

[1] *Քվազար-քվազիաստղային (համարյա աստղային) տեսք ունեցող օբյեկտ: Երկնքի լուսանկարների վրա քվազարները նման են աստղերին, սակայն իրենց ճառագայթման հզորությամբ նրանք շատ անգամ գերազանցում են հարյուր միլիարդավոր աստղերից կազմված գերհսկա գալակտիկաներին:*



սպեկտրի ռադիո և օպտիկական տիրույթներում, ինչպես նաև դրանց ճառագայթման արագ փոփոխականությունը, որը և վկայում է այդ օբյեկտների արտասովոր փոքր չափերի մասին:

Երկրորդ կարևոր հայտնագործությունը M82 գալակտիկայի կորիզում տեղի ունեցած պայթման հետևանքով դուրս ժայթքած գազային նյութի անմիջական դիտումներն էին, որոնք որոշակիորեն հաստատում են գալակտիկաների կորիզների պայթունային ակտիվության հատկությունը:

Վերջին տարիներին գալակտիկաների կորիզների ակտիվության գաղափարի օգտին մի շարք նոր, լուրջ փաստարկներ են կուտակվել աշխարհի խոշորագույն աստղադիտակներով կատարված բազմապիսի դիտումներով:

Այսպես, Հայկական ՍՍՀ գիտությունների ակադեմիայի իսկական անդամ Բենիամին Մարգարյանը, Բյուրականի աստղադիտարանի Շմիդտի սիստեմի լայնանկյուն մետրանոց աստղադիտակի և աշխարհում խոշորագույն օբյեկտիվ պրիզմայի[1] միջոցով կատարված դիտումների հիման վրա հայտնագործել է անսովոր ուժեղ ուլտրամանուշակագույն ճառագայթում ունեցող գալակտիկաներ (Մարգարյանի գալակտիկաներ): Մինչև այժմ հայտնագործվել է ավելի քան 500 այդպիսի գալակտիկա: Նրանց ճառագայթման միայն արտասովոր գույնը, անկախ դրա պատճառից (ջերմ կապույտ աստղերի մեծ առատության կամ անծանոթ բնույթի ճառագայթում), արդեն վկայում է այն մասին, որ այդ գալակտիկաներում տեղի են ունենում անկայուն երևույթներ:

Մարգարյանի գալակտիկաների սպեկտրների դիտումները, որոնք կատարվել են, մեծ մասամբ, Մոսկվայի Շտեռնբերգի անվան աստղագիտական ինստիտուտի և Դայերի աստղադիտարանի (ԱՄՆ) համագործակցությամբ, հիմք են ծառայել նրանց ֆիզիկական անկայունության հետ կապված մի շարք հետաքրքրական հատկությունների բացահայտմանը:

Պարզվել է, որ այդ գալակտիկաների շուրջ 90 տոկոսի սպեկտրներում դիտվում են պայծառ գծեր, որը բնորոշ է նոսր գազային զանգվածների ճառագայթմանը: Ստացվել են վկայություններ այն մասին, որ գազային այդ զանգվածները դուրս են ժայթքել գալակտիկաների կորիզներից: Օրինակ, Մարգարյան 6 գալակտիկայի հետևողական դիտումների հիման վրա ցույց է տրվել, որ ընդամենը մի քանի տարի առաջ այնտեղ տեղի է ունեցել ոչ մեծ մի պայթյուն, որն ուղեկցվել է գազային նյութի ժայթքումով:

Մարգարյանի գալակտիկաների գրեթե մեկ տասներորդ մասը սեյֆերտյան տիպի են: Այսպես են կոչվում ամերիկացի աստղագետ Սեյֆերտի ուսումնասիրած գալակտիկաները, որոնց մեջ դիտվում են գազային զանգվածների անկանոն շարժումներ, մեկ վայրկյանում մինչև մի քանի հազար կիլոմետր արագություններով, կապված նրանց կորիզների ակտիվության հետ: Մինչև վերջերս հայտնի սեյֆերտյան գալակտիկաների թիվը չէր անցնում երկու տասնյակից, մինչդեռ Մարգարյանի ցուցակի գալակտիկաների մեջ արդեն հայտնաբերվել են այդ տիպի ավելի քան 30 գալակտիկաներ, որոնք, սակայն, ունեն զգալիորեն ավելի բարձր լուսատվություն:

Այսպիսով, հաստատվել է, որ Մարգարյանի գալակտիկաները օժտված են ակտիվ կորիզներով և միջանկյալ դիրք են գրավում քվազարների և ոչ ակտիվ կորիզներ ունեցող սովորական գալակտիկաների միջև:

Մեկ հոդվածի սահմաններում դժվար է թվարկել Բյուրականի աստղագետների բոլոր նշանակալից հետազոտությունների արդյունքները: Սակայն միայն բերվածն էլ բավական են ընդհանուր պատկերացում կազմելու աստղագիտության զարգացման գործում Բյուրականի աստղագետների նշանակալից հաջողությունների մասին: Նրանց հետազոտությունները լուրջ ավանդ են համաշխարհային գիտության գանձարանում և ստեղծել են գիտական նոր ուղղություններ: Այդ հետազոտություններով բացահայտվել են աստերում ու աստղային համակարգերում տեղի ունեցող վիթխարի հզորության անկայուն երևույթներ՝ կապված նյութի տիեզերական տարբեր գոյաձևերի ձևավորման ու զարգացման հետ:

Դրանք վկայում են, որ, իրոք, տիեզերական նյութի էվոլյուցիան սերտորեն կապված է նյութի կառուցվածքի պրոբլեմի հետ: Մասնավորապես, աստղերում ու գալակտիկաներում տեղի ունեցող ֆիզիկական և դինամիկական անկայունության երևույթների ուսումնասիրությունը ցույց է տվել, որ դրանց մեկնաբանության համար անհրաժեշտ է նյութի կառուցվածքի ու արմատական հատկությունների վերաբերյալ մեր պատկերացումների որակական ընդլայնում: Այսպես, լուրջ հիմքեր կան

[1] *Օբյեկտիվ պրիզման սպակյա սեպ է, որի միջով անցնող լույսը վեր է ածվում սպեկտրի: Այն դրվում է լայնանկյուն աստղադիտակի բացվածքի առջև, որով հնարավոր է դառնում միանգամից լուսանկարել աստղային դաշտում գտնվող հազարավոր ու տասնյակ հազարավոր թույլ աստղերի և գալակտիկաների սպեկտրներ:*

ենթադրելու, որ գալակտիկաների կորիզների ակտիվության տարբեր դրսևորումներում ի հայտ են գալիս նյութի գիտությանն անհայտ արմատական հատկությունները, իսկ անսովոր հզոր էներգաազատման հետ կապված պրոցեսներում, հավանաբար, տեղի ունեն նաև հայտնի ֆիզիկական օրենքների խախտումներ:

Հայ աստղագետների հետազոտությունները հեղաշրջում կատարեցին աստրոֆիզիկայում և հանգեցրին նրանում էվոլյուցիոն տեսակետի հաղթանակին: Նրանց արդյունքները գիտական մեծ հետաքրքրություն են ներկայացնում ինչպես աստղերի ու աստղային համակարգերի առաջացման ու զարգացման օրինաչափությունների բացահայտման, այնպես էլ նյութի գիտությանն անհայտ տիեզերական գոյաձևերի և, ընդհանրապես, նյութի կառուցվածքի ու հատկությունների ուսումնասիրության տեսակետից:

Մեր ժամանակի ամենամեծ աստղագետներից մեկի՝ հոլանդացի գիտնական Յան Օորտի, կարծիքով աստղասփյուռների հայտնագործման ու ուսումնասիրության, գալակտիկաների կորիզների ակտիվության բացահայտման ու տեսական վերլուծության ասպարեզում Բյուրականում կատարված հետազոտությունները «աստղագիտության մեջ սովետական գիտնականների ամենակարևոր ներդրումն են»:

Հայ աստղագետների հետազոտությունների գնահատության փայլուն արտահայտություններից են Վ. Հ. Համբարձումյանին ու Բ. Ե. Մարգարյանին պետական մրցանակի շնորհումը (1950), Բյուրականի աստղադիտարանի պարգևատրումը (1967) Սովետական Միության կառավարական բարձրագույն պարգևով՝ Լենինի շքանշանով (առաջինը և առայժմ միակը մեր երկրի աստղագիտական հիմնարկությունների մեջ) և նրա հիմնադիր ու անփոփոխ գիտական ղեկավար Վ. Հ. Համբարձումյանին ՍՍՀՄ գիտությունների ակադեմիայի բարձրագույն պարգևի՝ Լոմոնոսովի մեդալի շնորհումը (1971):

Բյուրականի աստղադիտարանը բազմիցս եղել է արդի գիտության կարևորագույն պրոբլեմների քննարկմանը նվիրված համամիութենական և միջազգային գիտաժողովների հավաքատեղի, գիտաժողովներ, որոնք մեծ չափով նպաստել են արդի աստղաֆիզիկայի զարգացմանը:

1965 թ. հայ աստղագետներին վստահվեց համամիութենական գիտական նոր «Աստղաֆիզիկա» հանդեսի հրատարակությունը: Կարճ ժամանակում այն լայն ճանաչում գտավ գիտական աշխարհում: «Աստղաֆիզիկան» առաջին համարից սկսած ամբողջությամբ թարգմանվում և հրապարակվում է անգլերեն լեզվով՝ ԱՄՆ-ում:

Զարգացման լայն հեռանկարներ են բացվում Բյուրականի աստղադիտարանի առջև առաջիկա տարիներին: Աստղաֆիզիկական դիտումների հնարավորությունները մեծ չափով կընդլայնվեն, իսկ գիտական հետազոտությունների արդյունավետությունը զգալիորեն կբարձրանա Եվրոպայում խոշորագույն աստղադիտակներից մեկի՝ 2.6 մ տրամագծով դասական սիստեմի հայելավոր աստղադիտակի տեղակայումից հետո: Ներկայումս ավարտին են մոտենում այդ աստղադիտակի 21 մ տրամագծով դիտողական աշտարակի և նրա պտտվող մետաղական գմբեթի կառուցման աշխատանքները: Լենինգրադի օպտիկամեխանիկական միավորումն արդեն ավարտել է աստղադիտակի կառուցումը և սկսել նրա հանգույցների հավաքումը Բյուրականում, որոնք այնուհետև կտեղադրվեն ու կտեղակայվեն դիտողական աշտարակում: Նոր աստղադիտակի արդյունավետ օգտագործումն ապահովելու համար աստղադիտարանում նախապատրաստական աշխատանքներ են տարվում աստղաֆիզիկական դիտումներում կատարելագործված լուսընդունիչների և լույսի ուսումնասիրության ժամանակակից սարքերի ու մեթոդների կիրառության նպատակով:

Առաջիկայում է՛լ ավելի կընդլայնվի Բյուրականի աստղադիտարանի գիտական համագործակցությունը սովետական և արտասահմանյան աստղադիտարանների հետ, հատկապես աստղերի ու գալակտիկաների աշխարհում ընթացող անկայուն երևույթների համատեղ ուսումնասիրության ասպարեզում:

Բյուրականի աստղագետները համակված են արդի գիտության մեջ նվաճված առաջավոր դիրքերը առաջիկայում ամուր պահպանելու ձգտումով և ոչ մի ջանք չեն խնայում այդ դժվարին առաջադրանքը պատվով կատարելու համար:



Ա. ԿԻՎԱ

# ԱՖՐԻԿԱ. ԱԶԳԱՅԻՆ ԱԶԱՏԱԳՐԱԿԱՆ ՇԱՐԺՄԱՆ ԱՐԴԻ ԷՏԱՊԸ*

**ԱՖՐԻԿՅԱՆ** ժողովուրդների ազգային-ազատագրական շարժումը համաշխարհային հեղափոխական պրոցեսի անբաժանելի բաղկացուցիչ մասն է: Նվաճելով քաղաքական անկախություն, աֆրիկյան երկրների մեծ մասը թևակոխել է ազգային-ազատագրական հեղափոխության երկրորդ էտապը՝ տնտեսական և սոցիալական ազատագրության համար մղվող պայքարի էտապը:

«Ներկայումս այդ երկրների հիմնական խնդիրը,— ասված է կոմունիստական ու բանվորական կուսակցությունների 1969 թվականի միջազգային խորհրդակցության հիմնական փաստաթղթում,— տնտեսական, սոցիալական և քաղաքական զարգացումն է, որին կարելի է հասնել իմպերիալիզմի նկատմամբ իսկական անկախություն նվաճելու շրջանակներում միայն, ինչպես նաև դեմոկրատական ու հեղափոխական խոր վերափոխումների շնորհիվ»[1]:

Աֆրիկայի անկախ պետությունները որոշ պայմանականությամբ կարելի կլիներ բաժանել երեք խմբի. սոցիալիստական օրիենտացիայի երկրներ, զարգացման կապիտալիստական ուղին թևակոխած երկրներ և երկրներ, որոնք դեռևս իրենց վերջնական ընտրությունը չեն կատարել: Ամենից ավելի մեծ թվով պետություններ կարելի է դասել երկրորդ և երրորդ խմբերի շարքը:

Նման բաժանման հարաբերականությունը բացատրվում է այն բանով, որ աֆրիկյան երկրների մեծ մասում, ըստ էության, միատիպ է տնտեսական բազիսը: Նրանք իրարից տարբերվում են գլխավորապես քաղաքական վերնաշենքով: Աֆրիկյան մայրցամաքում դեռևս լրիվ չեն լուծվել նաև ազգային-ազատագրական հեղափոխության առաջին էտապի խնդիրները՝ ուղղակի գաղութային տիրապետության վերացման խնդիրները: Աֆրիկայի հարավում, գաղութային տանջարաններում շարունակում են տառապել ավելի քան 30 միլիոն աֆրիկացիներ:

Ազգային ազատագրական հեղափոխության առանձնահատկությունը Աֆրիկայում այն է, որ զուգահեռաբար լուծվում են երկու էտապների խնդիրներ՝ գաղութների ժողովուրդները պայքար են մղում ազգային անկախության համար, սովերեն պետությունների ժողովուրդները՝ տնտեսական ու սոցիալական ազատագրության համար:

## ԱԶԱՏԱԳՐԱԿԱՆ ՊԱՅՔԱՐՆ ՈՒԺԵՂԱՆՈՒՄ Է

**ԱԶԳԱՅԻՆ-ԱԶԱՏԱԳՐԱԿԱՆ** հեղափոխության ուղին վերընթաց ուղիղ գծի նման չէ: Մի քանի տարի առաջ իմպերիալիզմը սկսեց մի շարք հակագրոհներ. հենվելով տեղական ռեակցիայի վրա, նրան հաջողվեց կազմակեր-

[1] *Իմպերիալիզմի դեմ մղվող պայքարի խնդիրները արդի էտապում և կոմունիստական ու բանվորական կուսակցությունների, բոլոր հակաիմպերիալիստական ուժերի գործողությունների միասնությունը, Երևան, 1969, էջ 52:*

* *Տպագրվում է մասնակի համառոտումներով: Խմբ.:*

պել պետական մի շարք աջ հեղաշրջումներ, որոշ վնաս հասցնել առաջադիմական դեմոկրատական ուժերին:

Սակայն ազգային ազատագրական պայքարի կարճատև տեղատվությանը փոխարինելու եկավ նոր, հզոր մակընթացությունը: Ազգային հայրենասիրական ուժերը սկսեցին լուրջ հարվածներ հասցնել իմպերիալիզմի դիրքերին Աֆրիկայում, նեղել նրա տեղական գործակալներին: Աֆրիկան, կարծես, երկրորդ անգամ վերածնվեց իմպերիալիզմի դեմ մղվող անընդմեջ գոտեմարտում:

Իմպերիալիզմի դեմ, ռասիզմի ու գաղութատիրության վերջին ամրոցները ոչնչացնելու համար աֆրիկյան ժողովուրդների մղած պայքարի վերելքը արագացավ իմպերիալիստական տերությունների և ռասիստական գաղութային վարչակարգերի կոպիտ, երբեմն պրովոկացիոն գործողությունների հետևանքով: Նշենք դրանցից մի քանիսը: Դա, նախ, Պրետորիայի և Լիսաբոնի հարանոն ռազմական օգնությունն է ՆԱՏՕ-ի երկրներին և Անգլիայի փորձերը՝ Ռոդեզիայի աֆրիկյան բնակչության շահերի հաշվին գործարք կնքել Սմիթի վարչակարգի հետ: Դա Հարավ-Աֆրիկյան Հանրապետության ու Պորտուգալիայի չդադարող սպառնալիքներն են այն անկախ պետությունների հասցեին, որոնք օգնություն են ցույց տալիս ազգային-ազատագրական զինված շարժումներին. դա Զամբիայի ու Տանզանիայի տերիտորիայի պարբերաբար կրկնվող ռմբակոծություններն են պորտուգալական ավիացիայի կողմից:

Աֆրիկյան ղեկավարները գնալով ավելի շատ են համոզվում, որ քանի դեռ մայրցամաքում կպահպանվեն ռասիստական-գաղութային վարչակարգերը, չի կարող ապահովված լինել իրենց երկրների սուվերենությունը:

Աֆրիկյան ժողովուրդների հակաիմպերիալիստական պայքարի ակտիվացմանը ոչ պակաս չափով նպաստեց Սովետական Միության, սոցիալիստական մյուս երկրների ամրապնդվող համերաշխությունը ազգային-ազատագրական շարժումների հետ: Հատկանշական է, որ ՆԱՏՕ-ի անդամ առանձին երկրների կառավարություններն անգամ, հարկադրված լինելով հաշվի նստել հասարակական կարծիքի հետ, սահմանազատվում են Պորտուգալիայի գաղութային պատերազմներից:

Ինչո՞ւմն է արտահայտվում հակագաղութային, հակաիմպերիալիստական պայքարի ակտիվացումը: Անել է աֆրիկյան անկախ պետությունների ջանքերի կոորդինացման աստիճանը ազգային ազատագրական զինված շարժումներին օգնություն ցույց տալու նպատակով: Փետրվար ամսին Եթովպիայի մայրաքաղաք Ադիս-Աբեբայում կայացած Աֆրիկյան միասնության կազմակերպության (ԱՄԿ) մինիստրների խորհրդի նստաշրջանը որոշում ընդունեց նշանակալի չափով մեծացնել նյութական օգնությունը պայքարող ժողովուրդներին: Աֆրիկյան միասնության կազմակերպության անդամ երկրների պետությունների ու կառավարությունների ղեկավարների 9-րդ ասամբլեան, որը կայացավ Ռաբատում (Մարոկկո) այս տարվա հունիսի կեսին, կոնկրետացրեց այդ որոշումը, միաձայն բանաձև ընդունելով ԱՄԿ ազատագրության կոմիտեի բյուջեն 50 տոկոսով ավելացնելու մասին:

Ուժեղանում է աֆրիկյան բնակչության դիմադրությունը կամայականության ու ապօրինության դեմ՝ ռասիստական գաղութային վարչակարգերում: Անել են զինված շարժումների կազմակերպվածությունն ու մարտունակությունը, երևան են եկել պարտիզանների մարտական գործողությունների նոր շրջաններ պորտուգալական գաղութներում: «Նյու-Յորք թայմս» թերթը գրում էր. «Սահարայից մինչև Բարեհույս հրվանդանը.... աֆրիկացիները ոտքի են ելնում ամենաանհավանական վայրերում, որպեսզի մարտահրավեր նետեն իրենց սպիտակ կառավարողներին»[1]:

Պորտուգալական գաղութներում զինված պայքարը գլխավորում են ազգային դեմոկրատական կուսակցությունները՝ Անգոլայի ազատագրության ժողվրդական շարժումը (ՄՊԼԱ), Մոզամբիկի ազատագրության ճակատը (ՖՐԵԼԻՄՈ), Գվինեայի ու Կանաչ հրվանդանի կղզիների անկախության աֆրիկական կուսակցությունը (ՊԱԻԳԿ):

Դեռ նախքան պորտուգալական գաղութատիրության վերջնական կործանումը, ազատագրված երկրում ծնունդ է առնում նոր կյանքը. ստեղծվում են հեղափոխական-դեմոկրատական իշխանության օրգաններ, դրանց համապատասխանող տնտեսական ու սոցիալական կառուցվածք, կառուցվում են դպրոցներ, հիվանդանոցներ, կարգավորվում է առաջին անհրաժեշտության առարկաների արտադրությունը և այլն: Այսպիսով, կուտակվում է վարչական տնտեսական շինարարության արժեքավոր փորձ, ձևավորվում, դաստիարակվում են նոր կադրեր, ուրվագծվում է ծագող վարչակարգերի սոցիալ-քաղաքական դեմքը:

¹) „The WN York Times“, Februarg 7, 1972.



Պորտուգալական գաղութների ազատագրված շրջաններում ստեղծվող հասարակական սիստեմների հեղափոխական-դեմոկրատական էությունը գաղութարարների մոտ այլևս պատրանքներ չի թողնում այն մասին, որ նրանց կհաջողվի պահպանել իրենց դիրքերը, եթե այդ երկրները նվաճեն քաղաքական անկախություն:

Պորտուգալական գաղութների ազգային ազատագրական հեղափոխությունների սոցիալ-քաղաքական օրիենտացիան որոշակի չափով ազդում է նաև այդ երկրների նկատմամբ Աֆրիկայի անկախ երկրների վերաբերմունքի վրա: Պահպանողական վարչակարգեր ունեցող պետությունները ակնհայտորեն դժկամությամբ են համաձայնում համագործակցել ՄՊԼԱ-ի, ՖՐԵԼԻՄՈ-ի, ՊԱԻԳԿ-ի գլխավորած ազգային հայրենասիրական ուժերի հետ և պատրաստ են հենվելու այնպիսի հակադիր պառակտչական խմբավորումների վրա, ինչպիսիք են Անգոլայի՝ վտարանդիության մեջ գտնվող հեղափոխական կառավարությունը (ԳՐԱԵ), Մոզամբիկի հեղափոխության կոմիտեն (ԿՈՐԵՄՈ) և ուրիշ մի քանիսը: Այս հանգամանքը բարդացնում է աֆրիկյան հայրենասերների պայքարը պորտուգալական գաղութարարների դեմ:

Հակագաղութային պայքարի զարգացումը Ռոդեզիայում երկար ժամանակ կասեցվում էր ազգային ուժերի պառակտմամբ: Երկպառակությունները, որոնք երբեմն բացահայտ զինված բախումների էին հասնում աֆրիկացիների երկու հիմնական քաղաքական կազմակերպությունների՝ Զիմբաբվեի աֆրիկյան ժողովրդի միության (ԶԱՊՈՒ) և Զիմբամբվեի աֆրիկական ազգային միության (ԶԱՆՈՒ) միջև, ըստ էության ի չիք էին դարձնում նրանց ջանքերը Յան Սմիթի պրոֆաշիստական վարչակարգի դեմ մղված պայքարում: Բայց ահա վերջերս (ոչ առանց աֆրիկյան առաջադիմական լիդերների աջակցության) համաձայնություն ձեռք բերվեց հակագաղութային պայքարում ԶԱՊՈՒ-ի և ԶԱՆՈՒ-ի ջանքերի կոորդինացման մասին: Մարտ ամսին նրանք ստեղծեցին միավորված զինվորական հրամանատարություն:

Պայքարի ուժեղացումը Ռոդեզիայում իր արտացոլումը գտավ աֆրիկացիների մասսայական ելույթների մեջ՝ լորդ Պիրսի միսիայի՝ այնտեղ գտնվելու ժամանակ: Ո՛չ գնդակները, ո՛չ ավինները, ո՛չ սևամորթների վրա բաց թողնված շները չկարողացան կոտրել Զիմբաբվեի ժողովրդի հաստատ վճռականությունը՝ մերժելու գաղութարարների փորձերը՝ «անկախության» դրոշի տակ օրինականացնելու Յան Սմիթի պրոֆաշիստական վարչակարգը: Անգլո-ռոդեզիական գործարքի դեմ մղված պայքարի ընթացքում ստեղծվեց ներկայացուցչական նոր կազմակերպություն՝ Աֆրիկական ազգային խորհուրդը՝ լեգալ պայմաններում գործող հակագաղութային շարժումը:

Նամիբիայում զինված պայքարը գլխավորում է Հարավ-Արևմտյան Աֆրիկայի ժողովրդական կազմակերպությունը (ՍՎԱՊՕ): Հարավաֆրիկական իշխանությունների կողմից այստեղ կիրառվող ապարտեիդի դժվարին իրադրության մեջ (ըստ որում, պարտիզանական գործողությունների համար սակավ նպաստավոր անապատային ու կիսաանապատային տեղանքի պայմաններում) ՍՎԱՊՕ-ին հաջողվեց անցկացնել մի շարք հաջող մարտական գործողություններ:

Պրետորիայում սովորաբար ՍՎԱՊՕ-ի պարտիզանական գործողությունները դիտում էին իբրև պատահական, դրսից հրահրվող և տեղական բնակչության լայն աջակցությունը չվայելող գործողություններ: Սակայն դա աֆրիկացիների հակագաղութատիրական տրամադրությունների խորության ու թափի, քաղաքական ակտիվության աճման, նրանց ազատության ու անկախության ձգտումների բացահայտ թերագնահատումն էր: Այդ բանը համոզիչ կերպով ցույց տվեց անցյալ տարվա դեկտեմբերին տեղի ունեցած իրադարձությունը: Խոսքը 13 հազար աֆրիկացի բանվորների՝ այդ երկրի մասշտաբների համար վիթխարի գործադուլի մասին է, որը բառացիորեն ջլատել էր Նամիբիայի էկոնոմիկան: Գործադուլ էին անում հիմնականում Օվամբո ժողովրդի բանվորները, որը կազմում է երկրի վեցհարյուրհազարանոց բնակչության երեքհարյուր հազարը:

Պրոֆաշիստական վարչակարգի դժվարին պայմաններում են պայքարում Հարավ-Աֆրիկյան Հանրապետության առաջադիմական ուժերը, որոնց գլխավորում է Աֆրիկական ազգային կոնգրեսը (ԱԱԿ): Հարավ--Աֆրիկյան Հանրապետությունում կիրառվող ապարտեիդի ու ռասայական խտրականության սիստեմը իր դիվային մեթոդներով բավական գործուն է. նա դժվար հաղթահարելի խոչընդոտներ է ստեղծում աֆրիկացիների կազմակերպված պայքարի ճանապարհին: Բայց այդ սիստեմն էլ ի վիճակի չէ ընկճելու ազատության ու անկախության համար պայքարելու նրանց կամքը:

Ապարտեիդի ու ռասայական խտրականու-

թյան դեմ մղվող պայքարի մեջ ներգրավվում են նաև սոցիալական այն խավերը, որոնք դեռ երեկ սպասողական դիրք էին գրավում և կամ լոյալ կերպով համագործակցում էին գոյություն ունեցող վարչակարգի հետ: Մենք, մասնավորապես, նկատի ունենք աֆրիկական բնակչության տոհմա-ցեղային վերնախավը: 1972 թվականի սկզբին Հարավ-Աֆրիկյան Հանրապետության երկու ամենախոշոր բանտուստաններում՝ Տրանսքեյում և Զուլուլենդում, որտեղ ապրում են ավելի քան 7 միլիոն աֆրիկացիներ (այսինքն՝ աֆրիկացի բնակչության գրեթե կեսը) երկրամասերի պարագլուխները բացահայտորեն դատապարտեցին Ֆորստերի վարչակարգի վարած «անջատ զարգացման» (ապարտեհիդի) քաղաքականությունը, այն անվանելով խաբեություն[1]:

Ֆրանսիական կոմունիստական կուսակցության «Կայե դյու կոմյունիսմ» ամսագիրը 1972 թվականի մարտին գրում էր, որ 1971 թվականին Հարավ-Աֆրիկյան Հանրապետությունում ակտիվացավ ապարտեհիդի ու ռասայական խտրականության դեմ աֆրիկացիների մղած պայքարը: «Իոհաննեսբուրգում, Դուրբանում տեղի էին ունենում փողոցային մասսայական ցույցեր: Ձեռնարկություններում ուժեղանում է գործադուլային պայքարը: Եկեղեցիներում, ուսանողության շրջանում զարգանում է «սևերի իշխանության» կողմնակիցների շարժումը: Դա աֆրիկացիների նշանակալի խավերի աճած մարտունակության արտահայտությունն է»[2]:

Հասարակական զարգացման օրենքները բռնություն չեն հանդուրժում իրենց նկատմամբ: Բարձրացնելով ապարտեհիդի ու ռասայական խտրականության շենքի նորանոր հարկեր, հարավաֆրիկական իշխանությունները, անկախ իրենց կամքից, խարխլում են նրա հիմքը: Եվ իրոք, «անջատ զարգացման» քաղաքականության հետագա իրագործումը պրակտիկայում խառը արյուն ունեցող մարդկանց, որոնց Հարավ-Աֆրիկյան Հանրապետությունում անվանում են «գունավորներ», և Հնդկաստանից գաղթածներին զրկում է այն բոլոր աննշան առավելություններից, որ նրանք ունեին աֆրիկացիների համեմատությամբ: Դրանով իսկ օբյեկտիվորեն նախադրյալներ են ստեղծվում այդ երեք ցեղային խմբերի գործողությունների միասնության համար: Վերջապես, ապարտեհիդի ու ռասայական խտրականության հակամարդկային սիստեմը խմորում է առաջ բերում բուն սպիտակ բնակչության լավագույն ներկայացուցիչների, առանձնապես բանվորների, ուսանողության, երիտասարդության, մտավորականության շրջանում:

1. „The Economist" January 22, 1972, p. 30
2. Cahiers du communisme, mars, 1972, p 72.

Հարավ-Աֆրիկյան Հանրապետությունում ազատագրական պայքարի աճման ցուցանիշ կարող է ծառայել նաև այն, որ խոր ընդհատակում գտնվող Հարավաֆրիկական կոմունիստական կուսակցությունը ակտիվացնում է իր աշխատանքը, մասնավորապես, վերսկսել է իր կողմից հրատարակվող «Աֆրիկեն կոմյունիստ» հանդեսի տարածումը:

Ազգային ազատագրության համար մղվող պայքարի բնագավառում կարևոր տենդենցների թվին կարելի է դասել գաղութային մի շարք երկրների զինված շարժումների ջանքերը միավորելու փորձերը: Այդպիսի առաջին օրինակ ցույց տվեցին Աֆրիկական ազգային կոնգրեսը և ԶԱՊՈՒ-ն, որոնք համատեղ մարտական գործողություններ սկսեցին Ռոդեզիայի տերիտորիայում: Հետագայում, բարենպաստ իրադրություն ստեղծվելու դեպքում, մտադիր էին մարտական գործողությունները փոխադրել Հարավ-Աֆրիկյան Հանրապետության տերիտորիան:

Ներկայումս, ինչպես հաղորդում է «Ժյոն Աֆրիկ» շաբաթաթերթը, գաղութարարների դեմ համատեղ մարտական գործողություններ են անցկացնում ՄՊԼԱ-ն և ՍՎԱՊՕ-ն: «Աֆրիկացիներին արտաքսելու և այդ գոտին սպիտակ գաղութաբնակներով բնակեցնելու դեմ պայքարելու համար (խոսքը Անգոլայի Կունենե գետի շրջանին է վերաբերում, որտեղ միջազգային կոնսորցիումը ամերիկյան, անգլիական, իտալական և հարավաֆրիկյան կապիտալի մասնակցությամբ կառուցում է մի մեծ ամբարտակ, որը թույլ կտա ոռոգել հողային ընդարձակ զանգվածներ. Լիսաբոնը պլանավորում է այդ հողերում բնակեցնել մեծ թվով պորտուգալացիների:— Ա. Կ.), անգոլական և նամիբիական նացիոնալիստները քանիցս համատեղ գործողություններ են նախաձեռնել Հարավ-Արևմտյան Աֆրիկայում, Կապրիվիի գոտում, որը Պրետորիան դիտում է որպես ստրատեգիական նշանակություն ունեցող վայր, քանի որ այստեղ իրար են միանում Զամբիայի, Անգոլայի և Մոզամբիկի սահմանները»[3]:

Աֆրիկացի հայրենասերների համատեղ մարտական գործողությունները հեռանկարում կարող են կարևոր դեր խաղալ Աֆրիկական մայրցամաքում գաղութատիրությունը վերջնականապես ոչնչացնելու գործում:

3. Jeune Afrigue, 15 avril 1972, p. 18-19



## ՍՈՑԻԱԼ-ՏՆՏԵՍԱԿԱՆ ՎԵՐԱՓՈԽՈՒՄՆԵՐԻ ՏՐԱՄԱԲԱՆՈՒԹՅՈՒՆԸ

Աֆրիկական մայրցամաքին են լիովին վերաբերում **ՍՄԿԿ XXIV** համագումարում **Լ. Ի. Բրեժնևի** ասած այն խոսքերը, որ «ազգային-ազատագրական պայքարը շատ երկրներում փաստորեն սկսել է վերաճել ինչպես ֆեոդալական, այնպես էլ կապիտալիստական շահագործողական հարաբերությունների դեմ ուղղված պայքարի»[1]: Այդ պրոցեսը ամենից ավելի հետևողականորեն ու առավել մեծ թափով ընթանում է սոցիալիստական օրիենտացիայի երկրներում՝ Ալժիրում, Եգիպտոսի Արաբական Հանրապետությունում, Գվինեայում, Կոնգոյի Ժողովրդական Հանրապետությունում, Սոմալիում, Տանզանիայում:

Սակայն սոցիալ-տնտեսական վերափոխումներ (որոնք, իհարկե, միատեսակ չեն իրենց խորությամբ և իրենց վերջնական նպատակներով) տեղի են ունենում նաև այնպիսի երկրներում, որոնց ղեկավարները դեռևս կանգնած են զարգացած սոցիալիստական ուղու ընտրության առջև, և անգամ այն պետություններում, որոնք պահպանում են կապիտալիստական օրիենտացիան: Դա ոչ այնքան այս կամ այն ղեկավարի կամային որոշումների արդյունքն է, որքան ազգային ազատագրական հեղափոխության երկրորդ էտապի օբյեկտիվ օրինաչափությունների հետևանք, մեր դարաշրջանի բնույթի հետևանք:

Քաղաքական անկախությունը ամրապնդելու և տնտեսական ինքնուրույնություն նվաճելու շահերը ստիպում են երիտասարդ պետություններին՝ անկախ նրանց սոցիալական օրիենտացիայից, սահմանափակել միջազգային մոնոպոլիաների գործունեությունը, դիմել (և դարձյալ տարբեր մասշտաբներով) օտարերկրյա կապիտալի սեփականության մասնակի կամ լրիվ ազգայնացման: Այդ բանը լավ երևում է իրենց սոցիալ-քաղաքական օրիենտացիայով տարբեր այնպիսի երկրների սոցիալ-տնտեսական վերափոխումների օրինակից, ինչպիսիք են՝ Ալժիրը, Եգիպտոսի Արաբական Հանրապետությունը, Զաիրը, Լիբիան, Սիերրա-Լեոնեն, Ուգանդան և ուրիշներ:

Քաղաքական շատ չափավոր հայացքների տեր ղեկավարների համար անգամ ավելի ու ավելի ակնհայտ է դառնում, որ օտարերկրյա մոնոպոլիաների ներկայիս տիրապետությունը իրենց երկրների էկոնոմիկայում արգելակում է ազգային վերածննդի պրոցեսը: Մանավանդ որ աֆրիկական երկրների կառավարությունները հարկադրված են հաշվի նստել ժողովրդական լայն զանգվածների, ամենից առաջ բանվոր դասակարգի տրամադրությունների հետ, որոնք գնալով ավելի համառորեն են պահանջում վերջ դնել օտարերկրյա կապիտալի բռնությանը ազգային էկոնոմիկայում: Ընդսմին, հարկավոր է ընդգծել, որ աճում է բանվոր դասակարգի թվաքանակը, կազմակերպվածությունը, իսկ դրա համեմատ նաև նրա դերը Աֆրիկայի երկրների հասարակական-քաղաքական կյանքում:

*1 «ՍՄԿԿ XXIV Համագումարի նյութերը», «Հայաստան» հրատ., Երևան, 1971, էջ 23:*

Այսպիսով, չափազանցություն չի լինի, եթե ասենք, որ սոցիալ-տնտեսական առաջընթաց զարգացումը այս կամ այն չափով, այս կամ այն ձևով, տեղի է ունենում Աֆրիկայի անկախ երկրների մեծ մասում:

Բնորոշ է, որ անգամ այն երկրներում, որոնցում պետական հեղաշրջումների հետևանքով դադարեցված է եղել ոչ կապիտալիստական զարգացումը, նոր իշխանությունները ամբողջապես չեն հրաժարվել առաջադիմական սոցիալ-տնտեսական այն վերափոխումներից, որ իրականացրել էին նախկին հեղափոխական-դեմոկրատական վարչակարգերը:

## ՀԱԿԱՍԱԿԱՆ ՏԵՆԴԵՆՑՆԵՐ: ԳԱՂՈՒԹԱՐԱՐՆԵՐԻ ՆՈՐ ՏԱԿՏԻԿԱՆ

**ԱԶԳԱՅԻՆ-ԱԶԱՏԱԳՐԱԿԱՆ** շարժումը Աֆրիկայում դրա հետ մեկտեղ բնորոշվում է արտակարգ բարդությամբ ու հակասականությամբ: Այստեղ հաճախ փոխգործողության մեջ են լինում ուղղակի հակասական տենդենցներ: Մի կողմից՝ ամրապնդվում է հակաիմպերիալիստական, հակագաղութային ճակատը, մյուս կողմից՝ տեղի է ունենում գաղութատիրության և նեոգաղութատիրության ուժերի ակտիվացում, որոնք լայնորեն հենվում են տեղական ռեակցիայի պրոկապիտալիստական տարրերի վրա:

Որքան ավելի մեծ հաջողություններ են ձեռք բերում աֆրիկյան ազատագրական շարժումները, որքան ավելի համաձայնեցված են լինում Աֆրիկայի անկախ պետությունների գործողությունները՝ քաղաքական անկախությունը ամրապնդելու և տնտեսական ինքնուրույնություն ձեռք բերելու համար մղվող պայքարում, այնքան ավելի նենգ ու նուրբ է դառնում գաղութարարների և նեոգաղութարարների տակտիկան: Առաջներում իմպերիալիստական տերությունները հիմնականում առանձին-առանձին փորձում էին պահպանել այն, ինչ դեռ կարելի էր պահպանել փլուզվող գաղութային կայսրու-

թյուններից: Այժմ աֆրիկյան ժողովուրդները, ըստ էության, գործ ունեն իմպերիալիստական տերությունների կոլեկտիվ գաղութատիրության հետ:

Տեսեք, թե միջազգային իմպերիալիզմը ինչպես է միաժամանակյա գործողություններ ձեռնարկում ռասիստական-գաղութային վարչակարգերը ամրապնդելու նպատակով: Անգլիան հրաժարվում է պահպանել ՄԱԿ-ի հանձնարարած էմբարգոն Հարավ-Աֆրիկյան Հանրապետությանը ռազմական տեխնիկա մատակարարելու նկատմամբ, Միացյալ Նահանգները՝ էմբարգոն Ռոդեզիայի հետ կատարած առևտրի նկատմամբ: Վաշինգտոնը 436 միլիոն դոլար գումարի վարկեր է տրամադրում Պորտուգալիային: Դրանով իսկ Միացյալ Նահանգները փաստորեն իրենց վրա են վերցրել Աֆրիկայում պորտուգալական պատժիչ էքսպեդիցիաների ֆինանսավորումը: Ոչ ուղղակի, իհարկե, այլ անուղղակի: Բայց դա ի՞նչ է փոխում:

Այդ ամենին ավելացրեք պորտուգալական բանակի զինումը ՆԱՏՕ-ի երկրներում արտադրվող զենքով, առաջատար իմպերիալիստական տերությունների խոշորագույն մոնոպոլիաների մասնակցությունը հիդրոէներգետիկ կոմպլեքսների շինարարությանը Մոզամբիկում և Անգոլայում, որոնք նպատակ ունեն ամրապնդել Պորտուգալիայի դիրքերը այդ գաղութներում, և կոլեկտիվ գաղութատիրության պատկերը կդառնա միանգամայն ավարտուն:

60-ական թվականների առաջին կեսին, երբ տեղի էր ունենում գաղութային կայսրությունների հախուռն փլուզում, գաղութատիրությունը գտնվում էր խոր պաշտպանության դիրքերում: Ներկայումս, երբ Աֆրիկական մայրցամաքի հարավում տեղի ունեցավ ռասիստական-գաղութային վարչակարգերի կայունացում, իմպերիալիզմն իր առջև խնդիր է դնում ոչ միայն պահպանել ներկայիս դիրքերը, այլև նվաճել նորերը: Այսպես ասած՝ ռևանշ վերցնել Աֆրիկական մայրցամաքում ունեցած անցյալ կորուստների համար:

Նեոգաղութատիրության ստրատեգների կարծիքով, այդ խնդրի լուծմանը մեծապես պետք է նպաստի այսպես կոչված «Երկախոսության», այսինքն՝ Հարավ-Աֆրիկյան Հանրապետության և աֆրիկական անկախ պետությունների միջև ուղղակի բանակցությունների քաղաքականությունը: Այս խորամանկամիտ քաղաքականությունը միջազգային իմպերիալիզմի և հարավաֆրիկական ռասիստների համատեղ հայտնագործությունն է: Արտաքուստ, սակայն, բանն այնպես է ներկայացվում, որ կարծես Պրետորիայի հետ իբրև ընդհանուր լեզու որոնելու նախաձեռնողներ հանդես են գալիս իրենք՝ աֆրիկյան երկրները: Իսկ ի՞նչ կոնկրետ նպատակներ է հետապնդում «երկախոսության» քաղաքականությունը: Նախ, Հարավ-Աֆրիկյան Հանրապետությունը դուրս բերել քաղաքական մեկուսացումից, ինչպես Աֆրիկայում, այնպես էլ ամբողջ աշխարհում, թուլացնել աֆրիկյան ժողովուրդների հակաիմպերիալիստական պայքարը, «երկախոսության» կողմնակից երկրները հակադրելով այդ քաղաքականության հակառակորդ երկրներին: Երկրորդ, հասնել ոչ միայն ՀԱՀ-ի ներկայիս վարչակարգի, այլև մյուս ռասիստական-գաղութային վարչակարգերի օրինականության ճանաչմանը, հաշվի առնելով այն փաստը, որ ՀԱՀ-ի, Պորտուգալիայի և Ռոդեզիայի միջև ստեղծվել է ռազմա-քաղաքական դաշինք: Հարավաֆրիկական զորային ու ոստիկանական ստորաբաժանումները, օրինակ, գտնվում են պորտուգալական գաղութներում և Ռոդեզիայում: Երրորդ, ստիպել աֆրիկական երկրներին՝ հրաժարվել մայրցամաքի զինված շարժումները պաշտպանելուց: Չորրորդ, Հարավ-Աֆրիկյան Հանրապետության տնտեսական լայն էքսպանսիայի ճանապարհ բացել դեպի Աֆրիկայի անկախ երկրները, օգտվելով նրանց տնտեսական դժվարություններից, կապիտալի, որակյալ մասնագետների սուր պահանջից, ինչպես նաև այն բանից, որ մի քանի երիտասարդ պետություններ ձգտում են ամեն ճանապարհով հնարավորին չափ ավելի շուտ հաղթահարել գաղութատիրությունից ժառանգած հետամնացությունը: Հինգերորդ, ավելի մեծ թվով անկախ երկրների վրա տարածել ՀԱՀ-ի ազդեցությունը, որը գնալով ավելի ու ավելի բացահայտ կերպով է հավակնում լիդեր դառնալու Աֆրիկայում:

Անկախ Աֆրիկան մարտ տվեց «երկախոսության» քաղաքականությանը: Աֆրիկյան միասնության կազմակերպության պետությունների ու կառավարությունների ղեկավարների՝ 1971 թվականի հունիսին Ադիս-Աբեբայում կայացած նստաշրջանում ձայների մեծամասնությամբ «երկախոսությունը» մերժվեց: Սակայն չի կարելի ասել, թե նրա գաղափարը վերջնականապես թաղվել է: Նա կարող է գալվանացվել ամեն մի հարմար պահի: Ալժիրի «Ռևոլյուսիոն աֆրիքեն» շաբաթաթերթը իր ժամանակ գրել է, որ աֆրիկյան 41 անկախ պետություններից 12-ը այս կամ այն չափով պաշտպանում են «երկախոսությունը»[1]: Ճիշտ է, վերջերս մի շարք երկրներ հրաժարվեցին «երկախոսությունը» պաշտպանելուց: Այդ քաղաքականության բացահայտ կողմնակիցներ են մնում Փղոսկրի Ափը, Գաբոնը, Մալավին և մի քանի այլ երկրներ: Է՛լ ավելի մեծ թվով պետություններ մնում են «երկախոսության», եթե կարելի է այսպես արտահայտվել, լռակյաց կողմնակիցներ:

[1] *Տե՛ս* „Bévolution Africaine", 14 au 20 mai 1971, p. 12.



Անփոփոխ չի մնում նաև պորտուգալական գաղութարարների տակտիկան: Նրանք շատ բան են վերցնում իմպերիալիստական խոշոր տերությունների փորձից: Ավանդական գռեհիկ ուժը սկսել է զուգակցվել քաղաքական խուսանավման հետ, տեղական բնակչությանը սիրաշահելու հետ: Լիսաբոնը գնալով ավելի համառորեն է ձգտում աֆրիկացիներին պատերազմի մեջ ներքաշել ապստամբների դեմ: Նրա պրոպագանդան ձգտում է աֆրիկացիներին ներշնչել այն միտքը, թե անհեռանկար է նրանց զինված պայքարը մետրոպոլիայի դեմ, աշխատում է ապստամբներին ներկայացնել որպես գլխավոր խոչընդոտ «անդրծովյան նահանգների» (1951 թվականից սկսած Լիսաբոնում պաշտոնապես այդպես են կոչվում պորտուգալական գաղութները) տնտեսական ու սոցիալական առաջընթացի ճանապարհին:

Օգտագործելով «բաժանիր, որ տիրես» սկզբունքի տակտիկան, պորտուգալական գաղութային իշխանությունները խոշոր բնակավայրերի շուրջը ստեղծում են այսպես կոչված՝ «տեղական դիմադրության օջախներ»: Այդ «օջախներում» ապրող բնակչությանը տրվում է զենք՝ «պարտիզանների հարձակման» դեպքերի համար: Այժմ Լիսաբոնում ծրագրեր են կազմում իրենց գաղութներին այսպես կոչված «ինքնավարություն» տալու մասին: Այդ մտահղացման նպատակն է՝ տեղական բնակչության մի մասի շրջանում սերմանել այն պատրանքը, թե հնարավոր է խաղաղ ճանապարհով, առանց հյուծիչ զինված պայքարի Պորտուգալիայից զիջումներ ձեռք բերել աֆրիկացիների ներկայի ու ապագայի արմատական հարցերի վերաբերյալ:

Չի կարելի չասել նաև այն չափազանց բացասական դերի մասին, որ Աֆրիկայում խաղում են մաոիստները: Ամենուրեք, որտեղ միայն կարող են, նրանք փորձում են իրենց համար կողմնակիցներ հավաքագրել՝ ազգային ուժերի շարքերը պառակտելու, այդ մայրցամաքի ժողովուրդները ուրիշ ժողովուրդներին, առաջին հերթին, սովետական ժողովրդին հակադրելու միջոցով: Ընդսմին, մաոիստները դիմում են բացահայտ կեղծիքի ու զրպարտանքի՝ «երրորդ աշխարհի» նկատմամբ մեր պետության վարած քաղաքականության վերաբերյալ:

Գաղութարարների նոր տակտիկան, որի հիմնական էությունն այն է, որ իրենց քաղաքականությունը կիրառելիս ավելի լայնորեն հենվեն աֆրիկացիների վրա՝ ինչպես առանձին երկրների շրջանակներում, այնպես էլ ամբողջ մայրցամաքի մասշտաբով, անկասկած, բարդացնում է աֆրիկյան ժողովուրդների պայքարը ազգային, տնտեսական և սոցիալական ազատագրության համար:

## ՄԻԱՍՆՈՒԹՅԱՆ ԵՎ ՍԱՀՄԱՆԱԶԱՏՄԱՆ ԴԻԱԼԵԿՏԻԿԱՆ: ՆԵՈԳԱՂՈՒԹԱՐԱՐՆԵՐԻ ՄԵՔԵՆԱՅՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ

**ԱՅԴ ՏԱԿՏԻԿԱՅԻ** կենսագործմանը որոշ չափով նպաստում են ազգային ազատագրական շարժման զարգացման ներկա էտապի պայմանները, երբ գնալով ավելի շատ է իրեն զգացնել տալիս ինչպես ազգային, այնպես էլ համաաֆրիկական մասշտաբով սոցիալ-դասակարգային ուժերի սահմանազատման պատմական տենդենցը: Վերջին տասնամյակում արագացել է աֆրիկական հասարակության շերտավորումը, սրվել է դասակարգային պայքարը:

Սոցիալ-քաղաքական սահմանազատման պրոցեսը տեղի է ունենում քաղաքում և գյուղում, արտացոլում է գտնում կառավարող կուսակցություններում, արհմիություններում և հասարակական այլ կազմակերպություններում, իրեն զգացնել է տալիս թերթերի ու հանդեսների էջերում, ռադիոյի ու հեռուստատեսային հաղորդումներում: Որպես ուժերի սոցիալ-քաղաքական սահմանազատման կատալիզատոր եղել է և մնում է պայքարը զարգացման ուղու ընտրության համար:

Հենց այդ պրոբլեմի շուրջն էլ մղվում են ամենաթեժ մարտերը: Տարասեռ քաղաքական ֆրակցիաներ երևան գալու հետ միասին պառակտվում և կամ իրենց ազդեցությունն են կորցնում կառավարող կուսակցությունները, նախկինում համախոհ ուժերը դառնում են թշնամիներ: Եվ այն, ինչ արևմտյան բուրժուական գրականության մեջ աֆրիկյան երկրների նկատմամբ կոչվում է «պայքար իշխանության համար», այստեղ հաճախ դառնում է սոցիալ-քաղաքական տարբեր ուժերի հակամարտություն՝ զարգացման հետագա ուղին որոշելու համար:

Տրոպիկական Աֆրիկայի շատ երկրներում, որտեղ դեռ ամենևին չեն էլ կազմավորվել դասակարգերը՝ իրենց գիտակցված շահերով, ձևավորված գաղափարախոսությամբ, ինքնուրույն քաղաքական կազմակերպություններով, կենտրոնաձիգ տենդենցները երբեմն ավելի ուժեղ են լինում կենտրոնախույս տենդենցներից:

Այդ երկրների առջև ծառացած են հրատապ շատ խնդիրներ, որոնց լուծումը օբյեկտիվորեն համապատասխանում է բնակչության գործնականորեն բոլոր սոցիալական խավերի ու խմբերի շահերին: Այդ խնդիրների թվում է պայքարը քաղաքական անկախությունը ամրապնդելու, տնտեսական ինքնուրույնություն ձեռք բերելու, բազմաթիվ տարասեռ ու տարալեզու ժողովուրդներից ու ցեղերից ազգերի ձևավորման համար առավելագույն նպաստավոր պայմաններ ստեղծելու համար:

Հաճախ սոցիալ-քաղաքական ուժերի սահմանազատման տենդենցը խեղդվում է վերևից՝ վարչական միջոցներով: Այսպես, մի շարք դեպքերում համաժողովրդական կառավարող կուսակցությունների ձախ կամ աջ ֆրակցիաները, որոնք ձևավորվել են որպես ինքնուրույն քաղաքական կազմակերպություններ, արգելվել են, իսկ նրանց առաջնորդները՝ բանտարկվել: Ճիշտ է, ուժերի սահմանազատումը ըստ սոցիալ-դասակարգային և գաղափարական-քաղաքական սկզբունքի հաճախ խառնվում են էթնիկական և մի քանի այլ մոմենտներ: Բայց դա անխուսափելի երևույթ է տոհմա-ցեղային հասարակության ուժեղ վերապրուկների առկայության պայմաններում:

Այն երկրներում, որտեղ հասարակական գիտակցությունը ճնշված է նախնադարյան-համայնական ավանդույթների բեռի տակ, սոցիալական հակասությունները հաճախ սրում են էթնիկական բախումները, երբեմն ընդունում են միջցեղային կոնֆլիկտների ձև, իսկ այդ հակասություններն արտացոլող գաղափարական հոսանքները ստանում են էթնիկական, նացիոնալիստական կամ կրոնական գունավորում:

Սոցիալ-քաղաքական ուժերի սահմանազատումը գնալով ավելի պարզորոշ է իրեն զգացնել տալիս համաաֆրիկյան արենայում: Կապիտալիստական օրիենտացիայի երկրները (դա դրսևորվում է տենդենցի ձևով) հակում են ցուցաբերում դեպի այս կամ այն տիպի դաշինքը կապիտալիստական տերությունների հետ, ամենից ավելի շատ «համոզվող» են լինում ռասիստական-գաղութային վարչակարգերի հետ ունեցած հարաբերություններում: Եվ, առաջին հերթին, հենց այդ երկրներին է ուղղված «երկխոսության» քաղաքականությունը:

Աֆրիկյան առաջավոր երկրները, իրենց հերթին, հաղթահարելով (երբեմն ցավագին կերպով) գաղութային անցյալից ժառանգած ամեն տեսակ նախապաշարմունքներ ու կանխակարծություններ, ավելի համարձակ են մերձեցման ուղիներ որոնում համաշխարհային սոցիալիզմի հետ, վերցնում ՍՍՀՄ ու սոցիալիստական մյուս երկրների սոցիալիզմի կառուցման փորձը:

Միևնույն ժամանակ աֆրիկյան երկրների շահերը, անկախ սոցիալական օրիենտացիայից, համընկնում են մի շարք սկզբունքային հարցերում: Առաջին հերթին այնպիսի հարցերում, ինչպիսիք են՝ պայքարը գաղութատիրության և ռասիզմի դեմ, պայքարը իրենց էկոնոմիկան միջազգային մոնոպոլիաների ճնշումից ազատագրելու համար, աշխատանքի միջազգային կապիտալիստական բաժանման սիստեմում այդ երկրների անիրավահավասար դրությունը փոխելու, իրենց տնտեսական ջանքերը միավորելու համար՝ ամենից առաջ կոոպերացման ու ռեգիոնալ համագործակցության միջոցով, ելնելով տնտեսական հետամնացությունը ավելի արագ հաղթահարելու շահերից:

Իմպերիալիստական տերությունները ուշադիր հետևում են Աֆրիկայում տեղի ունեցող սոցիալ-դասակարգային պրոցեսներին և ձգտում են ազդել դրանց վրա իրենց համար ցանկալի ուղղությամբ: Իմպերիալիզմի ստրատեգիական խնդիրը եղել և մնում է այն, որ երիտասարդ պետությունները մղի զարգացման կապիտալիստական ուղին: Այդ նպատակի իրագործման միջոց է նեոգաղութատիրությունը: Նեոգաղութատիրության կենսունակությունն այն է, որ վերջինս, ընդունելով հաճախ ճկուն, արտաքուստ անմեղ և անգամ մարդասիրական ձևեր, ինչպես, անհատույց նվիրատվությունները, թոշակները, բժշկական օգնությունը և այլն, ճարպկորեն օգտագործում է զարգացող երկըրների կրած օբյեկտիվ դժվարությունները: Այդ դժվարությունները բխում են կուտակման ներքին աղբյուրների անբավարարությունից, նյութա-տեխնիկական թույլ բազայից, բարձր որակավորում ունեցող մասնագետների պակասից, ընդհանուր հետամնացությունից, աղքատությունից: Իրենց «ծառայությունները» մատուցելով երիտասարդ պետություններին, նեոգաղութարարները գուցե և օգնում են լուծելու որոշ ընթացիկ պրոբլեմներ, բայց միաժամանակ անհամար խոչընդոտներ են ստեղծում իսկական անկախության և սոցիալական առաջընթացի ձգտող ազատագրված երկրների ճանապարհին:

Ներկայումս Աֆրիկան դարձել է կապիտալիստական տերությունների՝ անցյալում չտեսնըված գաղափարական էքսպանսիայի օբյեկտ: Նեոգաղութատիրությունը ձգտում է իր շահերին ծառայեցնել աֆրիկացիների համար սովորական գաղափարախոսության ձևերը, այդ թվում նացիոնալիզմը և կրոնը, նրանց բնական ձգտումը դեպի ազգային ինքնօրինակությունը, ինքնահաստատումը: Վահանի վրա են բարձրացվում «ազգային սոցիալիզմները», որոնք բուրժուական պրոպագանդայի ու գիտության կողմից մեկնաբանվում են որպես ազգային սպեցիֆիկ կոնկրետ պայմաններից ծնված կոնստրուկտիվ ուսմունքներ, որոնք կոչված են կողմնացույցի դեր կատարել իբր կապիտալիզմից ու գիտական սոցիալիզմից տարբեր զարգացման «երրորդ» ուղու համար: Լայնորեն տարածում են մի կեղծ գաղափար «հարուստ» և «աղքատ» ազգերի մասին: Նպատակը պարզ է՝ երիտասարդ պետություններին պարտադրել սնանկ կոնցեպցիաներ, նրանց մեկուսացնել համաշխարհային սոցիալիզմից և դրանով իսկ նրանց պահել համաշխարհային կապիտալիզմի ուղեծիրում:

Սակայն, որքան ավելի շատ են աճում ապրանքա-փողային հարաբերությունները, որքան ավելի է խորանում աֆրիկական հասարակության շերտավորումը, այնքան ավելի արագ է քայքայվում այն հողը, որի վրա աճում են աներկպարան գաղափարական կոնցեպցիաները: «Աֆրիկական սոցիալիզմից» փաստորեն հրաժարվել են Տանզանիայում: Նա գրեթե մոռացվել է Քենիայում, նրա մասին գնալով ավելի հազվադեպ են հիշատակում Սենեգալում: Բայց չէ որ իր ժամանակ հենց այդ երկրներում բավական լայն տարածում ստացավ «աֆրիկական սոցիալիզմը» և նրանցից մի քանիսում հայտարարվեց որպես պետական գաղափարախոսություն: Մյուս կողմից, գնալով ավելի մեծ թվով հեղափոխական-դեմոկրատական կուսակցություններ են գիտական սոցիալիզմը հայտարարում որպես իրենց տեսական հիմք, վերցնում սոցիալիստական երկրների կուսակցական շինարարության փորձը:

Մեր օրերում նեոգաղութատիրության առանձնահատկությունն այն է, որ նա գնալով ավելի ու ավելի մեծ չափով դառնում է կոլեկտիվ: Չնայած միջիմպերիալիստական հակասություններին, չնայած հին գաղութատեր պետությունների փորձերին՝ պահպանել իրենց ազդեցության ոլորտները, պաշտպանել դրանք իրենց մրցակիցներից, առանձնապես ԱՄՆ-ից, ԳՖՀ-ից և Ճապոնիայից, առկա է կապիտալիստական երկրների գործողությունների որոշակի կոորդինացում Աֆրիկայում՝ ի շահ կապիտալիզմի ամբողջ սիստեմի: Իմպերիալիստական տերություններին, նրանց մերձավոր նպատակների ու նեղ օգտապաշտական շահերի ամբողջ տարբերությամբ հանդերձ, միավորում է մի ձգտում՝ խանգարել բարեկամական կապերի և արդյունավետ համագործակցության զարգացումը զարգացող և սոցիալիստական պետությունների միջև, առաջիններին տանել կապիտալիզմի ուղիով:

Կոլեկտիվ նեոգաղութատիրության մասին են խոսում թեկուզ այնպիսի փաստեր, ինչպիսիք են՝ ամերիկյան «Խաղաղության կորպուսի» և կապիտալիստական մյուս երկրների համանման կազմակերպությունների գործունեության հարակից ուղղությունը, զարգացող երկրների համար կադրերի պատրաստման գործում կապիտալիստական տերությունների վարած ընդհանուր քաղաքականությունը: Կոլեկտիվ նեոգաղութատիրության առավել վառ օրինակ է Եվրոպական տնտեսական համագործակցության քաղաքականությունը աֆրիկական երկրների նկատմամբ:

Առ այսօր Եվրոպական տնտեսական համագործակցության մեջ մտնում են Աֆրիկայի՝ ասոցիացիայով լրիվ կապակցված 18 և մասնակիորեն կապակցված 6 երկրներ: Անգլիայի «Ընդհանուր շուկայի» մեջ մտնելու կապակցությամբ ԵՏՀ-ի հետ կապված աֆրիկական երկըրների թիվը, հավանաբար, է՛լ ավելի կմեծանա: Գործնականորեն դա կնշանակեր, որ աֆրիկական մայրցամաքի երկրների մեծ մասը այս կամ այն չափով տնտեսապես կապված կլինի կապիտալիստական երկրների ներփակ խմբավորմանը:

Այսպիսով, ակնհայտ է դառնում, որ նեոգաղութատերերի կոլեկտիվ գործողությունները տնտեսական բնագավառում լուրջ վտանգ են ներկայացնում Աֆրիկայի զարգացող երիտասարդ պետությունների ապագայի համար:

Առաջընթացի, սոցիալական վերափոխման ուժերը Աֆրիկայում, ինչպես ամենուրեք աշխարհում, գտնվում են պատմական հարձակման մեջ: Իհարկե, իմպերիալիզմը, տեղական ռեակցիայի հետ համատեղ, որոշ պայմաններում դեռ կարող է կասեցնել այս կամ այն զարգացող երկրի սոցիալ-տնտեսական առաջընթացը և նույնիսկ ժամանակավոր պարտության մատնել առանձին ազգային դեմոկրատական ջոկատների:

Բայց նա ի վիճակի չէ կասեցնելու ազգային-ազատագրական շարժման վերընթաց զարգացումը: Չի կարելի պատմությունից ռևանշ վերցնել: Ազգային և սոցիալական ազատագրության ուժերը, հենվելով համաշխարհային սոցիալիզմի հարաճուն օգնության ու աջակցության վրա, անկասկած, նոր հաղթանակներ կտանեն գաղութատիրության, նեոգաղութատիրության և ներքին ռեակցիայի դեմ մղվող պայքարում:

«Международная жизнь», № 7, 1972.

հրամանագրեր, որոնք չնայած փոփոխություններ կամ լրացումներ չեն կատարում հանրապետության գործող օրենսդրության մեջ, բայց վերաբերում են օրենսդրական կարգով լուծման ենթակա հարցերին։

Գերագույն սովետի հաստատմանն են դրվում նաև ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության հրամանագրերի հիման վրա ու դրանց համապատասխան՝ Հայկական ՍՍՀ Գերագույն սովետի նախագահության արձակած հրամանագրերը, քանի որ վերջիններս, որպես կանոն, նույնպես օրենսդրական բնույթ ունեն։ Այսպես, օրինակ, Հայկական ՍՍՀ Գերագույն սովետի նախագահությունը 1963 թվականի հունվարի 12-ին հրամանագիր արձակեց «Հայկական ՍՍՀ քրեական օրենսգրքի մեջ փոփոխություններ և լրացումներ մտցնելու մասին»։ Այս հրամանագրով մասամբ փոփոխվեցին և համալրվեցին գործող քրեական օրենսգրքի որոշ հոդվածներ, քանի որ անհրաժեշտ էր օրենսգրքի այդ հոդվածները համապատասխանեցնել առանձին տեսակի հանցագործությունների համար քրեական պատասխանատվությունն ուժեղացնելու մասին ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության մի շարք հրամանագրերին։

Ինչպես տեսնում ենք, հանրապետության Գերագույն սովետի նախագահությունը, լիազորված չլինելով օրենսդրական իշխանություն իրականացնելու, այնուամենայնիվ, հարկադրված է այդ քանն անել արդեն, տվյալ դեպքում, ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության հրամանագրերի հիման վրա, քանի որ, հանրապետական օրենսդրության մեջ միութենական ակտից բխող համապատասխան փոփոխություններ չմտցնելու դեպքում, հանրապետական համապատասխան օրենսդրական ակտերը կկորցնեն իրենց ուժը։

Սովետական իրավաբանական գրականությունում կարծիքներ են հայտնվել (օրինակ՝ Դ. Ա. Քերիմովը), որ նպատակահարմար է սահմանել այնպիսի կարգ, երբ հանրապետական օրենսդրության մեջ միութենական հրամանագրից բխող փոփոխություններ մտցվեն այդ հրամանագրերը ՍՍՀՄ Գերագույն սովետի կողմից հաստատվելուց հետո միայն։

Այս կարծիքի դեմ, բավականին հաջող, առարկում է Ա. Վ. Միցկևիչը, նշելով, որ եթե նման առաջարկությունն ընդունվի, ապա հակասություններ կծագեն միութենական և հանրապետական օրենսդրության միջև, որը օրենսդրության կիրառման գործում կարող է մեծ դժվարություններ հարուցել։

Օրենսդրական բնույթի հրամանագրերը Գերագույն սովետի քննարկմանն են ներկայացվում հանրապետության պետական իշխանության բարձրագույն մարմինների պրակտիկ գործունեությունում հաստատված կարգով, քանի որ, ինչպես հայտնի է, հրամանագրերի քննարկման և հաստատման կարգը սահմանված չէ ո՛չ հանրապետության սահմանադրությամբ, ո՛չ էլ որևէ այլ օրենսդրական ակտով։

Սովետական իրավաբանական գրականությունում կարծիքներ են հայտնվել (օրինակ՝ Ա. Խ. Շերանովը), որ նպատակահարմար է առանձին անուն տալ նախագահության այն հրամանագրերին, որոնք ենթակա են Գերագույն սովետի հաստատմանը։ Մեր կարծիքով, ընդունելի է այն տեսակետը, որի համաձայն Գերագույն սովետի հաստատման ենթակա ակտերը պետք է արձակվեն հրամանագրերի ձևով, իսկ մնացած ակտերը, որոնց միջոցով նախագահությունը հարցերը լուծում է վերջնականապես և այդպիսիք չեն դրվում Գերագույն սովետի հաստատմանը, պետք է որոշումների ձև ընդունեն։

Կասկած չկա, որ մեր պետության զարգացման արդի փուլում անհրաժեշտ է կատարելագործել ՍՍՀՄ և միութենական հանրապետությունների պետական իշխանության բարձրագույն մարմինների իրավաստեղծ գործունեությունը, որովհետև, ինչպես տեսանք պետական իշխանության բարձրագույն մարմինների գործունեության պրակտիկան և այն ամրապնդող իրավական նորմերը, անհամաձայնության մեջ են գործող սահմանադրությունների հետ։ Պետական իշխանության բարձրագույն մարմինների գործունեության ավելի քան 35-ամյա փորձը ցույց է տալիս, որ սահմանադրական որոշ հոդվածներ և, մասնավորապես, օրենքի ու հրամանագրի փոխհարաբերությունները կարգավորող դրույթներն արդարացված չեն և մերժվել են պետական շինարարության պրակտիկայում։

Իսկ ո՞րն է ելքը. պրակտիկան սահմանադրությանը համապատասխանեցնելը, թե՞ սահմանադրությունը պրակտիկային։ Բնական է, որ նախընտրելի է վերջին վարկածը, քանի որ այն օբյեկտիվորեն հիմնավորված է։

Սակայն, Գերագույն սովետի նախագահությանը սեսիաների միջև ընկած ժամանակաշրջանում գործող օրենսդրության մեջ փոփոխություններ ու լրացումներ կատարելու լիազորություն ընձեռելիս, պետք է նկատի ունենալ այն, որ նախագահությունը, ի տարբերություն կենտրոնգործկոմի նախագահության, չի կարող բարձրագույն ներկայացուցչական մարմնի՝ սեսիաների միջև ընկած ժամանակաշրջանում լիովին փոխարինել նրան։ Ուստի, մեր կարծիքով, ճիշտ է տարբեր հեղինակների կողմից սովետական իրավաբանական գրականությունում արտահայտված այն կարծիքը, որ տվյալ հարցը լուծելիս պետք է խստորեն ճշտել Գերագույն սովետի և նրա նախագահության իրավասությունը։ Դա, անկասկած, մեծապես կնպաստեր պետական իշխանության մարմինների գործունեության պրակտիկայում ստեղծված այն դրության վերացմանը, երբ հրամանագրերով ո՛չ միայն փոփոխություններ և լրացումներ են կատարվում գործող օրենսդրության մեջ, այլև Գերագույն սովետի սեսիաների միջև ընկած ժամանակաշրջանում հաճախ լուծվում են նաև այնպիսի հարցեր, որոնք իրենց նշանակությամբ ու բնույթով մտնում են սահմանադրական կարգավորման ոլորտի մեջ։



Հայտնի է, որ սահմանադրության ընդունումը, փոփոխումն ու լրացումը բացառապես Գերագույն սովետի իրավունքն է։ Սակայն, ինչպես ցույց է տալիս Հայկական ՍՍՀ պետական իշխանության բարձրագույն մարմինների այդ բնագավառի պրակտիկ գործունեության վերլուծությունը, միայն 1951—1971 թթ. հանրապետության սահմանադրության մեջ հրամանագրերով կատարվել են 105 փոփոխություն, համալրում, ամենատարբեր բնույթի խմբագրական ուղղումներ։ Ճիշտ է, այդ հրամանագրերն այնուհետև հաստատել է Գերագույն սովետը և, ըստ որում, այդ փոփոխությունների զգալի մասը վերաբերում է սահմանադրության 19-րդ (Հայկական ՍՍՀ շրջանների ցանկը), 47-րդ (հանրապետության Մինիստրների սովետի կազմը), 53-րդ (միութենական-հանրապետական մինիստրությունների ցանկը), 54-րդ (Հայկական ՍՍՀ մինիստրությունների ցանկը) հոդվածներին, բայց, այնուամենայնիվ, մի շարք դեպքերում հրամանագրով լուծվել են նաև այնպիսի հարցեր, որոնք, իրենց նշանակության ու բնույթի պատճառով, պետք է քններ բացառապես Գերագույն սովետը։

Սովետական պետա-իրավական գրականությունում կարծիքներ են հայտնվել նաև այն մասին, որ պետական իշխանության բարձրագույն մարմինների իրավասության, այսինքն, վերջին հաշվով, օրենքի և հրամանագրի գործունեության ոլորտների սահմանազատման գործնականորեն նպատակահարմար եղանակը՝ Գերագույն սովետի բացառիկ լիազորությունների շրջանակի, ապա Գերագույն սովետի և նրա նախագահության գործունեության համատեղ ոլորտում իրականացվող լիազորությունների շրջանակի և լիազորությունների այն շրջանակի որոշումն է, որը նախագահությունն ինքնուրույն կարող է իրականացնել ինչպես սեսիաների միջև ընկած ժամանակամիջոցում, այնպես էլ սեսիաների ժամանակ (տե՛ս И. Н. Кузнецов, Компетенция Президиума Верховного Совета СССР и правовые проблемы ее регламентации, 1966, էջ 20—22)։ Մեր կարծիքով, դա հիմնականում ճիշտ առաջարկություն է, քանի որ նրանում հաշվի է առնվում ՍՍՀՄ և միութենական հանրապետությունների պետական իշխանության բարձրագույն մարմինների գործունեության փորձը։

Մեզ թվում է, որ պետք է Հայկական ՍՍՀ Գերագույն սովետի բացառիկ իրավունքը, այսինքն՝ բացառապես օրենսդրական կարգավորման ոլորտը համարել այնպիսի հարցերի լուծումը, ինչպիսիք են Հայկական ՍՍՀ սահմանադրության ընդունումը, դրա փոփոխումն ու լրացումը, հանրապետության պետական բյուջեի և նրա կատարման վերաբերյալ հաշվետվության հաստատումը, ՍՍՀՄ օրենսդրությանը համապատասխան պետական ու տեղական հարկերի, գանձումների և ոչ հարկային եկամուտների սահմանումը, հողից, ընդերքից, անտառներից ու ջրերից օգտվելու կարգի սահմանումը, աշխատանքային, դատարանակազմության և դատավարության վերաբերյալ, քաղաքացիական, քրեական, ուղղիչ աշխատանքային, ամուսնության և ընտանիքի մասին օրենսդրությունները, Հայկական ՍՍՀ դատական մարմինների կողմից դատապարտված քաղաքացիներին ներում շնորհելը և այլն։

Ինչպես հայտնի է, վերոհիշյալ հարցերից շատերը հիմնականում լուծվում են օրենսդրական կարգով և հանրապետության պետական իշխանության (ասենք ոչ միայն հանրապետության) բարձրագույն մարմինների գործունեության պրակտիկայում չկա մի դեպք, որ ժողովրդատնտեսական պլանը, կամ, ասենք, բյուջեն, հաստատվեր հրամանագրով։ Բայց, դրա հետ մեկտեղ, վերոհիշյալ հարցերից մի քանիսը, ինչպես, օրինակ, քրեական պատասխանատվության սահմանումը, դատարանակազմության մեջ և դատավարության վերաբերյալ բազմաթիվ հարցեր հաճախ լուծվել և լուծվում են հրամանագրերով։ Հաշվի առնելով նման հարցերի կարեվոր բնույթն ու նշանակությունը, մեր կարծիքով, ավելի ճիշտ կլիներ դրանց լուծման իրավունքը վերապահել միայն Գերագույն սովետին, այսինքն՝ այդ հարցերը լուծել միայն օրենքների ընդունման միջոցով։ Գերագույն սովետի և նրա նախագահության համատեղ լուծմանը պետք է հանձնվեն, մեր կարծիքով, ներկայումս լուծվող հարցերից բացի նաև այնպիսիք, ինչպիսիք են՝ հանրապետության վարչա-տերիտորիալ բաժանումը, աշխատավորների դեպուտատների շրջանային և քաղաքային սովետների գործադիր կոմիտեների կառուցվածքի փոփոխումը, Հայկական ՍՍՀ մինիստրությունների, հանրապետության Մինիստրների սովետին կից կոմիտեների և հանձնաժողովների ստեղծումը, վերափոխումը, վերակազմումը, միավորումը, վերանվանումը և վերացումը։ Բայց, քանի որ վերոհիշյալ հարցերի կարգավորումը կապված կլինի սահմանադրության համապատասխան հոդվածների փոփոխ-

ման հետ, իսկ, ինչպես նշվեց, դա պետք է հանդիսանա բացառապես օրենսդրական կարգավորման ոլորտ, ապա անհրաժեշտ է այդ հոդվածները կրճատել սահմանադրությունից, որը, վերջին հաշվով, կնպաստի սահմանադրության կայունացմանը։ Շեղվելով թեմայից, նշենք, որ արտասահմանյան սոցիալիստական երկրների սահմանադրությունների մի զգալի մասը չեն բովանդակում վարչա-տերիտորիալ կառուցվածքի և կառավարման կենտրոնական մարմինների ցանկն ամրապնդող հոդվածներ, քանի որ այդպիսիք հաճախ փոփոխվում են, հանգամանք, որի առկայությունը հակասում է սահմանադրության կայունության սկզբունքին։

Եվ, վերջապես, ինչպես արդեն նշվեց, առանձնապես կարևոր է նախագահությանն իրավունք վերապահել սեսիաների միջև ընկած ժամանակաշրջանում Գերագույն սովետի և իր համատեղ գործունեության ոլորտի մեջ մտնող հարցերի առթիվ արձակելու օրենսդրական ակտեր, այնուհետև դրանք ներկայացնելով Գերագույն սովետի հերթական սեսիայի հաստատմանը։

Իշխանության այս երկու բարձրագույն մարմինների գործունեության համատեղ ոլորտի մեջ մտնող հարցերի շրջանակի ճշգրտումից հետո միայն պետք է որոշել նախագահության այն լիազորությունները, որոնք նա իրավունք ունի իրականացնելու և՛ Գերագույն սովետի սեսիաների միջև ընկած ժամանակամիջոցում, և՛ սեսիաների ժամանակ, ընդունելով այնպիսի ակտեր, որոնք չեն շոշափում Գերագույն սովետի իրավասությունը և, հետևաբար, Գերագույն սովետի կողմից հետագա հաստատման կարիք չունեն։

Ինչպես հայտնի է, ՍՍՀՄ և միութենական հանրապետությունների Գերագույն սովետների նախագահությունների հրամանագրերի ընդունման արարողությունը կամ կարգը կարգավորված չէ ո՛չ սահմանադրությամբ, ո՛չ էլ օրենսդրական այլ ակտերով։ Նախագահությունը ինչպես օրենսդրական բնույթի, այնպես էլ գործող օրենսդրության փոփոխումների և համալրման հետ չկապված հրամանագրերը ներկայումս ընդունում է նույն կարգով, երբեմն էլ նույնիսկ նախագահության անդամներից հարցման միջոցով։ Ահա թե ինչու նախագահությանը սեսիաների միջև ընկած ժամանակաշրջանում օրենսդրական բնույթի ակտեր ընդունելու լիազորություններ տալու հարցը լուծելիս, մեր կարծիքով, պետք է սահմանել նաև այդ ակտերի ընդունման կարգը։

Մեզ թվում է, որ օրենսդրական բնույթի և գործող օրենսդրական ակտերի փոփոխման ու համալրման հետ չկապված հրամանագրերը չըպետք է ընդունվեն միատեսակ։ Առաջինները պետք է ընդունվեն միայն նախագահության նիստերում և ոչ մի դեպքում՝ հարցման կարգով։ Պետք է օրենսդրական կարգով լուծվի նաև այն, թե նախագահությունը ձայների ինչպիսի հարաբերակցությամբ իրավունք ունի ընդունելու այս կամ այն հրամանագիրը։ Մասնավորապես, ավելի ճիշտ կլիներ սահմանել այնպիսի կարգ, որի դեպքում օրենսդրական բնույթի հրամանագրերն ընդունվեին նախագահության անդամների ձայների ոչ թե պարզ, այլ որակյալ մեծամասնությամբ։

Վերը շարադրանքից նկատում ենք, որ չնայած օրենքի և հրամանագրի գործունեության փոխհարաբերություններում հստակ սահմանազատման բացակայությանը, օրենքի գերագույնությունը ակնբախ է։ Սա պայմանավորված է պետական մարմինների համակարգը գլխավորող իշխանության ներկայացուցչական բարձրագույն մարմնի օրենսդիր իրավունքով։ Պետական մյուս մարմինների կողմից ընդունված իրավական ակտերը պետք է հրապարակվեն օրենքին համապատասխան և չպետք է հակասեն նրան։ Օրենքները ենթակա չեն հաստատման և հսկողության պետական որևէ այլ մարմնի կողմից։ Հրամանագրերը, այդ թվում նաև օրենսդրական բնույթի հրամանագրերը ենթակա են միայն Գերագույն սովետի հաստատմանը և կարող են նրա կողմից վերացվել ցանկացած ժամանակ։

---

# ՄԻՈՒԹԵՆԱԿԱՆ ՀԱՆՐԱՊԵՏՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ՊԵՏԱԿԱՆ ԻՇԽԱՆՈՒԹՅԱՆ ԲԱՐՁՐԱԳՈՒՅՆ ՆԵՐԿԱՅԱՑՈՒՑՉԱԿԱՆ ՄԱՐՄԻՆՆԵՐԻ ԱՇԽԱՏԱՆՔԻ ՁԵՎԵՐՆ ՈՒ ՄԵԹՈԴՆԵՐԸ

## (ՊԱՏՄԱԿԱՆ ԱԿՆԱՐԿ)

Ա. Մ. ԹԱԴԵՎՈՍՅԱՆ

Հետազոտելով միութենական հանրապետության բարձրագույն ներկայացուցչական հիմնարկի գործունեության կազմակերպման հարցը, անհրաժեշտ է ծանոթանալ անցյալի համապատասխան պրակտիկայի հետ, քանի որ պատմական փորձի իմացությունը, մի կողմից՝ նպաստում է հասարակության առաջ ծառացած խնդիրների ավելի լավ ըմբռնմանը՝ օգնելով պատասխանել արդիականության հրատապ հարցերին, մյուս կողմից՝ պրակտիկայի վերլուծությունը հնարավորություն է տալիս օգտագործելու նախկինում կուտակված դրական փորձը, խուսափելու թույլ տրված վրիպումների ու թերությունների կրկնումից։

Բոլոր միութենական հանրապետությունների նմանօրինակ փորձն ընդգրկել տվյալ հոդվածում՝ հնարավոր չէ։ Ուստի, մենք կփորձենք միայն լուսաբանել Հայկական ՍՍՀ բարձրագույն ներկայացուցչական մարմինների կազմակերպական աշխատանքի ձևերն ու մեթոդները։

Սովետական պետության հիմնադիր Վ. Ի. Լենինը դարագլուխ կազմող հետևություն արավ պրոլետարիատի դիկտատուրայի քաղաքական ձևի վերաբերյալ։ Նա հայտնագործեց սոցիալիստական պետության նոր ձև, ներկայացուցչության սկզբունքորեն նոր սիստեմ՝ բանվորների, գյուղացիների և կարմիրբանակային դեպուտատների սովետներ, որոնք, ի հակադրություն բուրժուական պառլամենտ-«խոսարանների», դարձան իսկապես «աշխատող» հիմնարկներ (տե՛ս Երկեր, հ. 25, էջ 547)։ 1905 թ. ռուսական հեղափոխությամբ առաջին անգամ կյանքի կոչված սովետները, այնուհետև, դարձան ժողովրդական ներկայացուցչության ամենադեմոկրատական ձևը մարդկության պատմության մեջ։ Իսկ արդեն 1917 թ. նոյեմբերի 7—8-ին սովետների երկրորդ համառուսաստանյան համագումարն ազդարարեց Ռուսաստանում ամբողջ պետական իշխանությունը սովետների ձեռքը հանձնելու մասին, ընտրելով համառուսաստանյան կենտրոնական գործադիր կոմիտե՝ որպես հանրապետության բարձրագույն ներկայացուցչական մարմին։

Սովետական իշխանության առաջին իսկ օրերից ստեղծվեց պետական իշխանության մարմինների կարգավորված սիստեմ։ Այդ իշխանության բարձրագույն մարմինը դարձավ սովետների համառուսաստանյան համագումարը, իսկ համագումարների միջև ընկած ժամանակաշրջաններում պետական իշխանության բարձրագույն մարմինը հանդիսացավ համառուսաստանյան կենտրոնական գործադիր կոմիտեն, որը գործում էր սեսիոն կարգով։ Միջսեսիոն ժամանակաշրջաններում համառուսաստանյան կենտգործկոմի ֆունկցիան կենսագործում էր նրա նախագահությունը։

Չնայած հսկայական դժվարություններին, այդ մարմինների գործունեությունը կազմակերպվում էր հստակ և գործիմացությամբ։ Բավական է ասել, որ 1917 թ. նոյեմբերի 6(19)-ին արդեն համառուսաստանյան կենտրոնական գործադիր կոմիտեն հատուկ որոշում ընդունեց՝ «Համառուսաստանյան կենտգործկոմ կազմակերպելու մասին»։ Ըստ էության, դա սովետական բարձրագույն ներկայացուցչական բարձրագույն հաստատության աշխատանքի առաջին կարգորոշումն էր։

Այդ փաստաթուղթը կազմված էր չորս հատվածից, որոնք նվիրված էին համառուսաստանյան ԿԳԿ նիստերին, նախագահությանը, բաժիններին, համառուսաստանյան ԿԳԿ ան-

տապարտվում էին նակազները չկատարելը կամ դրանց նկատմամբ անփույթ վերաբերմունքը։ Այսպես, ՍՍՀՄ կենտգործկոմի նախագահության 1936 թ. փետրվարի 14-ի՝ «Հյուսիսային երկրամասի սովետների կողմից ընտրողների նակազները կատարելու մասին» որոշման մեջ արձանագրված էր՝ «Խիստ պատասխանատվության ենթարկել ընտրողների նակազներին բյուրոկրատական վերաբերմունք ցուցաբերելու մեջ մեղավոր պաշտոնատար անձանց»[1]։

Այն ժամանակներում այդ հարցը նույնպես բավականաչափ հրատապ նշանակություն ուներ Հայաստանի պետական իշխանության և կառավարման մարմինների գործունեության համար։ Սովետների ընտրությունների ընթացքում հատուկ մարմիններ ստուգում էին ընտրողների նակազների կատարումը։ Ահա թե ինչպես է արձանագրված, օրինակ, «Հայաստանի ՍԽՀ սովետների 1930—1931 թթ. վերընտրությունների կամպանիայի անցկացման վերաբերյալ հանրագումարային ինֆորմացիոն հաշվետվության» մեջ՝ «...Գյուղսովետների հաշվետու զեկուցումների առթիվ ծավալված վիճաբանությունների հիման վրա հանձնաժողովներ ընտրվեցին նակազներ կազմելու համար՝ դրանց հիմքում դնելով ժողովներում արտահայտված կարծիքները, ինչպես նաև պարզելու համար անցյալ ընտրություններին տրված նակազների կատարումը. կազմակերպվեցին նաև ստուգատեսային բրիգադաներ, որոնց միջոցով հայտնաբերվում էին չկենսագործված առաջարկությունները և ներկայացվում այդ հանձնաժողովների ուշադրությանը»[2]։

Այդ բնագավառում մեծ աշխատանք էին կատարում նաև ԱՍՖՍՀ կենտրոնական ներկայացուցչական մարմինները։ Այսպես, Անդրկենտգործկոմը պարբերաբար իր աշխատանքի պլանում մտցնում էր հետևյալ կետը՝ «Ընտրողների նակազների ստուգման մասին»[3]։ Ընտրողների նակազների և առաջարկությունների կատարման նկատմամբ այդպիսի ուշադրությունն ու մեծ աշխատանքը վկայում էին սովետական ներկայացուցչական սիստեմի դեմոկրատիզմի մասին և նպաստում դրա հեղինակության բարձրացմանը։

Սովետների համագումարների միջև ընկած ժամանակաշրջանում ՀՍԽՀ բարձրագույն հիմնարկի՝ Կենտգործկոմի, իրավասությունը որոշվում էր ՀՍՍՀ 1922 թ. սահմանադրության երկրորդ հատվածի հինգերորդ գլխում։ Սահմանադրությունը Կենտգործկոմի իրավասությանն էր վերապահում (հոդված 27) օրենսդրական իշխանությունը, կառավարության՝ ժողովրդական կոմիսարների սովետի, կազմավորումը, նրա անդամների փոխելը, կենտգործկոմի նախագահության ընտրությունը, վերահսկողությունը կառավարության գործունեության նկատմամբ, միջազգային պայմանագրերի վավերացումը և այլն։

Հետագայում (1927 թ.) 1922 թ. սահմանադրության 27 հոդվածը լրացվեց մի դրույթով, ըստ որի՝ հանրապետության կենտգործկոմը իրավունք ստացավ սովետների հերթական համագումարի հրավիրմանը խոչընդոտող արտակարգ հանգամանքներում երկարացնել նախորդ գումարման համագումարի լիազորությունները։ ՀՍՍՀ Կենտգործկոմի և նրա նախագահության լիազորությունները, 1927 թ. մտցված ուղղումների հիման վրա, 1922 թ. սահմանադրության մեջ ընդլայնվեցին։

Հայաստանի կենտգործկոմը կազմավորվում էր սովետների համագումարում, ընդ որում, նրա թվական կազմը որոշակի չէր։ Այսպես, սովետների չորրորդ համագումարը ընտրել է կենտրոնական գործադիր կոմիտե 90 անդամից և 43 թեկնածուից բաղկացած կազմով[4], վեցերորդ համագումարը՝ 220 մարդուց[5], յոթերորդ համագումարը՝ 327 մարդուց բաղկացած կազմով[6]։

Հայաստանի սահմանադրության 31 հոդվածում (1927 թ. խմբագրությամբ) ասվում էր, որ հանրապետության կենտգործկոմը կազմված է նրա անդամներից և նրանց տեղակալներից, սակայն տեղակալների ինստիտուտը, որ բնութագրական էր այն տարիների ներկայացուցչական հիմնարկությունների շինարարության համար, հետագայում վերացվեց։

Ինչպես հայտնի է, կենտգործկոմի սեսիաները գումարվում էին նրա նախագահության կողմից՝ տարին երեք անգամ, սակայն, առանձնահատուկ հանգամանքների դեպքում նախագահությունը կարող էր գումարել արտահերթ սեսիա, ինչպես դա կատարվեց, օրինակ, 1923 թ., երբ ՀՍԽՀ կենտգործկոմի արտահերթ սեսիա գումարվեց «Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների Միության վերաբերյալ դեկլարացիան և պայմանագիրը» քննարկելու և Ռապալլոյի հաշ-

1 Հայկ. ՍՍՀ ՀՀ և ՍՇ ԿՊԱ., ֆ. 112, ց. 1, գ. 14999, թ. 59։

2 Հայկ. ՍՍՀ ՀՀ և ՍՇ ԿՊԱ., ֆ. 112, ց. 1, գ. 1843, թ. 20։

3 Տե՛ս, օրինակ, Հայկ. ՍՍՀ ՀՀ և ՍՇ ԿՊԱ., ֆ. 112, ց. 1, գ. 1117, թ. 69։

4 Տե՛ս Ս. Վ. Խարմանդարյան, Կ. Ս. Խուդավերդյան, նշվ. երկը, էջ 73։

5 Նույն տեղը, էջ 164։

6 Նույն տեղը, էջ 180։



տության պայմանագիրը վավերացնելու համար[1]։

Կենտգործկոմի արտահերթ սեսիա գումարելու իրավունք էր վերապահված նաև հանրապետության ժողովրդական կոմիսարների սովետին։ Արտահերթ սեսիա կարող էր գումարվել կենտգործկոմի անդամների կեսի որոշմամբ։

Հայաստանի կենտգործկոմի սեսիաներում քննարկվում և ընդունվում էին շատ օրինագծեր և որոշումներ զանազան հարցերի առնչությամբ։ Սեսիան, որպես կանոն, տևում էր 3—5 օր։ Նրա նիստերը վարում էր կենտգործկոմը։ Վերջինս էր կարգավորում բարձրագույն ներկայացուցչական հաստատության պրոցեսուալ ձևերի պահպանումը, նիստերի կարգորոշումը, կենտգործկոմի կանոնադրության կատարումը, հռետորների ելույթների հերթականությունը, կազմակերպում էր քվեարկություն, հետևում քվորումի պահպանմանը և այլն։ Կենտգործկոմի նախագահի իրավական դրությունը կանոնավորվում էր կենտգործկոմի վերաբերյալ կանոնադրությամբ և կոնստիտուցիայով (տե՛ս, օրինակ, ՀՍԽՀ կենտգործկոմի 1924 թ. նոյեմբերի 2-ի կանոնադրության IV գլուխը[2])։

Կենտգործկոմի կանոնադրությունը (հրահանգը) կարգավորում էր պետական իշխանության բարձրագույն ներկայացուցչական մարմնի կազմակերպական գործունեությունը։ Այդօրինակ առաջին ակտն ընդունվեց 1922 թ. մայիսի 31-ին «Հայկական ՍԽՀ 1922 թ. սահմանադրության հիման վրա)։ Ակտը կրում է ՀՍԽՀ կենտգործկոմի գործունեության կարգի հրահանգ անունը[3]։ Այդպիսի ակտեր ընդունվում էին նաև հետագա տարիներին։

Դրանց թվում առավել հաջողը պետք է համարել երրորդ գումարման Հայաստանի կենտգործկոմի երրորդ սեսիայի 1924 թ. նոյեմբերի 12-ին ընդունած կանոնադրությունը։ Վերջինս բաղկացած էր վեց գլխից և 49 հոդվածից։ Առաջին՝ «Ընդհանուր դրույթներ» գլխում որոշվում էին կենտգործկոմի սեսիաների քանակը, դրանց գումարման ժամկետները, օրակարգերի բնույթը և այլն։ Երկրորդ գլուխը նվիրված էր ՀՍԽՀ իշխանության և կառավարման կենտրոնական մարմիններ ընտրելու կարգին, երրորդը՝ կենտգործկոմի նախագահությանը. չորրորդ գլխում խոսվում էր կենտգործկոմի նախագահի մասին, հինգերորդում՝ նրա անդամների և, վերջապես, վեցերորդ գլուխը նվիրված էր կենտգործկոմի հանձնաժողովների գործունեությանը։ Տվյալ ակտի բուն բովանդակությունը ցույց է տալիս դրա իրավական դերը կենտրոնական գործադիր կոմիտեի գործունեության մեջ։

Կենտգործկոմի որոշումները հաջողությամբ կենսագործելու և դրանց կատարումն ստուգելու համար դրան կից ստեղծվում էին մշտական և ժամանակավոր հանձնաժողովներ (ընդ որում, վերջիններս գերակշռում էին)[4]։ Ժամանակավոր հանձնաժողովների աշխատանքը խստորեն կարգորոշված չէր և հաճախ կրկնորդվում էր. դրանց իրավական դրությունը ևս հստակորեն որոշված չէր։ Այդ բանը չէր կարելի ասել մշտական մարմինների՝ մշտական հանձնաժողովների մասին, որոնց իրավական դրությունը որոշվում էր ո՛չ միայն կենտգործկոմի կանոնադրությամբ, այլև այս կամ այն մշտական հանձնաժողովի աշխատանքի վերաբերյալ հատուկ ակտերով։ Այսպես, ՀՍԽՀ կենտգործկոմի կողմից ընդունվել էին ազգային հանձնաժողովների կանոնադրությունը[5], բյուջետային հանձնաժողովի կանոնադրությունը[6], որոնք խոշոր դեր էին խաղում կենտգործկոմի գործունեության մեջ, մի հանգամանք, որ բնութագրվում էր նրա կառուցվածքային առանձնահատկությամբ՝ նախագահության առկայությամբ (սովորաբար 7 մարդուց բաղկացած կազմով)։ Բյուջետային հանձնաժողովը կենտգործկոմի սեսիայում բյուջեի վերաբերյալ զեկուցման առթիվ մշտապես առաջադրում էր իր հարակից զեկուցողին[7]։

ՀՍԽՀ կենտրոնական գործադիր կոմիտեին առընթեր կազմակերպվում էին իրենց բնույթով կենտգործկոմի մյուս ներքին մարմիններից տարբերվող մարմիններ, որոնց, սակայն, նրանց իրավական դրությամբ և նրանց կատարած աշխատանքի բնույթով կարելի է, հավանաբար, դասել մշտական հանձնաժողովների շարքը։

Նման մարմին դարձավ 1926 թ. կազմակերպված՝ պատերազմի հաշմանդամներին, հիվանդ և վիրավոր կարմիրբանակայիններին և պատերազմում զոհվածների ընտանիքներին օգնող հան-

1 Տե՛ս Հայկ. ՍՍՀ ՀՀ և ՍՇ ԿՊԱ., ֆ. 112, ց. 1, գ. 955, թ. 5։

2 Տե՛ս Հայկ. ՍՍՀ և ՍՇ ԿՊԱ., ֆ. 112, ց. 1, գ. 1593, թ. 3—4։

3 Տե՛ս Հայկ. ՍՍՀ ՀՀ և ՍՇ ԿՊԱ, ֆ. 112, ց. 1, գ. 184, թ. 6—10։

4 Տե՛ս Հայկ. ՍՍՀ ՀՀ և ՍՇ ԿՊԱ, ֆ. 112, ց. 1, գ. 131, թ. 2—3, ց. 2, գ. 1456, թ. 3, 6, 10։

5 Տե՛ս Հայկ. ՍՍՀ ՀՀ և ՍՇ ԿՊԱ., ֆ. 112, ց. 2, դ. 1456, գ. 999, թ. 162։

6 Տե՛ս նույն տեղը, գ. 780, թ. 61, 64, 67, 75։

7 Տե՛ս նույն տեղը, գ. 2223, թ. 1։

րապետական կոմիտեն, որը գործում էր հատուկ կանոնադրության հիման վրա[1]։

Քանի որ կենտգործկոմը սեսիոն կարգով աշխատող մարմին էր, հետևապես և պահանջ էր զգացվում ունենալու պետական իշխանության մշտապես գործող մարմին։ Այդպիսին էր կենտգործկոմի նախագահությունը։

Կենտգործկոմի նախագահության իրավական դրությունը կարգավորվում էր ո՛չ միայն ՀՍԽՀ սահմանադրությամբ, այլև նրա գործունեության վերաբերյալ հատուկ կանոնադրություններով, հրահանգներով։ Նման օրինակ է կենտգործկոմի նախագահության աշխատանքի վերաբերյալ 1926 թ. փետրվարի 2-ին ընդունված հրահանգը, որը մանրամասն կարգորոշում էր նրա գործունեությունը։ Այն բաղկացած էր ութ գլխից և 65 հոդվածներից[2]։ Հրահանգի համաձայն, նախագահությունը քննարկում ու լուծում էր իրավասության ենթակա հարցեր, ինչպես նաև կենտգործկոմի տնօրինությանը ենթակա այն հարցերը, որոնք պետք է քննարկվեին նրա սեսիաներում. սեսիաներ էր գումարում և մշակում դրանց օրակարգը, քննության էր առնում կազմակերպությունների ու մասնավոր անձանց գանգատներն ու բողոքները և այլն։ Բացի այդ, նախագահությունն իրավունք ուներ հանձնաժողովներ կազմելու՝ զանազան կարևոր իրավական ակտերի կանոնադրությունների, հրահանգների, նակազների և այլ փաստաթղթերի խմբագրության համար։ Օրինակ, կենտգործկոմի նախագահության 1924 թ. նոյեմբերի 21-ի որոշմամբ[3] հանձնաժողով էր ստեղծվել ՀՍԽՀ սահմանադրությունը վերջնականապես խմբագրելու համար։

Մեծածավալ աշխատանքի պատճառով նախագահությանն առընթեր ստեղծվում էին նաև մշտական հանձնաժողովներ, օրինակ՝ բյուջետային, իրավաբանական և որոշ այլ հանձնաժողովներ։ Դրանց կազմը, իրավազորությունները, գործունեության ձևերը որոշվում էին հանրապետության կենտգործկոմի հատուկ հրահանգներով ու կանոնադրություններով։

Այսպիսով, Հայաստանում, ինչպես նաև մյուս միութենական հանրապետություններում, մինչև 1937 թ. գոյություն ուներ իշխանության և կառավարման ինչպես բարձրագույն, այնպես և տեղական մարմինների գործունեության ձևերի իրավական ամրապնդման տենդենց. ընդունվում էին ո՛չ միայն կենտգործկոմի, նրա նախագահության, այլև ժողկոմսովետի, ժողկոմատների, քաղաքային, շրջանային, գյուղական սովետների և այլ մարմինների վերաբերյալ կանոնադրություններ, հրահանգներ, նակազներ[4]։ Դա պետական գործունեությանը ժողովրդին առաջին անգամ հաղորդակից դարձնող հսկայական ակտիվության դրսևորում էր։

1937 թ. մարտի 23-ին, ՍՍՀ Միության 1936 թ. սահմանադրության հիման վրա ընդունվեց Հայկական ՍՍՀ սահմանադրությունը, որը լուրջ փոփոխումներ մտցրեց պետական իշխանության բարձրագույն մարմինների գործող սիստեմում։ Բարձրագույն ներկայացուցչական հաստատություն դարձավ Գերագույն սովետը, որը պարբերաբար սեսիաներ է գումարում, իսկ սեսիաների միջև ընկած ժամանակամիջոցում պետական գերագույն իշխանության կրողը դարձավ նրա նախագահությունը։

1 Տե՛ս նույն տեղը, գ. 1027, թ. 119—122։

2 Տե՛ս Հայկ. ՍՍՀ ՀՀ և ՍՇ ԿՊԱ, ֆ. 112, ց. 1, գ. 1684, թ. 30—37։

3 Տե՛ս նույն տեղը, գ. 131, թ. 49։

4 Տե՛ս, օրինակ, «ՀՍՍՀ օրենքների և կարգադրությունների ժողովածու», 1925, 12, մ., նույն տեղը, 1928, 10, էջ 104—106։



Адрес редакции. — Ереван-33, Барекамутян, 59-г.

Խմբագրության հասցեն՝ Երևան—33, Բարեկամության 59 գ.։ Հեռախոսներ՝ գլխավոր խմբագրի տեղակալ և պրոպագանդայի բաժին՝ 27—25—29, պատ. քարտուղար և էկոնոմիկայի բաժին՝ 27—37—80, կուսակցական կյանք և կուլտուրայի բաժիններ՝ 27—19—80, գրական աշխատող՝ 27—60—64։

ՎՖ 06070 Պատվեր 1434 Թղթի չափսը 70×108 1/16։ Տիրաժ 13.100 Գինը 25 կոպ.։

Տպ. 7 մամուլ, մամուլում 68840 նիշ։ Ստորագրված է տպագրության՝ 22/IX 1972 թ.։

ՀԿԿ Կենտկոմի հրատարակչության տպարան։ Ավ. Իսահակյան փող. № 28։

# ԳԻՏՈՒԹՅԱՆ ԵՎ ՏԵԽՆԻԿԱՅԻ ՆՈՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

## ԳԻՇԵՐՆ ԻՆՉՊԵՍ ՑԵՐԵԿ

Անգլիայում ստեղծված է հեռուստատեսային խցիկ, որը հնարավորություն է ընձեռում դիտելու մթության մեջ եղած, անզեն աչքի համար անտեսանելի օբյեկտները։ Այն կարող է կիրառվել գիշերային պարեկության, ստորջրյա հետազոտությունների ժամանակ, ինչպես նաև ռազմական նպատակների համար։ Խցիկը տալիս է հուսալի պատկեր՝ 0,2 միլիլյուքս լուսավորության դեպքում։

## ՆԿԱՐԻ ԵՎ ՏԵՔՍՏԻ ՀԱՂՈՐԴՈՒՄԸ ՀԵՌԱԽՈՍՈՎ

«Ռենկ Քսերոքս» անգլիական ֆիրման մշակել է ինքնատիպ ընդունիչ-հաղորդիչ ապարատի մոդել, որը հեշտությամբ տեղավորվում է պայուսակում։ Տեքստը, նկարը կամ այլ տպագրված պատկեր ցանկացած հեռավորության վրա հաղորդելու համար անհրաժեշտ է միայն հեռախոսային գիծ և նույնպիսի ընդունիչ-հաղորդիչ ապարատ՝ աբոնենտի մոտ։ Դրասենյակային ստանդարտ թղթի վրա պատկերի կամ տեքստի հաղորդման համար պահանջվում է ընդամենը 6 րոպե։ Նախագծվում է նաև այդ ապարատի մի այլ տարբերակ, որի դեպքում օգտագործվում է սովորական թուղթ։ Ձայնային ազդանշանները կփոխարկվեն էլեկտրական իմպուլսների, որոնք գործի են դնում գրասարքավորումը։

## ՁԲՈՍԱՅԳԻՆԵՐԻ ՀԱՄԱՐ

Աշխարհի շատ երկրներում զբոսայգիների, ստադիոնների, սպորտային հրապարակների խոտը հնձելու համար օգտագործվում են փոքր տրամաչափի հնձիչներ։ Այդպիսի կոնստրուկցիայի մեքենա է թողարկում ամերիկյան «Ջեկոբսեն» ֆիրման։ Այժմ մարդուն հարկ չկա գնալ մեքենայի ետևից։ Նրա վրա կա հարմարավետ նստատեղ։ Հատկապես ուշադրություն է դարձված ադմուկի նվազեցման և տարածվող գազի չեզոքացման վրա։ Մեկ ժամում մեքենան հնձում է 3000 քառ. մետր տարածություն։ Նման մեքենաները օգտագործվում են նաև որպես փոխադրամիջոց և փոքր տրակտոր՝ այգու աշխատանքների համար։

## ԴԻՐԻԺԱԲԼԸ ՏՈՒՆ Է ԿԱՌՈՒՑՈՒՄ

Կիևի փորձարարական նախագծային գիտահետազոտական զոնալ ինստիտուտը սկսել է խոշորաբլոկ շենքերի նախագծումը, որոնց մոնտաժումը առաջարկում է կատարել դիրիժաբլներով։ Այդ շենքերի բլոկ-սեկցիաները (4—5 բնակարան՝ միանգամից) արտադրվելու են տնաշինարարական կոմբինատներում։ Դիրիժաբլը կթռչի կոմբինատ, կվերցնի բլոկը, կվերադառնա կառույցը և այն կտեղադրի նախատեսված տեղում։

## ԶԳԱԼԻՈՐԵՆ ՇԱՏ ԴԵՂՈՐԱՅՔ

Վերջին տարիներս դեղորայքի գործածությունը ողջ աշխարհում զգալիորեն աճել է։ Ըստ վերջին վիճակագրական տվյալների, Արևմտյան Եվրոպայի շատ երկրներում դեղորայքի համար կատարվող վճարումները կազմում են բուժօգնության նպատակով ծախսվող գումարների 10—15 տոկոսը։ Միայն Շվեյցարիայում վերջին հինգ տարում դեղորայքի գինը հատավաճառում ավելացել է 149 միլիոն կրոնով, իսկ կլինիկաներում՝ 130 միլիոն կրոնով։ Նույն ժամանակաշրջանում դեղատոմսերի քանակը ավելացել է 17 միլիոնով։

Արևմտյան Եվրոպայի շատ երկրներում բնակչությունն լայնորեն օգտագործում է վիտամիններ, քնաբեր և այլ դեղամիջոցներ։ Այս հանգամանքը լուրջ անհանգստություն է պատճառում ոչ միայն մասնագետներին, այլև կառավարություններին։ Նրանք երկյուղում են, որ բնակչությունը դեղորայքն օգտագործում է չափից ավելի։

## ԴԱՐՉՅԱԼ ԾԽԵԼՈՒ ՎՆԱՍԱԿԱՐՈՒԹՅԱՆ ՄԱՍԻՆ

Հարյուր նորածիններից 28-ը մահանում են ծննդյան նախօրյակին կամ ծնվելուց հետո, եթե նրանց մայրերը ծխում են հղիության վերջին ամիսներին։ Պարզվել է նաև, որ այդպիսի նորածինների քաշը միջինից պակաս է 170 գրամով։ Նման հետևության են հանգել Լոնդոնի մանկական հիվանդանոցի և մանկական առողջության ինստիտուտի բժիշկները։

Գինը 25 կ.: 77783